# ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐՈՒՍԱՂԷՄ

## ՆԿԱՐԱԳԻՐ ԱԹՈՌՈՅ ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ




ԳՐԵՑ

ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔԵՊՍ. ՕՐՄԱՆԵԱՆ





ԵՐՈՒՍԱՂԷՄ

ՏՊԱՐԱՆ ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ

1931

# ԶԵԿՈՅՑ

Կ. Պոլսի նախկին պատրիարք երջանկայիշատակ Տ. Մաղաքիա Արքեպս. Օրմանեան իբրեւ վարչական պատուիրակ իր Երուսաղէմ բնակութենէն օգտուելով՝ 1915ին գիրի առած է այս հատորը, որ տասնըեօթը գլուխներու կամ 151 հատուածներու մէջ կը պարունակէ Սրբոց Յակոբեանց տաճարին ու վանքին եւ յարակիցներուն՝ ինչպէս նաեւ Ս. Հրեշտակապետաց եւ Ս. Փրկչի վանքերուն մանրամասն նկարագրութիւնը, եւ ունի առանձին տեսութիւններ Երուսաղէմի Աթոռին վարչական, վանական, եկեղեցական եւ տնտեսական կեանքին եւ այդ շրջանին տիրող կացութեան վերաբերմամբ։

Օրմանեան Սրբազանի այս աշխատութիւնը հրատարակութեան տալու նպատակը եղած է յաւերժացնել՝ երեք ուկէս տարի (1914 մայիս – 1917 նոյեմբեր) իր Երուսաղէմ բնակութեան յիշատակը, նոյն ատեն տալ գոնէ մասնակի ուղեցոյց մը Սուրբ Երկիր այցելել փափաքող բարեպաշտ ուխտաւորներու եւ Հայկական Երուսաղէմով հետաքրքրուող մերազնէից ձեռքը։

Բոլոր ականատեսներու կը վկայեն թէ հանգուցեալ Սրբազանը, հակառակ իր առաջացած տարիքին, երիտասարդական ի՛նչ աշխոյժով ու կորովով օրեր ու շաբաթներ շրջեցաւ ու իր իսկ ձեռքով ճշդեց չափերն ու բաժանումները մայրավանքին բոլոր հաստատութիւններուն եւ բակերուն, ու ապա նկարագրեց զանոնք մի առ մի։

Այս հատորը ամբողջական գործ մը չի ներկայացներ,

վասն զի հանգուցեալ Հեղինակը ծրագրած էր նկարագրել նաեւ Հայոց վայելած մասնակցութիւնն ու իրաւունքները Սուրբ Տեղեաց ազգային եւ ընկերովի սեփականութեանց մէջ, որոնք Սրբոց Յակոբեանց Աթոռի շրջանակէն դուրս կը գտնուին, ինչպէս են՝ Ս. Յարութեան եւ Ս. Աստուածածնի տաճարները, Ձիթենեաց Լեռը, Բեթղեհէմի վանքը, Ս. Ծննդեան այրը եւայլն։ Ընդհանուր պատերազմը եւ անոր հետեւող տագնապը, որ երկարօրէն ծանր հանգամանք ստացաւ, նաեւ հանգուցեալին վարչական ու գրական բազմապիսի զբաղումները արգելք եղան դժբախտաբար իր ծրագրին իրագործման։

Այսու հանդերձ ներկայս՝ իր ամբողջութեան մէջ իբրեւ ամփոփ նկարագիր մը՝ յստակ գաղափար մը կու տայ Սրբոց Յակոբեանց Մայրավանքի նիւթական ու բարոյական վիճակին վրայ, որ դեռ մնացած է գրեթէ նոյնը, ինչ ինչ բարեփոխութեանց բացառութեամբ։

Հոգելոյս Օրմանեան Սրբազանի գործունեայ եւ բազմավաստակ կեանքի վերջին հանգրուանը եղաւ Սուրբ Յակոբը, ուր իբրեւ վարչական պատուիրակ պաշտօնավարեց տագնապալից եւ դժնեայ ու դժուարին ժամանակի մը մէջ եւ իր նրբանկատ ու հեռատես իմաստութեամբ օգտակար հանդիսացաւ ո՛չ միայն մեկուսացնելով սպառնացող վտանգները եւ ապահովելով ազգային դարաւոր իրաւունքներու պահպանումին, այլ իր անխոնջ եւ կարգաւորեալ աշխատութեամբ կրթական ու գրական արդիւնքներ ալ ունեցաւ։

Երախտագիտական պարտք մը համարեցանք դիտելով լոյս կ՚ընծայենք այս հատորը, եւ իբրեւ համեստ պսակ մը կը դնենք երանելիյիշատակ Սրբազան Հեղինակին շիրիմին վրայ։

Ս. Ե. Ն.

# ՑԱՆԿ





# ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐՈՒՍԱՂԷՄ

## ՆԿԱՐԱԳԻՐ ԱԹՈՌՈՅ ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ



ԳՐԵՑ

ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔԵՊՍ. ՕՐՄԱՆԵԱՆ



ԵՐՈՒՍԱՂԷՄ

ՏՊԱՐԱՆ ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ

1931

# ԶԵԿՈՅՑ

Կ. Պոլսի նախկին պատրիարք երջանկայիշատակ Տ. Մաղաքիա Արքեպս. Օրմանեան իբրեւ վարչական պատուիրակ իր Երուսաղէմ բնակութենէն օգտուելով՝ 1915ին գիրի առած է այն հատորը, որ տասնըեօթը գլուխներու կամ 151 հատուածներու մէջ կը պարունակէ Սրբոց Յակոբեանց տաճարին ու վանքին եւ յարակիցներուն՝ ինչպէս նաեւ Ս. Հրեշտակապետաց եւ Ս. Փրկչի վանքերուն մանրամասն նկարագրութիւնը, եւ ունի առանձին տեսութիւններ Երուսաղէմի Աթոռին վարչական, վանական, եկեղեցական եւ ուսումնական կեանքին եւ այդ շրջանին տիրող կացութեան վերաբերմամբ։

Օրմանեան Սրբազանի այս աշխատութիւնը հրատարակութեան տալու նպատակը եղած է յաւերժացնել՝ երեք ուկէս տարի (1914 մայիս – 1917 նոյեմբեր) իր Երուսաղէմ բնակութեան յիշատակը, նոյն ատեն տալ գոնէ մասնակի ուղեցոյց մը Սուրբ Երկիր այցելել փափաքող բարեպաշտ ուխտաւորներու եւ Հայկական Երուսաղէմով հետաքրքրուող մերազնէից ձեռքը։

Բոլոր ականատեսները կը վկայեն թէ հանգուցեալ Սրբազանը, հակառակ իր առաջացած տարիքին, երիտասարդական ի՜նչ աշխոյժով ու կորովով օրեր ու շաբաթներ շրջեցաւ ու իր իսկ ձեռքով ճշդեց չափերն ու բաժանումները մայրավանքին բոլոր հաստատութիւններուն եւ բաղերուն, ու ապա նկարագրեց զանոնք մի առ մի։

Այն հատորը ամբողջական գործ մը չի ներկայացներ,

վասն զի հանգուցեալ Հեղինակը ծրագրած էր նկարագրել նաեւ Հայոց վայելած մասնակցութիւնն ու իրաւունքները Սուրբ Տեղեաց ազգային եւ ընկերովի սեփականութեանց մէջ, որոնք Սրբոց Յակոբեանց Աթոռի շրջանակէն դուրս կը գտնուին, ինչպէս են՝ Ս. Յարութեան եւ Ս. Աստուածածնի տաճարները, Ձիթենեաց Լեռը, Բեթղեհէմի վանքը, Ս. Ծննդեան սրբավայրը եւայլն։ Ընդհանուր պատերազմը եւ անոր հետեւող տագնապը, որ երկարով ծանր հանգամանք ստացաւ, նաեւ հանգուցեալին վարչական ու գրական բազմապիսի զբաղումները արգելք եղան դժբախտաբար իր ծրագրին իրագործման։

Այսու հանդերձ ներկայս՝ իր ամբողջութեան մէջ իբրեւ ամփոփ նկարագիր մը՝ յստակ գաղափար մը կու տայ Սրբոց Յակոբեանց Մայրավանքի նիւթական ու բարոյական վիճակին վրայ, որ ցարդ մնացած է գրեթէ նոյնը, ինչ ինչ բարեփոխութեանց բացառութեամբ։

Հոգելոյս Օրմանեան Սրբազանին գործունեայ եւ բազմամասնեայ կեանքին վերջին հանգրուանը եղաւ Սուրբ Յակոբը, ուր իբրեւ վարչական պատուիրակ պաշտօնավարեց տագնապալից եւ դժնեայ ու դժուարին ժամանակի մը մէջ եւ իր նրբանկատ ու հեռատես խոհեմութեամբ օգտակար հանդիսացաւ ո՛չ միայն մեղմացնելով սպառնացող վտանգները եւ սատարելով ազգային դարաւոր իրաւունքներու պաշտպանութեան, այլ իր անխոնջ եւ կարգաւորեալ աշխատութեամբ կրթական ու գրական արդիւնքներ ալ ունեցաւ։

Երախտագիտական դոյզն պարտք մը հատուցանելու դիտումով լոյս կ'ընծայենք այս հատորը, եւ իբրեւ համեստ դափնեպսակ մը կը դնենք երջանկայիշատակ Սրբազան Հեղինակին շիրիմին վրայ։

Մ. Ե. Ն.

# ՑԱՆԿ





# ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐՈՒՍԱՂԷՄ

## (ՆԿԱՐԱԳԻՐ ԱԹՈՌՈՅ ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ)





## ԵՐՈՒՍԱՂԷՄ

1.— *Ո՛չ կատարեալ տեղեկագիր մը և ոչ կանոնաւոր ուղեցոյց մը գրելու նպատակ ունինք, և ո՛չ ալ ընդհանուր կերպով Երուսաղէմի վրայ տեղեկութիւններ տալ մտադիր ենք, այլ ամփոփուած պիտի տանք Հայկական Երուսաղէմի, այսինքն պատրիարքական Աթոռին եւ միաբանական մարմինին շուրջը, և այնչափ լոյս տեղեկութիւն և բացատրութիւն պիտի տանք, որ Երուսաղէմը չտեսնող եւ Երուսաղէմով զբաղող մերազնեաներ կարող ըլլան ճիշդ գաղափար կազմել ազգային Երուսաղէմին վրայ, և ըստ այնմ ճշդեն իրենց տեսութիւնները և դատողութիւնները՝ տարիներէ ի վեր յուզուած խնդիրներուն շուրջը։ Կերպով մը այս գրութիւնը ամբողջացուցիչ մաս պիտի ըլլայ Երուսաղէմի պարտուց և ելեւմտից մասին պատրաստուած* Տեղեկագիր*ին, եւ Երուսաղէմի վարչութեան և մատակարարութեան վրայ գրուած* Դիտողագի*րին։ Աւելի պարզ խօսելով, Նպատակնիս տեղագրա-*

*կան աշխատութիւն մը պատրաստել չէ, այլ մեր պաշտօնէն պահանջուած լուսաբանութիւնները լրացնել։*

2.— *Նկարագիր մը կատարեալ ըլլալու համար, պէտք է ձեռք առնուած առարկային ամէն մասերը շօշափէ։ Իսկ մեր ձեռք առած առարկան Հայկական Երուսաղէմն է, և պէտք է անոր բազմաթիւ և բազմատեսակ մասերը նկատի առնենք։ Թերևս պահանջուէր առաջին անգամ այս մասերուն լիակատար բաշխումը և կատարեալ ցուցակը տալ, բայց մենք լաւագոյն կը սեպենք խօսից կարգին թողուլ նիւթերուն շարքը։ Մի առ մի նկատի առնուելիք բաժինները երկու գլխաւոր ճիւղերու կրնան վերածուիլ, որք են՝* Նիւթականը *և* Բարոյականը. *և երկուքով ալ պիտի զբաղինք, զանց ընելով պատմական ճիւղը, որ կրնար մեզ շատ հեռուներ տանիլ եւ շատ երկարելու ստիպել, առանց իսկ փոխադարձ առաւելութիւն ընձեռելու։ Ուստի բաւական ըլլայ ներկայն միայն նկարագրել, շատանալով անհրաժեշտ բաղդատութիւնները յիշել՝ մերձաւոր անցեալին և անմիջական ապագային միջև։*

3.— *Փիւնիկեցւոց ծովեզերքին վրայ՝ Հրէաստանի մաս կազմող տափարակը քիչ ետքը կը սկսի բարձրանալ, և Յոպպէէ Երուսաղէմ գացող ճամբան տակաւ բլուրներուն վրայ կը տարածուի եւ Յուդայի լեռներուն շղթային մէջերէն կը հասնի Երուսաղէմ, որ* 750 *մէդր բարձր է ծովին երեսէն։ Երուսաղէմ քաղաքը եռանկիւն մը կը կազմէ, խարիսխը դէպ հիւսիս և գագաթը դէպ հարաւ։ Երկու կողմերէն ձորերով բաժնուած է հանդիպակաց բլուրներէն։ Արևել-*

քէն՝ Կեդրոնի կամ Յովսափատու Ձորը կը բաժնէ քաղաքը Ձիթենեաց Լեռնէն, և արևմուտքէն՝ Ենոմի կամ Գեհոնի Ձորը կը բաժնէ հանդիպակաց բլուրէն, որուն վրայ այժմ կը տարածուի Նիկեփորի կոչուած ձիթաստանը։ Հին քաղաքը այդ եռանկիւնին մինչև հարաւային գագաթը կ'իջնէ եղեր, դէպ զառիվայր, ուր կը միանան Կեդրոնեան և Ենոմեան ձորերը, այլ Սուլտան Սիւլէյմանի հաստակառոյց պարիսպներով փակած քաղաքը դուրս թողած է այդ զառիվայր մասը, և քաղաքը փակած է վերին մասին մէջ, որ թեթև անհաւասարութիւններ պարունակող հարթութիւն մը կը կազմէ։ Քաղաքը գրեթէ ուղղանկիւնով կտրուած չորս մասերու կը բաժնուի, և հարաւ-արևմտեան քառորդին մեծ մասը Հայոց կը պատկանի, սահմանակից ունենալով հիւսիսէն ուրիշ քրիստոնէից և արևելքէն Հրէից թաղերը. մինչ տաճկաց թաղը կը փակուի քաղաքին հիւսիս-արևելեան մասին մէջ։ Այժմեան Երուսաղէմը այլևս Սիւլէյմանէն պարիսպներով շրջապատուածը չէ, այլ հին քաղաքին քառապատիկ տարածութեամբ ընդարձակուած է հիւսիսակողման լայնարձակ տափարակին վրայ՝ դէպ արևմուտք և դէպ հարաւ անջատ մասերով։ Այս Նոր թաղերուն մէջ կառուցուած են եւրոպական հաստատութեանց ընդարձակ շինուածները, այսինքն կրօնաւորաց և կուսանաց վանքեր, ուխտաւորաց օթարաններ, վարժարաններ և հիւանդանոցներ, ինչպէս նաև տեղացի և եւրոպացի ազգութեանց նորաշէն բնակութիւններ։ Ասոնց կարգին հազիւ թէ քանի մը հայ տուներ կը գտնուին իրենց հնօրեայ թաղէն հեռացած։

---



# ՀԱՅ ԵՐՈՒՍԱՂԷՄ

1. — *Երուսաղէմի հարաւակողմը ամբողջաբար հաչակաւոր Սիոն հողամասն է, և անոր մէջ կը պարունակուի Հայոց թաղը։ Սիոնի մաս կը կազմէ եւ հին Մորիա, ուր կառուցուած էր Հրէից Տաճարը, և այսօր անոր տեղը կը գտնուի Օմարի կոչուած մզկիթը, դէմ յանդիման Ձիթենեաց Լերան։ Հայոց թաղ ըսուածը գրեթէ իր ամբողջութեամբը Ս. Յակոբեանց ստացութիւնն է, և անոր մէջ են քաղաքացի Հայոց բնակութեան տուները, որոնք թէև վանքապատկան կալուածներ են, այլ տեղացի Հայոց ձրի թողուած են։ Այդ ամէն շինութիւնները և մէջը պարունակուած գետինները, հիւսիսէն հարաւ, այսինքն Ս. Փրկչի գերեզմաննոցին ետեւի դուռէն մինչեւ Ասորւոց վանքը, իբր 450 մէտր երկայնութիւն, և արեւելքէն արեւմուտք, այսինքն պարտէզներու ետեւի պարիսպէն մինչև արեւելակողման տուներուն ծայրը, իբր 300 մէտր լայնութիւն ունեցող, անկանոն քառանկիւնի մը կը կազմեն, մերձաւորաբար 150,000 քառակուսի մէտր տարածութեամբ, որուն մի մասը բուն վանական շէնքեր են, մաս մըն ալ քաղաքացւոց բնակարաններ, և մաս մըն ալ պարտէզներ։ Հայոց քաղաքամասը, և մանաւանդ մայրավանքին դիրքը եղակի ըսուելու չափ նշանաւոր է, և հարևան ազգութեանց նախանձելի դարձած է, ոչ միայն Սիոնի պատմական և նուիրական նշանակութեամբը, այլ և բաց հորի-*

գոնովը, մաքուր օդովը եւ հովասուն դիրքովը· գի թէպէտ բնակութեանց մօտ, բայց խճողումներէ և քաղաքամիջի խառնուած մթնոլորտէն ազատ է։ Ս. Յակոբեանց Աթոռին գրաւած տարածութիւնը միապաղաղ ստացութիւն մը կը կազմէ, որուն մէջ միայն քանի մը պզտիկ մասեր կան օտարաց ստացութիւն դարձած։ Ամբողջութիւնը կտրատուած է քանի մի հասարակաց փողոցներով, որոնց գլխաւորն է վանքին մեծ դուռին առջեւէն անցնող և Հայոց կոչուած փողոցը, անհաւասար լայնութիւններով իր ընթացքին մէջ։ Փողոցը ազատ է ժխորէ, բայց և միակ ճանպան է Վերնատան սրբավայրին, Տաճկաց ձեռքը եղող Դաւիթ մարգարէի գերեզմանին, գերման Բենեդիկտեանց վանքին, հարաւ-արեւելեան թաղամասին, և զանազան ազգաց գերեզմաննոցներուն։ Ճանպան նեղ մասով մը կը սկսի քաղաքին կողմէն եկած ատեն. կէս կամարին ներքեւէն անցնելէն ետքը՝ վանքին առջեւ հրապարակ կ'ըլլայ, իսկ պատրիարքարանի կամարին ներքեւէն անցնելէն ետքը լայնկէկ մասով մը կը յառաջէ դէպի Դաւիթի Դուռ կոչուած քաղաքին հին դուռը։

5.— Իրաւ է որ Ս. Յակոբայ Աթոռին շինուածները միակտուր ու վեհ երեւոյթ չունին, բայց պատկառելի հնութեան կերպարանը այդ պակասը կը փոխարինէ։ Թէ՛ միաբանական և ուխտաւորական բնակարանները, և թէ քաղաքացւոց բնակութեան մասերը հետզհետէ ստացուած կամ շինուած կտորներ են, ինչպէս պատմական յիշատակներ ալ կը հաւաստեն։ Այս կտորները տեղական յարմարութեանց համեմատ իրարու կցուած կամ բարեփոխուած կամ յա-

ւելուածներով ընդարձակուած են, ոչ միայն գետնէն բարձրացած նոր մասերով, այլ եւ տանիքներու վրայ կառուցուած սենեակներով։ Շատ մասեր երեքյարկանի կրնան ըսուիլ, թէպէտ կանոնաւոր յարկեր չեն։ Շինութեանց ոճը ընդհանրապէս հին է. հաստ պատերով, ցած դուռներով, պզտիկ պատուհաններով, եւ կամարակապ առաստաղներով։ Դուռներ պզտիկ եւ պատուհաններ վանդակապատ են, իբրեւ հետեւանք պաշտպանողական պահանջներու, երբ իւրաքանչիւր ոք իւր սենեակին մէջ ալ ապահովութիւն չէր վայելեր։ Շինուածական ոճին կողմէն՝ բացառութիւն կը կազմեն պատրիարքարանի դահլիճն ու սենեակները ու գմբեթայարկ վարժարանը, արդիւնք Յովհաննէս Զմիւռնացի պատրիարքի մեծախոհ եւ մեծագործ նախաձեռնութեան, ինչպէս իրենց կարգին պիտի նկարագրենք։ Շինուածանիւթը՝ ամէն կողմ եւ ամէն տեղ քարն է։ Երուսաղէմի լեռները եւ շրջակաները անսպառ քարահանքեր են, մինչեւ իսկ երկրին երեսը ժայռերով լեցուն է, որոնց մէջերը գտնուող գետինները կամ քարերը կտրտելով աստ եւ անդ բացուած հողամասերը իբրեւ բուսականութիւն՝ միայն ձիթենիներ ունին, ատէպ ցանցառ, քիչ տեղ խիտ ծառաստաններով։ Քարի առատութիւնը ամենայն ինչ քարէ շինելու դիւրութիւն ընծայած է. փողոցներ, դաւիթներ, անցքեր, սանդուխներ, տանիքներ, սենեակի յատակներ եւ պատեր տաշած կամ յղկուած քարէ են, մինչեւ իսկ բազմոցներու ներքեւի բարձրութիւնները։ Առաստաղներն ալ քարէ կամարներ են, որոնք ստիպողական ըրած են մէգր մը կամ մէգրի մօտ հաստ պատեր շինել ծանր կամարները վերցնելու համար։ Բայց միւս կողմէ պատերու թանձրութիւնը բնակութեանց

ներսերը ապատ կը պահէ արտաքին տաքութենէն։ Երուսաղէմի լեռներուն քարը ընդհանապէս դեղնորակ սպիտակ մըն է, դիւրաւ տաշուող և լաւ յղկուող։ Բայց քարահանքերէն գունաւոր եւ գեղեցիկ երակներով մասեր ալ դուրս կուգան, որոնք ազնիւ մարմարներու պէս գործերու կրնան յարմարիլ։ Վանական շինութեանց մէջ կը տիրէ հասարակ դեղնորակ քարը, տաշուած բայց ոչ միշտ յղկուած. իսկ պատերը ներսի կողմէն ծեփով պատած են։

6. — Վանականաց և ուխտաւորաց սահմանեալ մասերը բոլոր շինութեանց կեդրոնական մասը կը գրաւեն, և իբր 175 մէտր երկայն և 100 մէտր լայն, այսինքն իբր 18,000 մէտր քառակուսի տարածութիւն ունին, և այս մասին մէջն են Ս. Յակոբեանց Մայր Տաճարը և Ս. Թէոդորոս Եկեղեցին։ Ինքնուրոյն մասեր կը կազմեն Զամ-բաղը, որ է Մայրիթաղը՝ ժառանգաւորաց Վարժարանին յատկացուած, գմբեթայարկ ճեմարանը, որ վարժարանին մաս կը կազմէ, Ս. Հրեշտակապետաց եկեղեցին և վանքը՝ մայրապետներու յատկացեալ, և Ս. Փրկչի եկեղեցին ու վանքը՝ գերեզմաննոցներուն մօտ, որոնք զատ զատ նկատի պէտք առնենք իրենց կարգին։ Կեդրոնական շինուածը մէջ մէջ բաւիղանման անցքերով միացած է, և շատ մը թաղերու կը բաժնուի։ Իսկ բաղ անունով կ'իմացուի երբեմն զոց, բայց ստէպ բաց բակ մը, որուն շուրջը կը գտնուին բնակութեան սենեակներ։ Թաղերը երբեմն գետնայարկ են եւ երբեմն ալ բարձրայարկ, այսինքն ներքեւի շինուածներուն վրայ կազմուած։ Վանքին մեծ դուռը կը բացուի առջեւի հրապարակին վրայ, որ ընդարձակուած է Եսայի պատրիարքի ա-

տին, դիմացի պարտէզներու պատերը ետ քաշելով։ Դրան վրայ երեւցող ճակատի մասը Աբեղաթաղն է, կէս կամար անցքին վրայ բարձրացող շէնքը սեղանատունն է, իսկ միւս կողմի մեծ կամարին վրայ կը բարձրանայ պատրիարքարանը։ Ներս կը մտցուի մեծ դուռով մը, որ դուրսէն բարձր կ'երեւայ, բայց ներսէն վերի մասը գոց է, վրայի շէնքերուն պատճառով։ Դրան վրայ կը կարդացուի, վերջին տարիներու մէջ գրուած, երեքլեզուեան մակագրութիւն մը, Վանք Հայոց Ս. Յակոբեանց, دير الارمن مار يعقوب եւ Couvent Arménien St. Jacques: Այդպիսի մակագրութիւն մը ո՛չ միայն աւելորդ եղած է հանրածանօթ անուոյ մը վրայ, եւ անուղիղ եղած է պատրիարքական Աթոռը պարզ վանքի մը վերածելով, այլ և սխալ է couvent բառին կիրառութիւնը, որ լատինական ճշգաբանութեամբ յատուկ է երկրորդական գաւառակարգի մուրացիկ եղբայրութեանց, և չի պատշաճիր հնօրեայ միանձնական միաբանութեանց։ Թիւրիմացութիւնը յառաջ եկած պիտի ըլլայ Երուսաղէմի մէջ հաստատուած Փրանկիսկեանց վանքերուն կոչումէն, և լատինական ճշգաբանութեանց անտեղեակ չըլլալէն։ Մեր տեսութեամբ քանի մը տարի առաջ գրուած մակագրութիւն մը յարատեւելու իրաւունքէն զուրկ է։ Դրան կամարին ներքեւ կը տեսնուի՝ քարի վրայ քանդակուած Սայիտ Ապումէհմէտ էլ Ջահիր, Չագմագ մականուանեալ, Եգիպտոսի Սուլթանին հիճրէթի 954 (= 1437) թուականին տուած անբռնաբարելիութեան հրովարտակին պատճէնը։

7. — Դուռնէն ներս մտած ատեն՝ ճակատը կը տեսնուի մարմարեայ արհեստակերտ մեծ թակոյկ մը,

ջուրով լեցուն, որ փոխանակած է ջուրի հին կուրը, որ կը ծառայէր, ինչպէս այժմս ալ Թակոյկը, ամէն անցորդի ծարաւը յագեցնելու։ Այդ Թակոյկը նախապէս պատրիարքարանի մէջ զետեղուած էր, և այստեղ փոխադրուած էր 1900ին, երբ Ապտիւլհամիտ Բ. Կայսեր քսանևհինգամեակին յիշատակարան մը։ Մտնողին ձախ կողմը կը գտնուին դռնապանին սենեակը և պահակներու երեսքաց նստարանները. իսկ անոնց հանդէպ կայ վրան գոց անցք մը, որ դառնալով կը տանի վանքին Մեծ Բակը։ Սոյն անցքին վրայ կը գտնուին քարտուղարներու և սպասաւորներու սենեակները, և Թարգման վարդապետին պաշտօնատունն ու բնակարանը։ Բայց անոնց չյառաջացած՝ անցքին սկիզբը, ձախ Թևին վրայ սովորական դուռնէ մը կը մտցուի Ս. Յակոբի մայր տաճարի բակը, որուն ճակատը կը գտնուի Ս. Յակոբեանց եկեղեցին, և առջևը վանդակապատով պատուած կամարակապ արտաքին գաւիթ մը։ Գաւիթ մտնողին աջակողմի դուռը կը տանի Ս. Էջմիածին եկեղեցւոյ արտաքին բակը, և այս կողմէն ալ կը մտցուի Մեծ բակը։ Ս. Յակոբայ գաւիթին միւս կողմը երևցող սանդուխը կը հանէ լուսարարապետի կամ փակակալի պաշտօնատունը և բնակարանը, և հասարակաց սեղանատունը։ Այդ սանդուխին քովէն ուրիշ վրան գոց անցք մը կը տանի Ս. Ստեփանոսի բակը։ Երբ այցելուն ետևը տաճարին և երեսը հանդիպակաց Ս.բեղաթաղին դարձնէ, իր ձախակողմի դիմացի անկիւնը կը տեսնէ պատրիարքարանի պաշտօնական մեծ սանդուխը, իսկ իր աջակողմի անկիւնը՝ Ս.բեղաթաղ ելլալու սանդուխը։

8. — Այդ բակին մէջ կը տեսնուին քանի չափ

հին խաչքարեր և տապանագիրեր, որոնք աստ և անտի հաւաքուած և պեղումներէ հանուած և պատերուն վրայ ագուցուած են։ Ասոնցմէ քանի մը հատը գաւիթին սիւներուն վրայ կը գտնուին, որ շինուածին ամենահին մասերն են. ուրիշներ զրուած են Սբեղաթաղին պատին վրայ, որ Եղիազար Այնթապցի պատրիարքին օրով կառուցուած է ՌՃԺԲ (= 1663) թուին, և քանի մը հատ ալ վերնատունի պատին վրայ են, որ գաւիթին վրայ աւելցած է Գաբրիէլ Նիկոմիդացի պատրիարքին օրով և Պօղոս Ադրիանուպոլսեցիի կառավարչութեան ատեն, 1835ին։ Այս արձանագիրերուն հնագոյնը կը նկատուի վերնատունին պատին մէջտեղը ագուցուածը, որ Ո (= 1151) թուականը կը կրէ, եւ վերնատունի շինութեան ատեն հողին մէջէն ելած է։ Սբեղաթաղին ներքեւը կը գտնուի Աբրահամ Երուսաղէմացի պատրիարքին տապանագիրը ՈԽԱ (= 1192) թուականով։ Գաւիթին հարաւակողմի սիւնին ճակատը կայ Կարսի Վարդան եպիսկոպոսին տապանագիրը, ՈՁԷ (= 1238) թուականով։ Մնացածները ասոնցմէ նորագոյն են։

---



## ՍՈՒՐԲ ՅԱԿՈԲ

9. — Ս. Յակոբեանց տաճարին արտաքին գաւիթը կամարակապ մըն է երեք կամարով, երկու քա-

ռակուսի հաստ ոտքերու վրայ հաստատուած եւ ցած վանդակապատով բոլորն ճոխացորդէն զատուած։ Մեծ կամարներուն կիսաբոլորակ վերին մասերուն մէջ տեսնուող պատկերները կը ներկայացնեն՝ ձախակողմանը Տեառնեղբայր և Գլխադիր Յակոբ առաքեալները՝ գանազան դիրքերու մէջ. միջին կամարին վրայ կը տեսնուի վերջին դատաստանի ատեանը՝ Քրիստոսով եւ առաքեալներով, և աջակողմեանը՝ Լուսաւորչի ազգատոհմին եւ երկրորդ Պահլաւունիներու խումբը։ Կողմնակի պատերուն վերեւը, նայողին ձախակողմը, նկարուած են եօթը Երուսաղէմի պատրիարքներ՝ Գրիգոր Շղթայակիր, Թէոդորոս Խորենացի, Կարապետ Գանձակեցի, Պօղոս Վանեցի, Յովակիմ Քանաքեռցի, Պետրոս Եւդոկիացի, եւ Թէոդորոս Վանեցի, որոնք 1715էն մինչև 1819, լրացեալ դար մը, կառավարած են Առաքելական Աթոռը։ Ասոնց անկիւնը աւելցուած է Եղիայի վերացման պատկերը։ Իսկ աջակողմեան կողմնակի պատին վրայ զանազան մասերով նկարուած են Քրիստոսի եւ Յովհաննէս Կարապետի վերաբերեալ տնօրինական յիշատակներ։ Ճակատի պատկերներ նոր են. առջի երկուքը յունազգի Արմենօբուլօ պատկերահանէն նկարուած, իսկ Լուսաւորչի ազգատոհմը Մարկոսեան Մամբրէ եպիսկոպոսէ, որ կենդանի միաբանական դէմքեր գործածած է իւր պատկերին մէջ։ Կողմնակի պատերու երկու նկարները հին են, և ընկերները երեք նոր պատկերներուն ետեւը ծածկուած կը մնան։ Տաճարին աւագ դրան վրայ Քրիստոսի դատաստանին, և քովերը Թադէոս և Բարթողիմէոս առաքեալներու պղտիկ պատկերները կան։ Աւագ դրունին երկու կողմերը մանր խորշերուն մէջ երկու փոքրիկ պատարագամատոյց սեղաններ կան, յանուն Ս. Գէոր-

գայ զօրավարի և Ս. Նիկողայոսի հայրապետի, պղինձէ վանդակներով փակուած։ Աւանդութիւն է թէ երբ Սալահէտտին 1187–1194 եօթն տարիներու մէջ կնքոյ ներքև պահեց Ս. Յակոբայ տաճարին մուտքը, միաբանութիւնը արտաքին գաւիթին մէջ եւ այս սեղաններուն առջև կատարած է սրբազան պաշտամունքը։ Նոյն բանը եղած կ'ըսուի նաև՝ երբ, 1656–1659 երեք տարիներու մէջ, Աստուածատուր Տարոնեցի պատրիարքին օրով, Ս. Յակոբայ բանալիները պետութենէն գրաւուած և Յունաց յանձնուած էին։

10. — Տաճարին միջին դուռը ժողովուրդին յատկացուած է, և մասնաւորապէս արանց համար, իսկ Միաբանութեան մուտքին պահուած է հիւսիսակողման դուռը, միջինէն աւելի փոքր։ Գաւիթին հարաւակողմը դուռ չկայ, և անկիւնը կախուած են երկաթեայ և փայտեայ մեծ կոչնակները։ Եկեղեցի մըտնալնէս ետքը անոր աջակողմը ու ձախակողմը պիտի նշանակենք, ինչպէս պաշտօնապէս կ'որոշուի՝ աւագ սեղանէն առնելով, և ոչ ինչպէս մինչև հիմայ ըրինք նայողին դիրքէն առնելով։ Միաբանութեան դուռնէն մտնողը անմիջապէս երկաթեայ ներկուած վանդակապատի մը կը հանդիպի, որ մասնաւոր փոքր դաս մը կը զատէ՝ Գլխադիրի դաս կոչուած, ուր պաշտամունք այդ մասին մէջ կը կատարուին, երբ պատարագը Գլխադիրի մատուռը կը մատուցուի։ Եկեղեցւոյ ձախակողմը դառնալով, և աւագ դրան ներսի կողմը կանգնելով, պէտք է նախ ամբողջ շինուածը դիտել իր վեհութեան եւ ճարտարապետական գեղեցկութեան մէջ։ Տաճարին ձեւը հնագոյն հայ եկեղեցիներուն սովորական և Մայր Մաշտոցի ցուցած յատա-

կաղիծլին համանման է, որ Էջմիածնայ ու Բագրեւանդայ ու Գըլակայ և ուրիշ հին մայր տաճարներուն մէջ պահուած ձեւին համաձայն է։ Բառակուսիի մօտ տարածութիւն մը կը կազմէ այդ ձեւը, որուն մէջ տեղը չորս քառակուսի եւ լայնանիստ ոտքեր կամ սիւներ կեդրոնական գմբէթը կը վերցնեն, և տաճարը թէ՛ արեւելքէն արեւմուտք և թէ՛ հարաւէն հիւսիս երեք մասերու կը բաժնեն։ Արեւելակողման երկու սիւներուն գլուխը կը բաժնուի դասը, երկաթեայ ներկուած վանդակներով պատուած, իսկ հիւսիսային կամ աջակողմեան, և հարաւային կամ ձախակողմեան մասերը կը կազմեն եկեղեցւոյ երկու թեւերը. միջինն է եկեղեցւոյ ատեանը։ Ամբողջ տաճարին երկայնութիւնը 22 մէտր է, աւագ դռնէն մինչև աւագ սեղանին ետեւի կիսաբոլորակը, իսկ լայնութիւնը՝ հարաւէն հիւսիս՝ միջին հաշուով 16 մէտր, որ կու տայ իբր 350 մէտր քառակուսի տարածութիւն։ Միջին հաշուով ըսինք, որովհետև որչափ ալ պարզ նայուածքով մը կանոնաւոր կը կարծուի տաճարին լայնքը, սակայն չափուած ատեն դասին կողմը մէտր մը պակաս կը գտնենք քան դուռներուն կողմը։ Թեւերն իրենց մէջ ալ կատարելապէս հաւասար չեն, զի աջակողմեան թեւը մէտրէ մը աւելի լայն է Գլխադիրի դրան առջև քան կողմնակի խորանին առջեւ, եւ ընդհակառակն, ձախակողմեանը աւելի լայն է խորանին առջև քան արևմտեան ծայրը։ Տաճարին լայնքին այս անկանոնութիւնը ի դէպ է վերագրել նախնական շինուածին, որ կ'երևի թէ բլընաղատեալ տարածութեան մը վրայ կառուցուած է, և նոյն հիմերուն վրայ բարձրացած է այժմեան շինուածն։

11. — Գմբէթը վերցնող չորս սիւներուն երեսները 1,40 մէդր լայնութիւն ունին, որ կուտայ 2 մէդր քառակուսի նիստ։ Իսկ սիւներուն վրայ բարձրացող գմբէթը՝ ներսի կողմէն՝ 18 մէդր բարձրութիւն ունի, փոքր գմբէթն ալ առնելով, որ առաջին մեծ գմբէթին վրայ աւելցուած է 1835ին, վերնատունին շինութեան առթիւ, որ ատեն տաճարին ներքին ծեփն ալ ամբողջովին նորոգուած է։ Կարծիք կայ, թէպէտ ստոյգ տեղեկութիւն չկայ, թէ գմբէթը նախապէս աւելի բարձր եղած ըլլայ, և արաբացի տիրապետողներու հրամանով փլցուած և այժմեան ցած գմբէթով փոխանակուած։ Տաճարին արևմտեան պատին վրայ, Միաբանութեան դուռին քովը, Երուսաղէմ քաղաքի պատկեր մը կը տեսնուի, որուն մէջ Ս. Յարութեան և Ս. Յակոբի տաճարները գծուած են, բայց յստակ գաղափար մը չեն տար։ Դժբախտաբար այժմեան տաճարին շինութեան թուականին համար ալ ոչ մի ստոյգ յիշատակ եւ ոչ մի վստահելի յիշատակարան գտնուած չէ։ Հետազօտիչներ կ'ուզեն մինչև Ե. դար բարձրացնել։ Արուեստագէտներու ուսումնասիրութիւններն ալ պատկառելի հնութիւնը կ'երաշխաւորեն, և առ այժմ կը պարտաւորուինք այդ ծանօթութիւններով գոհանալ։

12. — Եկեղեցւոյ յատակը ընդհանրապէս սաղիմական սովորական քարով սալարկուած է, ի բաց առեալ աջակողմեան թևը եւ դուռին ետևի գիծը, որ սպիտակ մարմարէ քառակուսիներով սալարկուած է, սեւ մարմարէ շերտերով զատուած. Իսկ ատեանին կեդրոնը սպիտակ և սեւ և դեղին մարմարներով և ճաշակով զոցուած է։ Այդ մարմարեայ մասերը, կե-

գրոնէն զատ, 1897 ին չինուած են հետազօտական պեղումներու հետեւանքով։ Լսուած է որ այդ առթիւ Գիլխաղիրի դրան առջեւ երկու կմախքներ տեսնուած են, որոնք Լեւոն Զ.ի թագուհւոյն Մարգարիտի եւ դստերն Փեննայի այստեղ թաղուած ըլլալուն զրոյցին կը նպաստէին, եթէ Մարգարիտի Եգիպտոսի մէջ վախճանած ըլլալուն կարծիքը հաստատուած չըլլար։ Ուստի պէտք է ըսել, թէ Երուսաղէմի մէջ ապրող եւ այստեղ թաղուողը Մարգարիտ թագուհին չէ, այլ Մարիամ կամ Մարիուն թագուհին, Կոստանդին Բագղինեանի այրին, Օշինի կոմսուհիին հետ։ Տաճարին պատերը ամէն կողմ մարդաչափ բարձրութեամբ զոցուած են Կուտինայի ընտիր յախճապակեայ աղիւսներով, իսկ անկէ վեր ամբողջ խաւանկարներ են, պատերու վրայ իբր որմանկար տարածուած. միայն կամարակապ վերին մասերը սպիտակցեալ ծեփով կը մնան։ Յախճապակները և պատկերները Գրիգոր Շղթայակիր պատրիարքի օրով ալուցուած են պատերուն, երբ երջանկայիշատակ Հայրապետը, Յովհաննէս Կոլոտ Կ. Պոլսոյ պատրիարքի աջակցութեամբ եւ Յովհաննէս Հաննա փոխանորդ եպիսկոպոսի գործունէութեամբ, Ս. Երուսաղէմի Աթոռին նորոգ կենսատուն եղաւ, պարտքերը վճարեց, չինուածները նորոգեց եւ յարդարեց, եւ զարդեր ու ստացութիւններ շատցուց, յամենայնի վայելելով օրհնեալ ազգիս զուարթառատ նուիրատուութիւնները։ Դասին մէջը եւ բեմին վրան երփներանգ մարմարներով զարդաման գործուած են, և սրբազան պաշտամանց պահանջներուն համեմատ տեղեր ալ զատուած են։ Այդ գեղեցիկ ձեռակերտը, որուն նմանը ուրիշ տեղ տեսնուած չէ, արդիւնք է Փիլիպպոս Աղբակեցի կաթողիկոսին նա-

խաձեռնութեան, երբ ՌՃԱ (= 1652) թուին Երուսաղէմ կը գտնուէր Կիլիկիոյ գործերով։ Յատկապէս կը յիշուի բեմին բարձացումն ալ Փիլիպպոսի կարգադրութեամբ, որ առաջ բաւական ցած եղած կ'ըլլայ, մինչ այժմ մէտր մը բարձր է դասին յատակէն։ Ութ մէտր երկարութիւն ունի բեմին բերանը և եօթը մէտր վարագոյրին բացուածքը։ Դասին կողմնակի պատերը, և երեք խորաններուն ներսերը, եկեղեցւոյն միւս պատերուն պէս, Կուտինայի ընտիր յախճապակիներով պատած են, մարդաչափ բարձրութեամբ. միայն աւագ խորանին պատերը կրկնակի բարձրութեամբ եւ աւելի ընտիր յախճապակներով են զգեցուած, ամէնն ալ Ծըղթայակիրի ձեռքով լրացած։ Իսկ բեմին ճակատը քանդակուած և ներկուած մարմար է, պարսկական ճաշակով գործուած, և Սեղբեստրոս Երևանեանցի կամ Սեղբոս Ամիրայի առատաձեռնութեամբ շինուած ՌՃՀԹ (= 1730) թուականին։ Դասին մէջտեղի մասին յատակը տեղ տեղ ծեծուած եւ մաշուած երեւոյթ կը կրէ, եւ այս ալ յառաջ եկած է այն տեղերուն յաճախ կոխկրտուելէն, բայց աւելի՝ այն տեղ ալ գործուած պեղումներէն։ Դասին ճիշդ կեդրոնը չկրնալով միևնոյն արհեստով վերաշինուիլ, կարմրորակ կլոր մարմարով մը փոխանակուած է այժմ։ Տաճարին վրայ վերջին շինուածներն են կանանց վերնատունը և փոքր գմբէթը՝ 1835–1836 տարիներուն մէջ. անկէ ետքը նշանաւոր յաւելուած չէ եղած։

13. — Տաճարին եկեղեցական զարդերուն մէջ ամենէն նշանաւորն է աւագ սեղանին խաչկալը, որ պարզ խաչկալէ աւելի բան մըն է, զի սեղանին բուն խաչկալը ետեւօք կը մնայ, եւ սեղանին քովերը ու-

վրան ամբողջ ճակատ մը կը կազմեն, մինչեւ մեծ կամարին բերանը, համակ գեղեցկաքանդակ և ոսկեզօծուած փայտէ, տեղ տեղ պատկերներով, որոնք կը գտնուին մինչև իսկ ներքին խաչկալի սափրճաններուն երեսները։ Գրիգոր Շղթայակիր եւ Յովհաննէս Կոլոտ պատրիարքներու անունով շինուած է խաչկալը ՌՃՀԲ (= 1723) թուին, ի յիշատակ իրենց պարագայից եւ միաբանից և նուիրատուաց։ Ամբողջ ճակատը փառայեղ յաղթական կամարի մը կերպարանը ունի, մէկ մեծ և երկու փոքրագոյն կամարաձև բացուածքներով. իսկ վերևը կը զարդարեն երեք փոքր գմբէթներ կամ կաթողիկէներ։ Ոսկեզօծը նորոգուած է Կիրակոս Երուսաղիմացի պատրիարքին օրով, ՌՄՂԶ (= 1847) թուին, Մինաս Իւսկիւտարցի վարպետին ձեռքով։ Այդ գեղեցիկ գործուածը անեղծ պահուելու համար կարմիր կտաւներով փակուած կը մնայ սովորաբար, և միայն մեծահանդէս տօներուն կը բացուի։ Կողմնակի երկու խորաններուն խաչկալներն ալ յարեւնման արհեստով եւ զարդով շինուած են, եւ նոյնպէս ծածկուած կը պահուին։ Երկրորդ գեղեցկաքանդակ եւ ոսկեզօծեալ ճակատ մըն ալ եկեղեցւոյ աջակողմեան պատին վրայ կայ, որ հարաւակողման մեծ դրան հանդիպակաց է, տաճարին նախկին մեծ մուտքին դիմացը։ Այս մասը կրնայ նկատուիլ իբրեւ Գլխադիրի գերեզմանին պատուոյն նուիրուած, որչափ ալ միապաղաղ կտոր մը չի կազմեր, այլ զանազան մասերէ կը բաղկանայ, ինչպէս են Գլխադիրի մատուռին ճակատը, եւ վրայի գմբէթը՝ խորշի մը մէջ մուծուած, Գլխադիրին քովը Տեառնական կոչուած Որդւոց որոտման պատկերին շրջապատը, վերև Ս. Նշանի խորանին երեսն ու պատըշգամբը, երկու կողմերը վեց սուրբերու պատկեր-

ներով և ներքևը փառաւոր ամպիոնը, ուսկից սովորաբար Յայսմաւուրք կը կարդացուի, և ինչ ինչ օրեր ալ Աւետարան կը կարդացուի և քարոզ կը խօսուի։ Այս մասերուն գործուածն ու ճաշակն ալ աւագ սեղանին ճակատին յարեւնման ըլլալուն, միևնոյն ժամանակի մէջ շինուած ըլլալը կը ցուցնէ։ Այս ճակատն ալ սովորաբար կարմիր լաթերով փակուած կը պահուի։

14.— Նշանաւոր է և՛ս Տեառնեղբօր աթոռը, վրան բարձր գմբէթով, համակ ընտիր փայտէ շինուած և սատափեայ ագուցիկ կտորներով արհեստակերտ զարդարուած։ Աթոռին առջևը պղնձեայ ցած շրջապատ մը մուտքը կ'արգիլէ, զի ոչ միայն սովորաբար գործածելի աթոռ չէ, այլ զի նոյն տեղ եղած է Տեառնեղբօր Յակոբայ գերեզմանը, որու բնակութեան տունն ալ նոյն տաճարին տեղը կը ճանչցուի։ Այժմ սուրբին գերեզմանը աւագ սեղանին ներքևը փոխադրուած գտնենք, բայց աթոռին ներսն ու դուրսը մշտավառ կանթեղներ և աթոռին վրայ խորհրդաւոր պատկերներ՝ նուիրական սրբավայր մը կը ներկայեն աթոռը։ Իրօք ալ ծիսական ամէն խնկարկութիւններ այս աթոռէն կը սկսին, և այս աթոռին կը վերջանան։ Պատրիարքը, տարին մէկ անգամ միայն, Տեառնեղբօր տօնին օրը, այդ աթոռը կը բարձրանայ. մէյ մըն ալ նորընտիր պատրիարքները իրենց առաջին գահակալութիւնը այդ աթոռին վրայ կը կատարեն։ Պատրիարքներու սովորական աթոռը, Տեառնեղբօր աթոռին քով է դրուած, դէպի դասին դուռը։ Հաստատուն աթոռ մըն ալ կը մնայ Գլխադիրի ատեանին անկիւնը, որ Ս. Մակարի գերեզմանին և մատուռին մօտ ըլլալուն Մակարի աթոռ է կոչուած։ Գլխադիրի նուիրա-

կան աթոռը արձանագրութեան մէջ Եպիսկոպոսարան է ըսուած, և շինուած է, կամ լաւ ևս յարդարուած և զարդարուած է ՌՃԻԹ (= 1680) թուին, Եղիազար Այնթապցի պատրիարքին ձեռքով, և Տարոնացի Մելիտոն ամիրայի ծախքով, և նորոգուած է ՌՄԿԱ (= 1812) թուին Թէոդորոս Վանեցի պատրիարքին օրով։ Սովորական աթոռը և Ս. Մակարի աթոռը յատուկ թուական չեն կրեր։ Զարդերուն կարգին յիշենք թէ՝ աւագ սեղանի բեմին առջև երկու մեծ և երկու մեծամեծ աշտանակներ կան, իրենց մեծութեան համաչափ և նկարէն մոմեղէններով։ Երեք մեծամեծ ջահեր ալ կախուած են մէկ գիծի վրայ, եկեղեցւոյ կեդրոնը և կողմնակի կամարներուն ներքև։ Ասոնցմէ զատ 200է աւելի և ջայլամի հաւկիթէ(*) կամ նման գունդեր կան շուաններով կախուած, որոնք տօնական առիթներուն ամբողջաբար կամ մասամբ արծաթեայ կանթեղներով կը զարդարուին, և աստղալից երկնքի տեսարան մը կը կազմեն, մանաւանդ մութ ժամերու ատեն, զի լոյս ժամերուն կանթեղներու խիտ առ խիտ շուանները այդ տեսարանը կը նուազեցնեն։ Կանթեղներէն 40 հատը մշտավառ են սեղաններու և պատկերներու առաջ։ Մանր տեղեկութիւնները լըրացնելու համար աւելցնենք, թէ դուռին աջակողմը եղած զոյգ աթոռները պատճառ եղած են, որ աւելի նեղ ըլլայ ձախակողմին վանդակապատը։ Եկեղեցւոյ դասը դռնափեղկեր չունի, հակառակ ուրիշ եկեղեցիներու սովորութեան։ Մուտքն ալ լայն և ընդարձակ է, որով փոքր ատեան անունով ալ կը յիշուի դա-

(*) Ջայլամի հաւկիթները այժմ փոխանակուած են յախճապակեայ գունդերով։ Ծ. Հ.

սին այս մասը։ Մասնաւոր մուտքեր կան նաեւ դասին երկու անկիւնները, ինչպէս ամէն տեղ սովորութիւն է, բայց ատոնք ալ առանց դռնափեղկի են։ Վանդակապատ բաժանումը ներկեալ երկաթէ եւ արհեստական գործուած է։ Նկատողութեան արժանի են կողմնակի մատուռներուն դուռներն ալ, որ ընտիր փայտէ եւ ագուցիկ սատափներով զարդարուած են, ընտիր ճաշակով, եւ նուիրողներու յիշատակարաններն ալ ունին վրանին։ Բոլոր այդ զարդերուն թուականները յիշել երկար կ'ըլլար, անոր համար բաւական ըլլայ գիտել տալ թէ սիւներուն վրայ ՉԼԵ (= 1286), եւ Չ (= 1351) եւ ՊՂԱ (= 1442) թուականներ կան, զարդերու նուիրատուութեանց ակնարկող։

15. Ս. Յակոբայ տաճարին ամէն կողմի պատերը պատկերներով զարդարուած են, իբր թէ որմանկարներ ըլլային, բայց շրջանակներով պատուած իւղանկարներ են։ Այդ տեսակէտէն Երուսաղէմի եկեղեցիները կը տարբերին ընդհանուր հայ եկեղեցիներէն, զի մինչ ազգային սովորութիւնը շատ զգուշաւոր է եկեղեցիները պատկերներով լեցնելէ, Երուսաղէմի հայ եկեղեցիները ամէն կողմ պատկերներով լեցուած են, եւ այս ալ առաջին ժամանակներէ ի վեր, ինչպէս հին հին պատկերներու գոյութենէն եւ թուականներէն կը քաղուի։ Ս. Յակոբայ տաճարին կողմնակի խորաններուն մէջի կողմերը, եւ սիւներուն վրան, եւ երեք մեծ պատերը, յախճապակիներու գիծէն վեր, մինչեւ կամարակապին ծեփը, բոլոր պատկերներ են, ոչ միայն իբր որմանկար զարդ, այլ եւ իբրեւ նուիրական պատկեր, որոց առջեւ՝ մեծ տօներուն ամբողջաբար, եւ իւրաքանչիւրին տօնին մասնաւորաբար, կանթեղ-

ներ կը վառուին։ Տաճարին որմերը զարդարող պատ-
կերներուն մասին ընկալեալ աւանդութիւնն է՝ թէ այժ-
մեաններուն տակը ծածկուած կը մնան նախնական-
ները, որոնք յիշատակարաններ ալ կ'ունենան անշուշտ.
այլ ցարդ ո՛չ ոք համարձակած է եղածները խախտել
հետազօտելու համար։ Պատկերներուն նիւթերը նշա-
նակելու համար՝ աւագ սեղանէն կը սկսինք, որուն
պատկերը Աստուածամայրն է՝ Գլխադիր և Տեառնեղ-
բայր Յակոբներով. խորհրդանոցներուն փեղկերուն վը-
րայ նկարուած են Պետրոս և Պօղոս առաքեալները.
իսկ ճակատին վրայի գմբէթներուն առջևի մանր պատ-
կերները տէրունական են։ Աջակողմեան Ս. Կարապե-
տի խորանին աջ կողմը՝ Յարութեան պատկեր կայ.
իսկ ձախ կողմը՝ Ս. Կարապետի կեանքէն պատմական
պարագաներ։ Ձախակողմեան Ս. Աստուածածնայ խո-
րանին աջակողմը՝ Աստուածածնայ կեանքէն պատմա-
կան պարագաներ նկարուած են, իսկ ձախակողմը՝ Յա-
րուցեալ Յիսուս պարտէզին մէջ։ Աւագ սեղանին մեծ
սիւներուն վերևը՝ Գաբրիէլ հրեշտակի և Մարիամ Տի-
րամօր պատկերներն են դէմ դէմի, ի խորհուրդ աւետ-
ման, և ներքևները՝ Աբգար և Տրդատ թագաւորներ
արքունական տարազով։ Միջավայրի չորս սիւներէն
իւրաքանչիւրին չորս երեսներուն վրայ երկուքական
պատկերներ կան, զորս պիտի յիշենք արևելեան ե-
րեսէն սկսելով և դէպ հիւսիս շրջելով։ Աջակողմեան
առաջին սիւն, արևելեան երես, ներքև՝ Տեառնեղ-
բայր, վերև՝ Տեառնեղբօր կեանքէն դրուագներ. հիւ-
սիսային երես, վերև՝ վեցօրեայ արարչութիւն, ներ-
քև՝ եդեմական դրախտ. արևմտեան երես, վերև՝
Աստուածածին լի փառս, ներքև՝ Աստուածամօր ուխտի
պատկերը, արծաթապատ և զարդարուն. հարաւային

երես, ներքև՝ Իսահակի զոհը, վերև՝ Աբրահամ և երեք հրեշտակներ։ Աջակողմեան ետեւի սիւնը, նոյն կարգով, վերև՝ Քրիստոսի փորձութիւնք, ներքև՝ հըրեշտակաց սպասաւորելը. վերև և ներքև՝ Գլխադիրի կեանքէն և վկայութենէն դրուագներ. վերև՝ Աստուածածին և մարգարէք, ներքև՝ Աստուածածին և չորս աւետարանիչք և 12 առաքեալք, որոց թիւը լրացած է Պօղոսով և Բառնաբասով։ Հարաւային երեսի պատկերները երեք են. վերէն վար՝ Նիկիոյ և Կոստանդնուպոլսոյ և Եփեսոսի երեք տիեզերական ժողովներու նուիրուած, որոց մէջ կը դիտուին Արիստակէս և Ներսէս հայկական վեղարներով։ Ձախակողմեան ետեւի սիւն, ներքև՝ Քրիստոսի խաչին փառքը, և վերև՝ Քրիստոս դատաւորի գալուստը. վերև՝ Դանիէլի, և ներքև՝ Յայտնութեան տեսիլքները. ներքև՝ Աստուածամայր տնօրինականներով, և վերև՝ Քրիստոսի վերջին ընթրիքը. վերև՝ Քրիստոսի թաղումը, և ներքև՝ Քրիստոսի էջն առ նահապետս։ Ձախակողմեան առաջին սիւն. ներքև՝ Կարմիր Ծովէ անցքը, վերև՝ անկէզ մորենին. ներքև՝ Նոյի տապան մտնելը, և վերև՝ տապանէն ելնելը. վերև՝ Յակոբ և երկոտասան նահապետք, ներքև՝ Աստուածամօր ուխտի պատկերը, դիմացինին յար և նմանը. ներքև՝ Յակոբ հրեշտակին հետ, վերև՝ Յակոբի սանդուխը։

16— Գլխաւոր պատերուն պատկերները երկու շարքի բաժնուած են. վերի շարքը տնօրինական մեծ պատկերներ են, և վարի շարքը մարտիրոսներ և ուրիշ սուրբեր են։ Առաջ յիշենք վերի շարքը՝ հարաւարևելեան անկիւնէն կամ Ս. Աստուածածնայ խորանին քովէն սկսելով։ Հարաւային պատին վրայ կան.

Ծնունդ, Մկրտութիւն, Քրիստոս կապեալ՝ նեղ պատկեր մը, Քառասնօրեայ գալուստ, Կանայի հարսնիք, Առաքելոց ընտրութիւն, Քրիստոս գանակոծեալ՝ նեղ պատկեր. Ղազարոսի յարութիւն և անոր ընթրիքը, տասն կուսանաց և օղեաց ու այծեաց առակները։ Արեւմտեան պատին վրայ՝ Մանկանց օրհնութիւն, Բանն մարմին եղեւ, Կորուսեալ դրամն ու ոչխարը, Ինն երանութիւնք, Քրիստոս յարուցեալ, Անառակ որդին, Սամարուհին, Մարտիրոսութիւնք առաքելոց։ Հիւսիսային պատին վրայ՝ Վերափոխում, Ննջումն Կուսին, Այլակերպութիւն. Գլխադիրի գմբէթէն ետքը՝ Կիւրեղ Երուսաղէմացի խաչը բարձրացնող, Ս. Նշանի պատշգամբէն ետքը՝ Թովմայի դաւանութիւնը, Քրիստոս կապեալ՝ նեղ պատկեր, Համբարձում, Հոգեգալուստ։ Անմիջապէս վարի շարքը իջնալով և այս անգամ արեւելքէն դէպ արեւմուտք քալելով, հետզհետէ նեղ ու մանր պատկերներ կը գտնենք, որոնք կը ներկայացնեն, հիւսիսային պատին վրայ՝ Երուսաղէմի հայրապետները՝ Յանոբ Տեառնեղբայր, Շմաւոն Տեառնեղբայր, Յուդա Տեառնեղբայր, Մակար Երուսաղէմա-ցի, Յուդա Կիւրեղ, Կիւրեղ Երուսաղէմացի, Նարկիսոս Երուսաղէմացի, Գրիգոր Պարոնտէր, Գրիգոր Շղթայակիր, ևս և Աթանաս Աղեքսանդրացի, Գրիգոր Աստուածաբան և Կիւրեղ Աղեքսանդրացի հայրապետները։ Ս. Ստեփանոսի և Գլխադիրի դռներուն մէջտեղը՝ Որդւոց Որոտման Տեառնական կոչուած պատկերը։ Գլխադիրի և Ս. Մինասի դռներուն մէջտեղը՝ Աստուածածնայ պատկերը՝ Գեղեցիկ կոչուած։ Ս. Մինասի և Ս. Մակարի դռներուն մէջտեղ՝ Յովհաննէս Մկրտիչ և Եղիա Մարգարէ՝ ճգնաւորական տարազով։ Ս. Մակարի դռնէն մինչև անկիւնը՝ Պօղոս,

Անտոն, Ոնոփրիոս և Մարկոս ճգնաւորներ։ Արևմըտեան պատին վրայ, եկեղեցւոյ փոքր դրան շուրջը, որմին վրայ նկարուած՝ ինն դասակարգութիւնք եկեղեցւոյ՝ ուրիշ մասերով։ Եկեղեցւոյ երկու դուռներուն մէջ՝ Երուսաղէմ քաղաք Ս. Յակոբայ վանքով, Յիսուս երկոտասանամեայ ի Տաճարին՝ սիւնին հանդէպ, Յայտնութեան մէջ նկարագրուած քաղաքը։ Աւագ դրան վրայ Ս. Սարգիս և դրան շուրջը եօթն խորհուրդներ դարձեալ որմանկար, 1849 թուականով։ Աւագ դուռէն մինչև անկիւնը՝ Քառասունք Սեբաստիոյ, Բեթղեհէմի մանկունք՝ սիւնին հանդէպ, Ս. Հռիփսիմէ, Ս. Կատարինէ։ Հարաւային պատին վրայ՝ արևմուտքէն դէպ արևելք յառաջելով, Ս. Սարգիս՝ Վառվառէ և Թեկղ կոյսերով, Թէոդորոս, Մերկերիոս, Մինաս և Գէորգ զօրավարներ, Իգնատիոս Աստուածազգեաց, Տեառնեղբօր մարտիրոսութիւնը, Ստեփաննոս Նախավկայ։ Էջմիածնի դուռնէն մինչև անկիւնը՝ Յովհան Ոսկեբերան, Պետրոս և Պօղոսի մատուռներուն ելլալու դուռը, Նիկողայոս Սքանչելագործ, Յակոբ Մծբնայ, և Հայոց հայրապետներէն՝ Մեսրոպ Մաշթոց, Սահակ Պարթև, Ներսէս Մեծն, Յուսիկ Պարթև, Գրիգորիս Աղուանից, Վրթանէս Պարթև, Արիստակէս Պարթև, Գրիգոր Լուսաւորիչ և Թադէոս առաքեալ, որ միւս գլուխէն առաջին տեղն է։ Բոլոր այս պատկերներուն նկարչութեան արուեստները իրարմէ շատ տարբեր են, զի սովորական գծագրութեանց մօտ իտալական ընտիր արուեստի արտադրութիւններ ալ կան, մանաւանդ սիւներուն շուրջը և Տեառնեղբօր աթոռին վերևը եղողները։ Տեղ մը նշանակուած չէ թէ այդ պատկերները օծեալ են, սակայն ամենուն առջև կանթեղներ կախուած ըլլալը և տօ-

ներուն վառուիլը, և վերջին պատկերներուն ալ օծմամբ զետեղուիլը, առաջիններուն ալ օծուած ըլլալը կը հաւատեն։

17. — Սուրբ Յակոբի մայր տաճարը իրեն յարակից սրբավայրեր կամ մատուռներ ալ ունի, զորս յետաձգեցինք, իւրաքանչիւրը առանձինն նկարագրելու համար։ Եկեղեցւոյն ձախակողմը, հարաւային պատին մէջտեղը, Գլխադրի մատուռին դէմը, լայն եւ ընդարձակ եւ զարդարուն դուռ մը կայ։ Ասկէ կը մտցուի Ս. Էջմիածին եկեղեցին, որ կը տարածուի մայր տաճարի երկայնութեամբ, եօթը մէթր լայնութեան վրայ։ Մեծ դուռը աւելի փառաւոր և ընդարձակ և զարդարուն է դէպի մայր տաճար մտնալուն կողմը, իբր զի այս է եղեր նախապէս Գլխադրի աւագ դուռը, ուսկից ուխտաւորք և ժողովուրդք տաճար կը մտնեն եղեր։ Իսկ այն դուռները զորս տաճարին արեւմտակողմը յիշեցինք Միաբանութեան վերապահուած երկու դուռեր են եղած։ Ինչ որ այժմ Ս. Էջմիածին եկեղեցի է, առաջ ժամանակներ երեսը բաց գաւիթ է եղած, որուն կամարները հիւսելով եւ ներսն ալ յարդարելով եկեղեցի ձեւակերպուած է Եղիազար Այնթապցի պատրիարքէն, երբ նա միտքին մէջ կ'որոճար Էջմիածինէ և Կիլիկիայէ անջատ Նոր կաթուղիկոսական աթոռ մը ստեղծել Երուսաղէմի մէջ, տաճկաբնակ Հայոց համար, օգտուելով այն պարագայէն որ Էջմիածին Պարսից հպատակ էր և պետական ու ազգային յարաբերութիւնք ձգտեալ էին։ Այս եկեղեցւոյն անուանակոչութիւնը եղած կ'ըսուի յանուն Իջման Քրիստոսի ի փոխումն Մօրն իւրոյ, ինչպէս եկեղեցւոյն արեւմտեան դրան վրայի պատկերն

ալ ցոյց կուտայ։ Սակայն Էջմիածին անունը ճարտար դարձուածք մըն է եղած Արարատեան Մայր Աթոռին կոչումը նորոգելու համար, քանի որ Տիրամօր փոխման եկեղեցական յիշատակութիւնը միշտ Գալուստ և Իջումն բառով բացատրուած է։ Առ այս կը նպաստէ եւ դիտել, թէ Եղիազար իւր հակաթոռ կաթուղիկոսութիւնը հռչակելէ ետքը, սոյն Էջմիածին եկեղեցւոյն և ոչ Ս. Յակոբեանց մայր տաճարին մէջ կատարած է միւռոնի օրհնութիւնը ՌՃԺԹ (= 1670) թուին։ Էջմիածինի եկեղեցին՝ իւր նախնական վիճակին մէջ, ուխտաւորաց մուտքին յատկացուած էր ըսինք. այս բանին յիշատակը այսօր ալ տակաւին կը պահուի, զի առաջին անգամ այստեղ կը խմբուին ուխտաւորները, եւ Գլխադիրի անունով նուէրն ալ այստեղ կը վճարեն, և միջին դուռէն մայր տաճար մտնելով Ս. Գլխադիրի առաջին ուխտը կը կատարեն։ Կանանց դուռն ալ այս կողմէն է, զի կիներ Էջմիածինի արեւմտեան դուռէն և միջին մեծ դուռէն տաճար կը մտնեն. Նոյնպէս այստեղէն մայր տաճարի վերնատունը կը բարձրանան։ Կանանց խոստովանահայրն ալ այդ եկեղեցւոյն մէջ կը նստի իւր խորհրդական պաշտօնը կատարելու։

18.— Ս. Էջմիածին եկեղեցւոյն ներսը Եղիազարի օրէն շատ զարդարուած չ'երեւիր, գոնէ առաջին զարդերը վերջէն փոփոխուած և աւելցած պիտի ճանչնանք, վասն զի եղած արձանագրութիւնները Շղթայակիրի ժամանակը կը յիշեցնեն մեզի։ Երկու եկեղեցիներու միջև եղող մեծ դրան փեղկերը Կեսարացի Ղանտիլ վարպետին և իւր աշակերտին՝ Տէր Յովակիմեան Սարգիս վարպետին յիշատակներն են ՌՃԿ (=

1711) տարին նուիրուած։ Հաննա կը վկայէ թէ Շղթայակիր վիզին անուրը հանելուն ի յիշատակ, ՌՃՀԵ (= 1726) տարին, կազմեց Ս. Սինայի սեղանը էջմիածին եկեղեցւոյն հարաւային պատին ներքև, այն երեք մեծ քարերուն վրայ, որոնք յիշատակ բերուած էին Սինա և Թաբոր լեռներէն և Յորդանան Գետէն, և ուխտաւորներուն համար այդ հեռաւոր սրբավայրերուն կարօտը կը յագեցնէին։ Այդ քարերը այժմ ալ կը տեսնուին երկաթեայ թելէ հիւսկէններով պատած, բայց երեքէն ալ մէյ մէկ մաս դուրս թողուած են բարեպաշտներու համբոյրին։ Միջին քարը յայտնապէս Յորդանանինն է, և միւս երկուքէն վրայինը Թաբորի և ներքևինը Սինայի կը կարծուի։ Իսկ սեղանը շատ փոքրիկ է և միասիւն, և այդ միակ սիւնին խոյակին ներքև տեսնուած երկաթեայ մեծ օղակը Շղթայակիրին երկաթեայ անուրն է անշուշտ, եթէ սեղանն ալ այդ անուրին յիշատակին նուիրուած էր։ Այս պարագայն Շղթայակիրի սիրտին յատուկ գրգիռ մը տուաւ եկեղեցին փառազարդելու, որով ՌՃՁԲ (= 1733) տարին կանգնեց փառաւոր խաչկալը, մայր տաճարին փառաւոր խաչկալին նմանութեամբ և զարդարանօք, և ՌՃՂԱ (= 1742) տարին ալ մարմարեայ բեմը շինեց, երկուքն ալ Սեղբեստրոս Երևանենց կամ Սեղբոս ամիրային ծախքով։ Սեղանին աջակողմը երկու դարաններ կան, որոնց դուռները արհեստակերտ քանդակներ ունին։ Սեղանին ետին են մայր տաճարին երկու փոքր զանգակներուն չուանները. իսկ մեծ զանգակը շարժելու համար պէտք է Ս. Պօղոսի վերին մատուռը բարձրանալ։ Պատերուն յախճապակները գրեթէ երկու մարդաչափ բարձրութիւն ունին, բայց անագան ագուցուած են ՌՄԽԳ (= 1794) տարին, Պետ-

րոս Եւդոկիացի Նորապսակ պատրիարքին գահակալու-
թեան սկիզբը, որով ի դէպ է կարծել թէ գործը Յո-
վակիմ Քանաքեռցի պատրիարքին օրէն սկսած էր։
Յախճապակներէն մէկուն վրայ ՌՃԿԸ (= 1719) թուա-
կանը կը կարդացուի, զոր պէտք կ'ըլլայ յախճապակին
չինուելուն, և ոչ այս տեղ ագուցուելուն թուականը
ընդունիլ։ Յախճապակները գրուած են Կեսարացի Յով-
հաննէս Պաշպագիրկեանեան ամիրային ծախքով, և
Կուտինայի արհեստին ընտիր օրինակներն են։ Արհես-
տէն ճանչցողներուն աչքին մեծ յարգ ունին դասէն
դուրս երկու պատերուն վրայ՝ վերէն վար գրուած
մէկ մէկ շարք պատկերազարդ յախճապակները, որոնք
Քրիստոսի և Աստուածածնայ և Սրբոյն Կարապետի և
Ստեփանոսի և Գէորգի և Նոայի և այլոց գրուագ-
ները կը ներկայեն։ Դիտողութեան արժանի կը գըտ-
նենք հարաւակողման պատին ամենէն վարը գրուած
երեք եպիսկոպոսներու՝ պատկերը, առանց անուննե-
րու։ Հիւսիսային պատին վրայ կամարներուն ներքև
երեք մեծ պատկերներ կան, դուռին կողմը Տիրամօր
կեանքէն գրուագներ, մեծ դրան վրայ Աստուածած-
նայ փառաւորութիւնը, և դէպի արևմտեան դուռը
դատաստանի նշանակալից պատկեր մը։ Սեղանին պատ-
կերը կը ներկայացնէ Տրդատի մկրտութիւնը Լու-
սաւորչի ձեռօք, իտալական արուեստի արտադրու-
թիւն, ապակիի վրայ նկարուած, ինչպէս նաև շուր-
ջանակի Լուսաւորչի չարչարանքներուն մանր պատ-
կերները։ Այդ պատկերը հարկաւ կապակցութիւն ունի
էջմիածին անունին հետ, և կերպով մը կը մատնէ
Այնթապցիին ներքին մտադրութիւնը։ Արևմտեան
դուռնէն դուրս ՌԻԱ (= 1572) թուականով խաչքար
մըն ալ կայ, անհատական յիշատակի համար գրուած,

շինութեան պարագաներէն անկախաբար։ Եկեղեցիէն չելած նորէն յիշենք, թէ այս տեղէն կը բարձրացուի մայր տաճարին վերնատունը, 16 ոտք հանգիստ սանդուխով մը։ Իսկ վերնատունը 18 մէտր երկայնութիւն և 8 մէտր լայնութիւն ունի։ Հասարակ շինուած մըն է, որուն մէջ երկու փոքրիկ պատարագամատոյց սեղաններ կան, Քրիստոսի Պայծառակերպութեան և Վերջին Ընթրեաց անունով նուիրագործուած, և բաւական թուով հին պատկերներ այս տեղ թողուած են։

19. — Էջմիածին եկեղեցիէն մայր տաճար դառնալով, մեծ դրան աջակողմը պատկերներուն կարգին գտնուող փոքր ու բարձր դուռը կ'ելլանք՝ վեց ոտք շարժական սանդուխով։ Արտաքին սատափազարդ դուռէն ներս երկրորդ դուռ մըն ալ կայ, գեղեցիկ քանդակներով զարդարուած, որ հին արհեստի հազուագիւտ նմոյշ մը կը նկատուի, զի ՊԻ (= 1371) թուականը կը կրէ։ Տաճարին մայր պատին մէջէն բացուած 25 ոտք նեղ սանդուխով մը կը բարձրանանք դէպի վեր։

Ձախ կողմերնիս մեծ պատուհան մը կայ մայր տաճարին ներսը նայող և քովը ՌՃՂԷ (= 1748) թուականը կրող արձանագրութիւն մը։ Քիչ մը եւս յառաջելով կը մտնենք Ս. Պօղոսի մատուռը, ճիշդ ներքեւ Ս. Աստուածածին խորանին վրայ։ Տարածութիւնը մերձաւորաբար չորսական մէտր երկայն ու լայն։ Մատուռին մէջ նշանակութեան արժանի է ամբողջ յախճապակով պատած ըլլալը, մինչեւ իսկ կողակին վրայի կիսաբոլոր կամարը։ Երկու մէտր բացուածքով պատշգամբ մը կայ մայր տաճարին վրայ նայող և ճակատը պատարագամատոյց սեղան մը։ Մատուռին միւս կողմէն՝ 12 ոտք սանդուխով կը բարձրանանք աւագ

սեղանին ետեւը, և դարձեալ 12 ոտք սանդուխով կ՚իջնանք Ս. Պետրոսին մատուռը, Ս. Կարապետի խորանին վրայ, միւս մատուռին կատարելապէս յար և նըման, միայն լայնքէն քիչ մը պակաս, համաձայն թեւերուն լայնքին անհաւասարութեան, ինչպէս իւր կարգին բացատրեցինք։ Եւ դառնալու համար պէտք է եկած ճանապարհնիս մայր տաճարին մէջ իջնալ, ուսկից ուղիղ հանդիպակաց կողմը կ՚անցնինք, Ս. Ստեփանոսի մատուռը մտնելու համար։

20 — Ս. Ստեփանոսի մատուռը տաճարին աւանդատունն է, ամէն կողմ դարակներով լեցուն։ Տարածութիւնը մերձաւորաբար տասնական մեդր երկայն ու լայն է, և մէջտեղը երկու քառակուսի սիւներ՝ կամարներուն յենարանի կը ծառայեն։ Երեք պատարագամատոյց խորաններ կան, միջինը՝ Ս. Ստեփանոսի, աջակողմեանը՝ Ս. Լուսաւորչին և ձախակողմեանը Ս. Կիւրեղ Երուսաղէմացւոյ անունին։ Այս վերջինը Ս. Կիւրղի աւազան ալ կ՚ըսուի, զի սեղանին ներքև կը գտնուի աւազան մը, որուն մէջ Ս. Կիւրեղ Խաչի երևման օրը դարձի եկողները մկրտած է։ Մեդր մը տրամագիծով և երեք քառորդ մեդր խորութեամբ մարմարեայ կոնք մըն է, և չափահասները ընկղմամբ մկրտելու բաւական է։ Աւազանին մօտը պահուած է շղթայի կտոր մը, երկու ծայրերը մէյ մէկ՝ մէկը մեծ և մէկը պզտիկ խաչերով. իսկ աւանդութիւնը բան մը չէ հաստատած այդ շղթային նշանակութեան մասին։ Լուսաւորչի և Ստեփանոսի խորաններուն մէջտեղը սեղանի նման տեղ մըն ալ կայ Խաչելութեան և Յարութեան պատկերներով, որ ժամարարներու ըզգեստաւորման կը ծառայէ։ Հիւսիսակողմը կը գըտ-

նուի մկրտութեան աւազան մը, որ կը գործածուի ուխտաւորներու և բացառիկ պարագաներու համար, զի քաղաքացւոց մկրտութիւնները Ս. Հրեշտակապետի մէջ կը կատարուին: Հարաւ-արևմտեան անկիւնը յատուկ սանդուխով մը կը բարձրացուի գեղաքանդակ և ոսկեզօծ և ամպհովանաւորեալ ամպիոնը, զոր յիշեցինք մայր տաճարի հիւսիսային պատերը նկարագրած ատեննիս, և ըսինք ալ թէ այս տեղէն սովորաբար Յայսմաւուրք կը կարդացուի, և ինչ ինչ օրեր ալ Աւետարան, և քարոզ կը խօսուի: Արևելեան անկիւնէն անցք մը կը տանի իւղատուն, ուր եկեղեցիներու պէտք եղած ձէթը կը պահուի, և հիւսիսակողմէն փոքր դուռով մը կ'երթըցուի միաբանից թաղին կողմը: Պատերը յախճապակով պատած են մարդաչափէ աւելի բարձրութեամբ, իսկ խորաններուն մէջի կողմերը՝ մինչև վեր: Խաչկալները բաւական զարդարուն են: Ս. Ստեփանոսի մատուռէն չելած, յիշենք այս տեղ պահուած հին աւետարան մը, բարեպաշտներու և հիւանդներու յատկապէս ուխտի առարկայ եղած, և Ծակեն ելած անունով ճանչցուած, զի Յովակիմ Բանաքեացին պատրիարքութենէն առաջ Յոպպէի առջև ծովամոյն եղած և ընկղմելէ ազատած է աւետարանին հետ մէկտեղ: Աւետարանը ընտիր բոլորգիր և պատկերազարդ օրինակ մըն է, որուն վրայ յայտնի կը տեսնուին ջուր ինկած ըլլալուն հետևանքները: Գրուած է Սիս Քաղաքը ՉՁԱ. (= 1332) թուին, բայց գիրէն աւելի նշանաւոր է արծաթեայ ոսկեզօծ բարձրաքանդակ կողքը, որ ՉՁԳ (= 1334) թուականը կը կրէ, և հին արհեստի հազուագիւտ նմոյշ մըն է: Աւետարանը Երուսաղէմի վանքին նուիրուած է ՌԽԸ (= 1599) տարին:

21. — Ստեփանոսէն ելլելով և Որդւոց Որոտման Տեառնական պատկերին առջևէն անցնելով կը մտնուի Գլխադրի մատուռը։ Դրան հանդիպակաց սիւնին ներքեւը պզտիկ յաւելուած մը կայ, աթոռանման և յախճապակով պատած։ Աւանդութիւն է, թէ Տիրամայրը Յակոբ Տեառնեղբօր տան մէջ այստեղ նստած է եղեր, երբ Յակոբ Զեբեդեանի գլուխը իրեն բերուեր է, զոր քիչ մը անդին թաղել տուեր է, ուր է այժմ Գլխադրի մատուռը։ Մէկուկէս մէտր երկայնք ունի, երկու մէկ քառորդ լայնքի վրայ. սեղան մը կայ արեւելակողմը, որուն ներքև բաց է կիսաբոլորակ ձևով և մէտրուկէս տրամագիծով. մէջտեղը բոլորակ գունաւոր մարմարիոն մը, յատակէն աւելի ցած, գլխոյն թաղուած տեղը կը մատնանշէ, որուն չուրջը և սեղանին ներքև վեց մշտավառ կանթեղներ կախուած են։ Ամբողջը քանդակագործ ճերմակ մարմարէ է, իսկ մատուռին պատերը նոյնպէս քանդակագործ մարմարներ են, բայց երփներանգ գունաւորուած, իսկ վերևի մասը յախճապակով պատած է։ Մատուռին վըրան զարդարուն գմբէթ մը կը բարձրանայ, զոր յիշեցինք հիւսիսային պատին պատկերները թուելնուս ատեն, և դրան վրայ գեղաքանդակ և ոսկեզօծուած կէս մէտրի չափ դուրս ցցուած բարաւոր մը։

22. — Ներքին փոքր դուռէ մը կ'անցնուի երեք մէտր քառակուսի փոքրիկ գաւիթ մը, որ հաւասարապէս կը ծառայէ թէ՛ իբր Գլխադրի մատուռին արտաքին գաւիթ, և թէ Ս. Մինասի մատուռին մուտքի գաւիթ։ Այս կտորն ալ յախճապակով պատած է։ Հիւսիսային կողմէն դուռ մը կը տանի Ս. Մինասի անուամբ մատուռը, ուր կան քով քովի երկու պատ-

բազմատոյց սեղաններ՝ Ս. Մինաս Աղեքսանդրացիի եւ Ս. Սարգիս զօրավարի անուններուն նուիրեալ։ Զորս մէջը թեւերով քառակուսի մըն է ամբողջը, պատերը յախճապատ, երկու կողմերը յիշեալ սուրբերուն պատկերները՝ հեծելութեան և գլխատման դիրքերու մէջ, և մէջտեղերը Տիրամօր պատկերներ։ Այս մասին մէջ շարուած են ութսունի չափ վարդապետական կամ եպիսկոպոսական գաւազաններ, որոնք շատ հետաքրքրական գլուխներ ունին և կրնան լուրջ ուսումնասիրութեան նիւթ ընծայել։ Մատուռը հաւաքակութեան կը բացուի երկու սուրբերուն տօներուն և բացառիկ պարագաներուն։ Այս մատուռին յարակից է մայր տաճարին գանձատունը, կամ եկեղեցական սպասուց պահպանութեան աւանդատունը, զանազան բաժանմունքներով, պարունակութեանց տեսակին և արժէքին համեմատ։ Ս. Յակոբայ գանձատունը նշանաւոր է իր մեծահարուստ և բազմաթիւ զարդերով ու սպասներով։ Ասոնց շատը Պարոնտէր և Շղթայակիր պատրիարքներու ժամանակէն պատրաստուած, կամ հետզհետէ բարեպաշտներէն նուիրուած են, ինչպէս նաև պատրիարքներէ և միաբաններէ ալ թողուած են։ Այդ զգեստներն ու զարդերը ըստ տօնի և ըստ պարագայից կիրառութեան կը հանուին, բայց նշանաւորագոյն է Զատկին երկրորդ օրուան մեծահանդէս թափօրին ու անդաստանին առթիւ կատարուող ճոխ ցուցադրութիւնը։ Ամենուն յայտնի է, թէ գանձատան մուտքը միշտ վերապահեալ եղած է, և այնպէս ալ կը շարունակուի ցարդ։ Ս. Մինասի արտաքին դրան վրայ Աստուածածնայ պատկեր մը կայ, որին վարի անկիւնը նկարուած է Յովհաննէս Հաննա բազմերախտ եպիսկոպոսին և Շղթայակիրի գործակ-

ցին կենդանագիրը։ Անգամ մըն ալ յիշենք որ մատուռներուն դուռները արուեստակերտ և հարուստ փեղկեր ունին, սատափազարդ գործուածով և նուրբողաց յիշատակներով։

23.— Ս. Մինասի գաւիթէն ելլելով և Աստուածածնայ Գեղեցիկ պատկերին առջևէն անցնելով կը մտնենք Ս. Մակարի մատուռը, որուն արևելակողմը կայ պատարագամատոյց սեղան մը, և հիւսիսակողմը՝ Երուսաղէմի պատրիարք Ս. Մակարի գերեզմանը։ Տապակը երկերկու մէդր երկայն ու լայն է, գերեզմանաքարը ճերմակ մարմար է, և ՌՄ (= 1751) թուականը կը կրէ, և գերեզմանին վրայ կայ Մակարի մահուան հնօրեայ պատկեր մը ՌՃՁ (= 1731) թուականով։ Սոյն մատուռը Մակարէ զատ Լուսաւորչի պատուոյն ալ յատկացուած կը նկատուի, երբ զի նախապէս այստեղ կը պահուի եղեր Լուսաւորչի նշանաւոր մասունքը։ Այս մատուռն ալ յախճապակով պատած է, բոլոր պատերովը եւ կամարաձեւ առաստաղովը։ Մատուռին դուրսն է Գլխադիրի ատեանը, և անկիւնը պատրիարքի համար միայուն աթոռ մը դրուած է։ Այդ աթոռին քովէն նեղ դուռ մը, և երբ 30 ոտք նեղ ու փայտեայ սանդուխ մը կը տանի տաճարին հարաւակողմին վերի մատուռները, որոնց կ'երթըցուի վերնատունէն ալ կամրջակերպ անցքով մը։

24.— Առաջին մատուռը Ս. Նշանի կը կոչուի, երբ զի այստեղ կը պահուէր երբեմն Խաչափայտի մեծ մասունքը, որ արուեստակերտ եւ մեծագին պատուանդանով ճաճանչաձեւ մասնատուփ մը ունի։ Իսկ կենաց փայտին կտորը գրեթէ ութը հարիւրորդամէդր

երկայն և մէկ հարիւրորդամէտր լայն կտոր մըն է, կողմնակի երկու մանր մասերով խաչ ձևացած։ Այդ Խաչափայտի մասունքը ստացուեր է հին ժամանակներ յոյն պատրիարքէ մը, որ խալամութեան յարեր է եղեր և մասունքը վաճառեր է եղեր հայ պատրիարքին։ Մատուռը իբր մէտր մը լայնք և մէկուքառորդ մէտր երկայնք ունի, շուրջանակի յախճապակով պատած. յատակը աւագ խորանի բեմին պէս երփներանգ մարմարներով արուեստագործուած։ Պատարագամատոյց սեղանին վրայ դեռ կը մնայ Խաչափայտին պահպանութեան տապանակը, այժմ դատարկ։ Մատուռին երեսը բաց է մայր տաճարին վրայ, և արդէն ըսինք որ արուեստակերտ և ոսկեզօծ պատշգամբ մը կայ այստեղ։ Ս. Նշանի մատուռէն դուրս բացօդեայ պըղտիկ բակ մը կայ, որուն վրայ կը բացուի Ս. Առաքելոց մատուռը, կոկիկ փոքրիկ եկեղեցի մը 25 քառակուսի մէտր տարածութեամբ, ուր կը պահուին Ճըղթայակիրի և Կոլոտի ուսուցիչ եղող Բաղիշեցի Վարդան վարդապետի պատկերը, նոյնպէս Դաւիթի յաղթանակին իւղաներկ մը, և ուրիշ հին կենդանագիր մը՝ անունը չնշանակուած, բայց իբր Ճղթայակիրի կենդանագիր ընդունուած։ Ս. Առաքելոց բակին քովը և քիչ մը բարձր երկրորդ փոքրիկ բակ մըն ալ կայ, որուն վրայ կը բացուի Համբարձման մատուռը, երկայնքը մէկուքառորդ, իսկ լայնքը երեքուկէս մէտր, պատարագամատոյց սեղանով մը, որ յատուկ առաւելութիւն մը չի ներկայեր։ Ս. Նշանի մատուռը տանող նեղ սանդուխէն ետ դառնալով կ'իջնենք մայր տաճարը, և Գլխադիրի կողմին փոքր դուռնէն դուրս ելլելով աւարտած կ'ըլլանք մայր տաճարին նկարագրութիւնը, զոր քիչ մը աւելի մանրամասնեցինք, զի

*Ս. Յակոբեանց տաճարը հայ ուխտաւորներու եւ հեռաւոր ազգայիններու բարեպաշտական հետաքրքրութեան գլխաւոր առարկայն եղած է։*

---




# ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ

25. — *Մայր տաճարէն ելլելով և գաւիթէն ու բակէն անցնելով կ՚ուղղուինք միւս կողման անկիւնը, ուսկից* 35 *ոտք սանդուխ մը մեզ կը բարձրացնէ եւ կը տանի դէպի պատրիարքարան, զոր պատշաճ կը գտնենք մայր տաճարէն անմիջապէս ետքը մեր նկարագիրին նիւթ ընել։ Այս սանդուխը առաջ դժուարին դիրք մը ունի եղեր, նախ սաստիկ բարձրանալով, և յետոյ ցածնալով,* Ս. Մինասի *կոչուած թաղը իջնալու համար։ Յովհաննէս պատրիարք, որ Ս. Մինասու թաղին ետեւը հոյակապ պատրիարքարանը կառուցած է, զանց ըրեր է այդ դժուարին մուտքը հարթել, զոր վերջէն կատարեր է Եսայի պատրիարք* 1873*ին, ելևէջը ջնջելով և հանգիստ սանդուխ մը կազմելով։ Թաղին* Ս. Մինաս *անունը տեղական կամ պատմական բացատրութիւն մը չունի. մի՛ գուցէ Մինաս Ամդեցի պատրիարքը կառուցած և այդ անունը տուած ըլլայ։ Զորսուկէս մէտրի լայնութեան վրայ* 23,5 *մէտր երկարութեամբ սրահ մըն է այժմեանը, բայց հինը* 5 *մէտր ևս աւելի երկար է եղեր, որչափ ինչ Յովհան-*

նէս պատրիարք բաժնիր է պատրիարքարանի մուտքը կազմելու համար։ Նախկին թաղի սենեակները ցած դուռներով են եղած, և Յովհաննէս պատրիարքէ ետքը բարձրացուեր են. սրահին վրան ալ բաց է եղեր, և 1893ին Յարութիւն պատրիարքի օրով ծածկուեր է՝ երկու կողմերու պատերն ալ բարձրացուելով և նոր պատուհաններ զետեղուելով։ Առաջի ժամանակներ այդ թաղի սենեակները յատկացուեր են պատրիարքին խորհրդականներուն, իսկ այժմ ընդհանրապէս պաշտօնական գրասենեակներ են՝ դիւանատուն, հաշուակալութիւն, արկղակալութիւն և ելեմտից տեսչութիւն։ Տրամադրելի սենեակներ գտնուած ատեն, երիցագոյններէ ոմանց բնակութեան ալ կը տրուին։ Սանդուխէն ելած ատենդ, աջ կողմին անկիւնը տանիք ելլալու սանդուխ մը կայ 22 ոտք բարձրութեամբ։ Թաղին աջակողմը չորս սենեակներ կան, միջինը կրկնակ մեծութեամբ, և չորսէն զատ երկուք ալ պատրիարքարանին կցուած են ներքին դուռով։ Իսկ ձախակողմը կան ջրամբար մը և Արեղաթաղ տանող անցքը։ Առաջին դուռը նոր բացուած է 1907ին, որով մեծ բակին վրայ եղող ծուռ սանդուխի բնակարանը այս թաղին խառնուած է։ Անոր կը յաջորդեն չորս ուրիշ սենեակներ, այժմ պաշտօնատուներ։

26. — Թաղին ճակատը կը գտնուի պատրիարքարանի մեծ և փառաւոր դուռը, որուն վրայի արձանագրութիւնը կը յայտնէ թէ պատրիարքարանը կառուցուած է 1853ին, Զմիւռնիացի Յովհաննէս պատրիարքի ձեռքով, և մենք կրնանք աւելցնել թէ կառուցանողին ճաշակին եւ մեծագործութեան արտայայտութիւնն է այդ հոյակապ շինուածքը, որ նման-

ներու հետ լրուամբ կրնայ մրցիլ։ Երկու ոտք սանդուխով կը մտցուի արտաքին սրահակը, որ երկուքի բաժնուած է, չորս ոտք սանդուխով, բովանդակը 10,5 մէդր երկայն է եւ 4,5 մէդր լայնութեամբ, մարմարեայ յատակով, պղնձեայ վանդակներով եւ ճաշակաւոր շինուածով։ Մտնողին ձախակողմը երկու սենեակներ կը գտնուին, պատրիարքարանի սպասաւորաց յատկացուած, որոնք կը պահեն տակաւին Ս. Մինասի թաղին նախնական դուռներուն ցած դիրքը։ Պատերուն վրայ կախուած են Զիթենեաց Լերան վրայ ռուսական վանքին մէջ գտնուած հայկական մոզայիքներուն, եւ Դամասկոսի դուռնէն դուրս գտնուած եւ վերջերս Քելեկեան Տիգրան խանի նուիրատուութեամբ վանքի սեփականութիւն եղած մոզայիքին ճիշդ գըծագրութիւնները։ Անցողաբար յիշենք, թէ Զիթենեաց Լերան մոզայիքները թէպէտ իբրեւ Պանդավանքի մնացորդներ յիշուած են գծագրութեանց ներքեւ, սակայն հաւանականագոյն կ'երեւայ իբր Նորավանքի մընացորդներ ճանչնալ, որ մերձ էր Եսայի մարգարէի գերեզմանին, եւ որուն յիշատակը կայ մոզայիքի արձանագրութեանց մէջ։ Միւս մասին մէջ կը յիշուի ԴԻՐ ՀԱՆԳՍՏԵԱՆ ԵՐԱՆԵԼԻՈՅՆ ՇՈՒՇԱՆԿԱՆ ՄԱՒՐՆ ԱՐՏԱՒԱՆԱՅ, եւ յատուկ քարերու վրայ կը կարդացուին ՇՈՒՇԱՆ եւ ՋՈՋԻԿ եւ ՄԱՐԻՆ անունները։ Այս արձանագրութիւններ միացունելով Շուշանիկի տրուած Երանելի պատուանունի հետ, հետազօտողներու միտքերը կը տանի՝ Մեծին Վարդանի դստեր Շուշանիկի եւ անոր պաշտպան աներձագին(*) Ջոջիկի յիշատակարան

(*) Հանգուցեալ Դուրեան Սրբազան սրբագրած է՝ տագերոջ։ Ծ. Հ.

մը տեսնել այդ մնացորդներու մէջ, Արտաւանի ձեռքով կառուցուած, որ պէտք է ըլլայ՝ պատմութեանց մէջ առանց անունի յիշուած Տուշանիկի զաւակը։ Զիթենեաց Լերան վրայ ուրիշ մօզայիքի կտոր մըն ալ յայտնուած է ՏԵԱՌՆ ՅԱԿՈԲԱՅ անունով, որուն գըծագրութիւնը առնուած չէ տակաւին։ Իսկ Դամասկոսի դուռէն դուրս գտնուող մօզայիքը, վկաներու բազմութեան յիշատակարան մը եղած կը տեսնուի։ Այսչափ ինչ անցողակի դիտելէ ետքը մտնենք պատրիարքարանի դահլիճը։

27. — Ընդարձակ և փառաւոր սրահ մըն է այս դահլիճը, իրաւամբ Վեհարան կոչուելու արժանաւոր, որ ամէն այցելուներու հիացման առարկայ դարձած է։ Երկայնութիւնը 21 մէդր և լայնութիւնը 7,5 մէդր, 158 մէդր քառակուսի տարածութիւն ունի, և բարձր կամարակապ և գմբեթայարկ շինուած մըն է. յատակը մարմարեայ սալարկուած, և պատերը վայելուչ գծագրուած։ Յովհաննէս պատրիարք ո՛չ միայն մեծ ծախքերու այլև մեծամեծ ճիգերու ենթարկուած է այս շինութեան համար, կի այս շէնքին ուզուած ընդարձակութիւնը տալու համար պարտաւորուած է հասարակաց փողոցին վրայէն անցնիլ, և դէպի վանքին պարտէզը երկարել, և այդ նպատակով փողոցին վրայ հաստատկառոյց կամար մը շինել։ Այդ պարագայն մեծածախ զոհողութիւններէ զատ՝ ճարտարահնար դարձուածներու ալ պատճառ եղած է, որոնց մէջէն յաջողութեամբ ելած ըլլալը՝ հետևանք է շինարար պատրիարքին ազդեցիկ դիրքին և հնարիմաց մտքին։ Դահլիճը ընտիր գորգերով կը զարդարուի ըստ պիտոյից, և վայելուչ կարասիներ ալ ունի։ Դահլիճը

կը գործածուի իբր նշանաւոր և պաշտօնական անձանց ընդունելութեան սրահ, և միանգամայն իբր միաբանական ժողովներու և ընդհանուր համախմբութիւններու պաշտօնատեղի։ Դահլիճին մէջ կը գտնուին երեք ապակեփեղկ դարաններ՝ յախճապակեայ արուեստակերտ և հնօրեայ նմոյշներ պարունակող։ Պատերը զարդարուած են կենդանագիրներով և նկարներով, որոնք մեծաւ մասամբ յիշատակի նուէրներ են, ինչպէս Աւստրիոյ Ֆրանց Յօզէֆ կայսեր և կայսրուհւոյն պատկերները՝ անձամբ այցելութենէն տարի մը առաջ ղրկուած, Անգլիոյ Վիքթորիա թագուհւոյն և ամուսնոյն և զաւակին կենդանագիրները՝ Եթովպիոյ պատուիրակութեան առթիւ նուիրուած, Գերմանիոյ Վիլհէլմ Ա. կայսեր և կայսրուհւոյն կենդանագիրները՝ արքայազուններու այցելութեան առթիւ ընծայուած. վերջնոյս ժառանգներուն Ֆրէտէրիք և այժմեան Վիլհէլմ կայսրերուն պատկերներն ալ իրենց ստորագրութեամբ յիշատակ թողուած են. Ռուսիոյ Աղեքսանդր Գ. կայսեր և կայսրուհւոյն պատկերները նմանապէս արքայազանց այցելութեան առթիւ տրուած են. Նոյնպէս ուրիշ արքայական և պետական անձանց պատկերներ ալ։ Աթոռին պատրիարքներէն պատկեր ունին Յովհաննէս և Եսայի և Յարութիւն. Նշանաւոր ազգայիններէն՝ Աբրահամ Երամեան և Յակոբ Գազազեան փաշաներ և Գաբրիէլ Նորատունկեան էֆէնտի և Լազարեան ազգատոհմէ շատեր։ Նշանաւոր եկեղեցականներէն՝ Յակոբոս Սերոբեան պատրիարք և Սահակ Գաղատացի միաբան վարդապետ, ինչպէս նաև Մկըրտիչ Խրիմեան և Մատթէոս Իզմիրլեան ապագայ կաթողիկոսներ, Երուսաղէմի մէջ աքսորական մնացած ատեննին լուսանկարուած։ Իսկ արժէքաւոր նկարնե-

րէն բաւական ըլլայ յիշել Յովհաննէս Այվազովսքիի Թէոդոսիա քաղաքին ծովանկարը։ Եթէ ներեալ է դիտողութիւն մը աւելցնել, այդ ամէն գնահատելի առարկաները ըստ բերման զետեղուած են, առանց կանոնաւոր չափադասութեան։

28. — Դահլիճին երկու կողմերը կը գտնուին պատրիարքի բնակութեան յատկացեալ սենեակները։ Հիւսիսակողմը իբր ամառնային օթարան՝ ունի նստելու մեծ սենեակ մը, 8,80×5,80 թեւերով, որ է 51 մէգր քառակուսի տարածութիւն, և անոր քովը ննջելու սենեակ մը աւելի փոքր։ Երկուքն ալ կամարակապ առաստաղով, մեծ պատուհաններով, օդասուն և հանգստաւէտ սենեակներ, բոլոր պէտք եղած կարասիներով և պատշաճ զարդերով։ Մեծ սենեակէն կը մտցուի այն երկու սենեակները, որոնք Ս. Մինաս թաղէն պատրիարքարանի կցուած յիշեցինք, եւ որք իբր մատենադարան և գրութեանց պահարան կը ծառայեն։ Հանդիպակաց հարաւային կողմը միակ սենեակ մը կայ ձմեռնային բնակութեան համար, 6,80× 5,80 թեւերով, եւ 40 մէգր քառակուսի տարածութեամբ և միւս սենեակներէ աւելի համեստ հանդերձանօք։ Պատուհանները երկու կողմերէն ալ վանքին առջեւէն անցնող փողոցին վրայ կը նային։ Դարձեալ դահլիճին հարաւային կողմը, գաւ դուռով կը մըտցուի յարկաբաժին մը, որուն մէջ կը գտնուին ճաշասենեակը առատ եւ ընտիր սպասներով ճոխացած եւ լուացարանի ու կարեաց մասերը։ Այստեղէն 27 ոտք սանդուխով կ'իջնուի գետնայարկը, ուր կը գտնուին կոկիկ բաղնիք մը, բաւական խոհանոց մը, պարտիզպանի և խոհարարի սենեակներ, պարտէզի պիտոյից

տեղ մը, և մէկ կողմէն պատրիարքարանի պարտէզը մտնելու և միւս կողմէն արտաքին փողոցը ելլելու դուռներ։ Պտտած տեղերնէս և դահլիճէն դուրս ելնելով, սրահակին անկիւնէն կեղծ դուռով մը կը մտցուի պատրիարքարանի յատուկ մառանը։ Կեղծ դուռին քովէն հինգ ոտք սանդուխով կ'երթուի ուրիշ մեծ սենեակ մը, 10,50×7,50 թևերով և 79 քառակուսի մէդր տարածութեամբ, ճիշդ հարաւակողման օթարանին ետևը, որուն հետ երբեմն հաղորդակցութիւն ալ ունի եղեր, և Յովհաննէս պատրիարքի ձմեռնային բնակութեան կը ծառայէ եղեր, սակայն այժմ յատկացուած է Տնօրէն ժողովի նիստերուն։ Շինութիւնը բարձրադիտակ և օդասուն է պատրիարքարանին միւս սենեակներուն նման, որուն ամբողջացուցիչ մասը կը կազմէ։ Այստեղ ալ կենդանագիրներ, հնութիւններ և թանգարանի նիւթեր ըստ բերման ամփոփուած կը մնան. այստեղ են նաև հին եւ պաշտօնական գրութեանց դարանները։ Այդ մեծ սենեակէն դուրս ելած ատեն կը տեսնուի տանիքներ ելլալու դուռ մը, զի վանքին ընդարձակ և լաւ սալարկեալ տանիքները բոլոր վանականներուն օդ առնելու և շրջագայելու սովորական տեղերն են։ Այսչափով կը փակենք պատրիարքարանի նկարագիրը։

———

# ՑԱՆԿ







# ՄԻԱԲԱՆԱԿԱՆ ԹԱՂԵՐ

29. — Պատրիարքի բնակութեան բաժինը նկարագրելնէս ետքը, կարգը կը պահանջէ Միաբանութեան յատկացեալ բնակարաններու պտոյտն ընել։ Բայց կը կանխենք յայտարարել՝ թէ ոչ ևս, հոյակապ շինութեանց նկարագիրներն պիտի կարենանք յառաջ բերել, ինչպէս էին մայր տաճարն ու պատրիարքարանը, այլ պիտի գոհանանք նեղ ու անձուկ տեղեր մտնելով, որոնք եթէ ակնապարար չքեղութեան տըպաւորութիւնը չեն ազդեր, անոր տեղ պատկառելի հնութեան և նախնեաց հոգեւէր համեստութեան գաղափարները կը զարթուցանեն։ Ժամանակին սենեակ բառն իսկ չէր գործածուեր վանքերու մէջ, և կրօնաւորներու բնակարանները խուց և խցիկ անունով կը կոչուէին, զի մարմինը խցելու և հոն խցուած մնալու տեղ մը բաւական կը սեպուէր կրօնաւորին։ Մեր սենեակ ըսածները, որչափ և ինչ ինչ փոփոխութիւններով տարբերուած, սակայն հիմնապէս հին խուցերն ու խցիկներն ըլլալէ չեն դադարած։ Միաբանական թաղերը մայր տաճարին արեւմտեան և հիւսիսային կողմերը կը գրաւեն, իսկ միւս երկու կողմերը շէնքերու հետ անմիջական կապ չունին, և զատուած շէնքերն ալ ուխտաւորներուն յատկացուածներն են։ Միաբանական բնակարաններուն կարգին, Աբեղաքաղ կոչուած մաս մը կայ, սակայն անիկա միաբանական բնակարաններու ամբողջութիւնը չէ, այլ այդպէս կո-

ջուած է այն մասը, որ մայր տաճարին արեւմտեան կողմին հանդիպակաց է, և զոր կառուցած կամ լաւ ևս յարդարած և ընդարձակած է Եղիազար պատրիարք ՌՃԺԲ (= 1663) թուին, և այդ անունը տուած է իւր վերանորոգած մասին։

30. — Նախնի ժամանակներ, այսինքն Յովհաննէս պատրիարքի հոյակապ պատրիարքարանը չկառուցուած, պատրիարքները այդ շրջանակին մէջ կը բնակին եղեր, և քանի մը տեղեր փոփոխելէ ետքը, վերջին անգամ կը բնակին եղեր այն սենեակները, որոնք պատրիարքէն ետքը տրուեր են Նախապատիւ միաբան Կարնեցի Դաւիթ եպիսկոպոսի, և անկէ ետքը Կ. Պոլսոյ Նախորդ պատրիարք Յակոբոս Սերոբեանին, որ նոյն տեղ ալ արկածով այրած է 1862 Նոյեմբեր 6ին։ Անկէ ետքը հոն անցած է Բաբերդցի Իսահակ եպիսկոպոս, որ պաշտօնանկ լուսարարապետ Մարսուանցի Կարապետ եպիսկոպոսի յաջորդելով 1870ին՝ կը շարունակէ նոյն տեղ մնալ, և այս կերպով յիշեալ յարկաբաժինը հաստատապէս լուսարարապետներու կը յատկանայ և կը մնայ։ Դիրքն ալ յարմար կուգայ այդ յատկացման, զի եկեղեցւոյ գաւիթէն փոքր սանդուխով մը վեր կ'ելլուի, և գաւիթին ու բակին վրայ պատուհաններ եկեղեցւոյ հսկողութիւնը կը դիւրացընեն։ Սենեակները գլխաւորապէս երեք են, որոց մեծագոյնը 9 և 4 մէտր թեւերով, 36 քառակուսի մէտր տարածութիւն ունի այժմ։ Արձանագրութիւն մը կը յայտնէ թէ Նիկոմիդացի Գաբրիէլ պատրիարք, ՌՄՀ (= 1821) թուին, կամար առաստաղը փայտակերտ պատել և ներկել և բոլոր սենեակները մաքուր ծեփել է տուեր։ Այդ արձանագրութեան մէջ վեհարան

է կոչուած։ Գաբրիէլի նորոգութենէն ետքն ալ մնացեր է յատակին անհաւասարութիւնը և սրահին բաժանումը, որոնք վերցուեր են 1889ին, Վեհապետեան Յարութիւն պատրիարքի օրով։ Այս առթիւ խափանուեր է եւս խորանաձև պատկերն ալ, որուն առջեւին պատրիարքները Եկեսցէ ժամ կը կատարեն եղեր։ Մեծ սրահին յարակից երկու սենեակները չափաւոր խուցեր են։ Յարկաբաժինը կը պարունակէ նաև մուտք մը, փոքրաւորի սենեակ մը, խոհանոց մը, աւելորդներու տեղ մը, և տանիք բարձրանալու սանդուխով՝ անցք մը։ Եկեղեցւոյ դաւիթէն եկող սանդուխին գըլուխը կը գտնուի մտից դուռ մը, որ առաջ երկրորդական է եղեր, բայց հիմա աւելի գործածականն է, թէպէտ հասարակ ու պզտիկ դուռ մըն է, և յարմարութիւններէ ալ զուրկ է։ Առաջին պատրիարքներէն ետքը լուսարարապետներն ալ աշխատած են յարկաբաժինին ներքինը բարուոքել, բայց բոլոր բարուոքումներով ալ՝ գոհացուցիչ բնակարան մը ըլլալու պիտի չհասնի, զի անարև և օդազուրկ դիրքովը առողջապահական պահանջներու չի համապատասխաներ։ Սոյն յարկաբաժինին ներքևը, դաւիթէն ելլող սանդուխին սկիզբը, անկախ դուռով սենեակ մը կայ, երկու փոքրիկ յարակիցներով, որ ժամանակին լուսարարապետներուն յատուկ է եղեր, երբ վերը պատրիարքներ կը բնակէին եղեր, իսկ այժմ միաբան վարդապետի մը բընակութեան կը ծառայէ։ Եկեղեցւոյ բակին վրայ չորս մանր և գետնայարկ սենեակներ ալ կան, որոնք իրենց դիրքին յարմարութեամբ լուսարարին և անոր օգնականին և եկեղեցւոյ ծառայող միաբաններուն կը յատկացուին։

31. — Լուսարարապետի յարկաբաժինը վերեւ յիշուած մուտքէն վար ուրիշ դուռ մըն ալ ունի, ուսկից ելլելով կը գտնուինք Աբեղաթաղի վերին յարկին վրայ, փոքր ու բաց բակի մը մէջ, որուն վրայ կը բացուին հինգ խուցեր կամ խցիկներ։ Աբեղաթաղի վերնայարկէն դէպի ներս չյառաջացած, այլ թեւի վրայ եղող նեղ սանդուխէն կ'իջնանք ներքին յարկին նեղ բակը, ուսկից սանդուխ մը եւս կ'իջեցնէ եկեղեցւոյ բակին հիւսիս-արեւմտեան անկիւնը, եւ այս է Աբեղաթաղ ելնելու սովորական սանդուխը։ Աբեղաթաղի միջնայարկին մէջ եւ սանդուխին գլուխը առանձինն խուց մը կայ, ճիշդ վերեւ յիշուած՝ լուսարարապետներու նախկին սենեակին ետեւը եւ բակին հիւսիսակողմը։ Յիշուելու արժանի է այս սենեակին արեւելեան պատին ամբողջութեան վրայ նկարուած պատկերը, գեղեցիկ պարտէզի մը եւ հովանոցներու տեսարանով, որ Է-ՄԻՆ-ՄԻՆ (ՌՄԽԷ = 1798) թուական կը կրէ, եւ 1905ին նորոգուած է։ Բակին հիւսիսակողմը՝ ներքին բակի մը վրայ՝ ուրիշ չորս խցիկներ կը բացուին։ Իսկ դէպի հարաւ, հազիւ մէտր մը նրբանցքին վրայ, կը բացուին երեք խուցեր եւ խցիկներ, որք կը կազմեն Աբեղաթաղի միջնայարկին կէսը, զի միւս կէսին մուտքը հակառակ կողմէն է տրուած, վանքին աւագ դրան կամարին պատճառով։

32. — Իջած սանդուխներնէս վեր ելնելով նորէն, կը գտնուինք բուն Աբեղաթաղին գլուխը, ուր նախ ծածքի ներքեւ երկու խցիկներ կը բացուին, եւ անոնցմէ ետքը կը մտցուի մէտր մը լայն նրբանցք մը, որուն երկու կողմերը կը բացուին Աբեղաթաղի խուցերուն դուռները, հինգ արեւելակողմէն եւ վեց արե-

մատակողմէն։ Այդ շինութեան համար գրուած է Անթապցի Եղիազարին արձանագրութիւնը եկեղեցւոյ բակին արեւմտեան պատին վրայ։ Առաջին տեսութեամբ այնպէս կ'ըմբռնուի, թէ ամբողջ այդ մասը ի հիմանց Եղիազարէ կառուցուած ըլլայ, բայց մենք զննելով գետնայարկին եւ միջնայարկին շինուածն ու ոճը ու բաժանումները, այն եզրակացութեան կը յանգինք, թէ անոնք լոկապէս կը տարբերին վերնայարկէն, եւ թէ հնար չէր որ Անթապցին ի նորոյ այսպիսի ծամածուռ մասեր կառուցանէր։ Հետեւաբար Եղիազարեան շինութիւնը միայն վերնայարկն եղած կ'ըլլայ, հին մասերուն վրայ աւելցած, արտաքին պատերուն յարդարումով մէկտեղ։ Եղիազարեան վերնայարկը որչափ ալ միջնայարկէն աւելի ձեւաւոր, սակայն միշտ հնօրեայ ոճով նեղ խուցեր ունի, փոքր դուռով եւ փոքրագոյն պատուհանով, ցած առաստաղով եւ հազիւ 6–8 քառակուսի մէտր տարածութեամբ։ Խուցերէն քանի մը հատին պատուհանները խոշորցուած, յատակները լիցուած, եւ ուրիշ փոփոխութիւններ ունեցած են վերջերս՝ հոն բնակողներուն ձեռքով, բայց միշտ նեղ եւ անձուկ բնակարաններ մնացած են։

33. — Նորանցքին միւս գլուխն ալ փոքր եւ բաց բակ մը կայ, որուն վրայ կը բացուի 7×4,50 մէտր թեւերով եւ 31 քառակուսի մէտր տարածութեամբ սենեակ մը, որ միանգամայն պատմական յիշատակարան մըն է։ Այդ սենեակը կառուցած է Գրիգոր Շղթայակիրը իւր հոգեհարազատին՝ Յովհաննէս Կոլոտի յիշատակին, զոր հրաւիրեր էր անգամ մըն ալ Երուսաղէմ այցելել, եւ նախապէս տեսած ու ողբացած կացութենէ ետքը, իւր իսկ հովանաւորութեամբ կառա-

րուած բարւոքումները տեսնել և հրճուիլ, այլ նպատակը չէր իրագործուած՝ Կոլոտի վաղահաս մահուամբը 1741 Փետրուար 13ին։ Սենեակին շինութիւնը տեղի ունեցած է ՌՃՂԲ (= 1743) Յունիսին, ինչպէս գըրուած ու բացատրուած է դրան վրայ դրուած արձանագրութեան մէջ։ Սենեակին ներքինը զարդարուած է այժմ երեք կարգ իմաստալից վերտառութիւններով, առաջին երկուքը միատեղ են՝ սենեակին չուրջը, եւ ներքեւինը, քառանկիւնի շրջագիծերով զատուած մասերու մէջ է։ Հնագոյն վերտառութիւնը ՄԱՌԻԷ (ՌՄԻԸ = 1779) թուականը և Հնդկաց Նուիրակ Կիպրացի Սարգիս ծայրագոյն վարդապետի անունը կը պարունակէ, իսկ Նորագոյնը ՊՌԻ (ՌՊԻ = 1820) թուական ունի։ Բոլորը 1871ին նորոգուած է Տիարպէքիրցի Յակոբ եպիսկոպոսի կողմէն, և վերջերս 1906ին նոր նորոգութիւն մ'ալ եղած է։ Չենք գիտեր թէ Շըղթայակիրի շինութենէն առաջ ո՞վ եղած է սենեկիս առաջին բնակողը, միայն յայտնի է թէ վանքին մէջ ամենէն պատուաւոր սենեակը նկատուած է, հոգևոր հիւրերու և տեղապահներու ու փոխանորդներու վերապահուած սենեակ մը եղած է։ Այստեղ բնակած և 1853 Մայիս 4ին վախճանած է Ագրիանուպոլսեցի Պօղոս ծայրագոյն կառավարիչը, և վերջին ատեններ Յարութիւն Վեհապետեան և Երեմիա Տէր Սահակեան արքեպիսկոպոսներն ալ իրենց տեղապահութեան տարիներուն մէջ այս սենեակը բնակած են, ուր այժմիկ կը մնայ Միաբանութեան երիցագոյն անդամ ծերունազարդ Վանեցի Եղիա ծ. վարդապետը։ Մեծ սենեակին յարակից ներքին սենեակ մըն ալ կայ, և դուրսըն ալ փոքրիկ բակին վրայ ուրիշ երկու խուցեր ալ կան։

34. — Այդ փոքր բակէն վար իջնելով, կը գըտնենք նախապէս նկարագրուած միջնայարկին մընացորդ մասը, որուն մէջ կայ ընդարձակ սենեակ մը, Սրբեղաթաղին ամբողջ լայնքին վրայ, և երկու կողմը պատուհաններով, որ ի հնումն Վէքիլարան կոչուեր է, վէքիլ կոչուող յարաբերութեանց պաշտօնեայ վարդապետին յատկացուած ըլլալուն համար։ Մեծ սենեակին փոքր սենեակ մըն ալ միացուած է վերջերս, իսկ դուրսը կան խուց մը և խցիկ մը, եւ սուրճ եփելու կրակատեղը, այժմ խափանեալ։ Սանդուխէն նորէն վերնայարկի բակը ելլելով, և դէպի արևելք յառաջելով ունինք պատրիարքարան տանող կամրջակերպ անցքը, ուսկից ետքը կը գտնուին նախ երկու խուցեր, որոնց մէկն է Դրախտ կոչուածը, պատերուն վերևը չուրջանակի բարձրաքանդակ և նկարեալ պտուղներ չինուած ըլլալուն համար։ Ասոնց մօտ կան երկու խցիկներ, և աւելի հեռու երկու կողմերը մէկ մէկ խուց ևս, և ծայրը կարեաց տեղերը։ Վրան բաց նրբանցքով մը կը մտցուի Ս. Մինասի թաղի վարի ծայրը, ուր է պատրիարքարանի մեծ սանդուխը։ Քանի մը ոտք իջնելով, ձախ թևի վրայ եղող դուռը թարգմանատան վերի մուտքն է. մուտքէն ներս հանդիպակաց սենեակը թարգմանին անձնականն է, և նեղ սանդուխով կ'իջնուի պաշտօնական սրահը, որ 1908ին ընդարձակուած և հիւրեր ու այցելուներ ընդունելու յարմարագոյն ձևի վերածուած է. իսկ թարգմանատան պաշտօնական մուտքը վարի կողմէն է, այն վոց անցքին մէջէն, զոր յիշեցինք վանքին աւագ դուռը նկարագրած ատեննիս։ Այս անցքէն հինգ ոտք սանդուխով և արտաքին սրահակով մը կը մտցուի պաշտօնական սրահը։ Պաշտօնական մուտքէն դուրս

*Ելնելով կը դառնանք վերոյիշեալ գոց անցքին մէջ, որուն վրայ կը գտնուին չորս խուցեր պահակներու յատկացուած, և վանքին աւագ դուռէն անդին անցքին ծայրն է դռնապանի սենեակը։ Այս անցքէն ալ մասնաւոր սանդուխ մը Աբեղաթաղ կը հանէ։*

35. — *Լուսարարապետութենէն մինչև թարգմանատուն միաբանական բնակարաններու շրջան մը ըրինք, և յիշեցինք* 47 *խուցեր և խցիկներ, որոնք՝ համարձակ խօսելու համար, զուրկ են գոհացուցիչ բնակարաններ ըլլալու անհրաժեշտ պայմաններէն, նոյն իսկ օդի և արևի պահանջներէն։ Լրացած դարուն վերջին կէսին մէջ քանի քանի շինութիւններ կատարուած են Ս. Յակոբեանց վանքին մէջը եւ դուրսը, այլ միտքէ վրիպած է եկեղեցական միաբաններուն, եպիսկոպոսներէն մինչև սարկաւագները, անհրաժեշտ պահանջներու պայմանին չափով սենեակներ պատրաստել։ Ըստ ինքեան շատ չեն վանական կեանքին հրապոյրները, և կրնանք աւելցնել, թէ աւելի ալ նուազ են Երուսաղէմի վանքին մէջ, Սուրբ Տեղեաց տաժանելի սպասարկութիւններովը և ապագայի անձուկ շրջանակովը. հետևաբար բնակութեան գոհացուցիչ պայմաններուն խնդրանքը տարօրինակ պահանջ մը չի կազմեր։ Մեր այս դիտողութիւնը կը ներկայենք ամէն անոնց, որոնք՝ թէ՛ նիւթական և թէ բարոյական տեսակէտէն, Հայկական Երուսաղէմով կը հետաքրքրուին(*)։*

(*) 1926 *տարիէն սկսեալ Միաբանութիւնը փոխադրուած է* Պաղչէ-թաղ *կամ* Նոր-թաղ *կոչուած յարկարաժնի ընդարձակ և առողջապահիկ սենեակները, որոնց մէջ կարևոր նորոգութիւններ և փոփոխութիւններ եղած են։ Իսկ հին* Աբեղաթաղը *յատկացուած է ուսուցիչներու բնակութեան։ Ծ. Հ.*

36. — Միաբանական բնակարաններու պտոյտով հասած էինք աւազ դրան քովի անցքին վրայ, ուսկից նորէն մայր տաճարին բակը մտնելով և չեղակի եկեղեցւոյ գաւիթին հիւսիս-արևելեան անկիւնը երթալով, լուսարարապետին յարկաբաժինը հանող սանդուխին քովէն կը մտնենք մութ անցքեր, որոնց վրայ երկու կողմէն կան քանի մը գետնայարկ նկուղներ, զանազան իրեր պահելու, ձախակողմը երկար նկուղ մը, որ երբեմն ծառայեր է վարդեջուր քամելու։ Ասոր հանդիպակաց կողմը կայ բնակելի ընդարձակ գետնայարկ մը, որ սպասաւորներու իբր ննջարան կը ծառայէ։ Ասոնց առջևէն անցնելով կը հանդիպինք Ս. Ստեփաննոսի մատուռին, կամ մայր տաճարին աւանդատան հիւսիսային փոքր դուռը, և ուղիղ կը մտնենք աղօրիքին առջևի բակը, սովորաբար Տէյիրմէն բաղ կոչուած ոչ շատ ընդարձակ բակ մը։ Բակին անունը առնուած է անոր ներսի կողմը գտնուող աղօրիքէն, որ ժամանակ մը անգործածական մնալէ ետքը, այժմ բոլորովին քանդուած է, և ինչ ինչ մնացորդներ միայն կը գտնուին լքուած ընդարձակ գետնայարկի մը մէջ։ Բակին մէջ կը գտնուին եօթը խուցեր գետնայարկին վրայ, և հինգ՝ վերնայարկին մէջ, և երկուք ալ՝ Ս. Թէոդորոսի եկեղեցւոյն համար նոր բացուած անցքին վրայ։ Ասոնք ժամանակին իբր պատուաւոր խուցեր կը նկատուէին եղեր, և այժմ աշխատաւոր միաբաններու թողուած են։ Աղօրիքի բակին միւս կողմն ալ երկու գետնայարկ նկուղներ կան, որոնց մէջ մթերուած են փորագրուած եւ քանդակուած մարմարներու մնացորդներ և հին պղնձեղէններ։ Կ'արժէր որ ասոնք անգամ մը զննուէին, գուցէ արժէքաւոր հնութիւններ ալ գտնուէին անտես մնացած։

37. — Աղօրիքի բակէն ետ դառնալով, Ս. Ստեփանոսի փոքր դուռի դիմացէն կ'ուղղուինք դէպի Մոմատան բակը, անկանոն ձեւով բակ մը։ Վարը կը տեսնենք չորս խուցեր, որոնցմէ մին երկու բաժինով։ Սանդուխով կը բարձրանանք բուն մոմատունը, որ կը կազմուի առջեւէն բաց եւ վրայէն ծածկուած մասէ մը, եւ չորս ներքին խուցերէ, որոնց մէջ կը պահուին մոմեղէնի նիւթեր, թափելու գործիքներ, և պատրաստ մոմեր, իսկ արտաքին մասը կը ծառայէ մոմ թափելու գործողութեանց։ Անոր մօտ յատուկ սենեակ մը յատկացուած է նշխար և մաս պատրաստելու։ Ընդարձակագոյն սենեակ մըն ալ հանդերձատուն է, հնաւանդ առումով Զուհալխանէ կոչուած, ուր յատուկ դարաններու մէջ կը պահուին կարուելիք նիւթեր, պատրաստ հանդերձներ՝ թէ՛ ներքին և թէ արտաքին, գործածուած հագնելիքներ, գուլպաներ, կօշիկներ, եւս եւ սուրճ ու շաքար ու օճառ, պայմանեալ կարգով եւ ժամանակով միաբաններու բաշխուելու համար։ Հանդերձատունին ներսը կան երկու պզտիկ բաժիններ, եւ երկու խուցեր ալ հանդերձատունէն դուրս՝ նոյն անցքին վրայ։ Սրբեղաթաղի կողմը գտնուող բնակարաններուն վրայ ըրած ակնարկնիս, այս տեղ ալ կրկնել պարտաւորութիւն կը զգանք։

38. — Մոմատունէն յատուկ սանդուխով մը կը բարձրացուի դէպի տանիքները, որոնց վրայ ալ բնակութեան տեղեր աւելցուած են հետզհետէ։ Անմիջապէս սանդուխին դիմաց կայ ընդարձակ սենեակ մը, ճիշդ մոմատունի չորս սենեակներուն վրայ, որ երբեմն իբր հիւանդանոց ծառայած է միաբաններուն, իսկ վերջին օրերը նորոգուելով և յարդարուելով ժա-

ռանգաւորացի շրջանաւարտ ուրարակիրներու ննջարան յատկացուեցաւ։ Աստր ալ կից կը գտնուի միաբանի խուց մը. իսկ խուցին հանդէպ, Ս. Թէոդորոսի տանիքին վրայ, Եսայի պատրիարք թեթեւ շինութեամբ լուսանկարչատուն մը պատրաստած էր իրեն, որ յետոյ աւելի հաստատ շինութեամբ Մամբրէ եպիսկոպոսին նկարչատունն եղաւ, իսկ վերջին օրեր նորոգուելով վերոյիշեալ ուսանողներուն դասարան տրուեցաւ։ Ասոնց ննջարանին առջեւէն ետ դառնալով և տանիքներու վրայ յառաջելով, ձախակողմը ունինք երկու բնակութեան սենեակներ, մին զոյգ խուցերով և մոմատունին բակը նայող, եւ միւսը անոր դիմացը, 1898ին շինուած թեթեւ ոճով, իսկ դէպ առաջ քալած ատեննիս դիմացնիս կ'ելլեն երկու եւս նոր շինուած խուցեր, և անոնց հանդէպ նոյնպէս նորաշէն երեք խցիկներ։ Այստեղ կայ ընդարձակ սրահ մըն ալ, 14×5 մէդր թեւերով, որ է ըսել 70 քառակուսի մէդր տարածութեամբ։ Առջեւն ունի մուտքի անցք մը, և քովը անջատ խուց մը, իսկ սրահին ներսը Որդւոց Որոտման պատկեր մը նկարուած է. ամբողջ շինութիւնը կը գտնուի ճիշդ սեղանատան վրայ։ Շատ հին ատեններ այս սրահը պատրիարքներու բնակարան եղեր է, բայց բաւական ժամանակէ ի վեր գործածուած է եւ դեռ կը գործածուի իբր դարպասատուն, այսինքն ուխտաւորներու դարպասական նուէրները ընդունելու պաշտօնատուն(*)։ Քովէն յատուկ սանդուխ ալ կայ դիւրութեամբ վար իջնելու, և յարմա-

(*) Դարպասատունը այժմ առանձին յարկաբաժին մը ձեւացած է՝ բարձրաստիճան հոգեւորականներու բնակութեան յատկացուած։ Ծ. Հ.

*րութիւններ ունի վանքին ամէն կողմերու հետ յարաբերութիւններ պահելու։*

39. — *Աքեղաթաղի կողմը նկարագրած ատեննիս 45 խուց և խցիկ յիշեցինք, 35 ալ եղան Աղօրիքի եւ Մոմատունի թաղերուն եւ տանիքներուն խուցերը, համագումար 80 անձերու բաւական, որ մինչև 90 ալ կրնայ հանիլ՝ զոյգերն ու ընդարձակները հաշուի անցընելով։ Բայց շատ պիտի նուազէր այդ թիւը, եթէ ուզէինք անյարմարներն ու անբաւականներն թուարկութենէ զեղչել։ Սուրբ Տեղեաց լիճը, եղածով գոհանալու յանձնառութիւնը եւ ժամանակով ստացուած ունակութիւնը մասամբ թեթեւցուցած են Ս. Յակոբեանց վանականներուն, թէ՛ եկեղեցականներուն եւ թէ աշխատաւորներուն, այդ կողմէ կրած դժուարութիւնները։ Բայց այս չ'արգիլեր, որ միաբանական բնակութեանց խնդիրը առաջնակային խըստապահանջ կէտերէն մին չնկատուի։*

---



## ՍՆՆԴԵԱՆ ԲԱԺԻՆՆԵՐ

40. — *Վերը յիշեցինք դարպասատունին քովէն իջնող սանդուխ մը, ուսկից մենք ալ իջնելով կը գտնուինք փոքր բակի մը մէջ, որուն վրայ կը բացուին սնունդի պէտքերուն ծառայող բաժինները, ո-*

րոնք միւս կողմէն անմիջական կապակցութեան մէջ են Աբեղաթաղի և անոր յարակից բնակարաններուն հետ։ Այդ բաժինները նկարագրելու սկսած ատեննիս, առաջին անգամ կը գտնանք ձախերնիս՝ դէպ արեւմուտք, եւ դէմերնիս գտնուող դուռէն կը մտնենք վանքին կամարակապ սեղանատունը։ Երկար սրահ մըն է հիւսիսէ հարաւ 25 մէդր երկայնութեամբ եւ 4,75 լայնութեամբ, որ կուտայ 119 քառակուսի մէդր տարածութիւն մը։ Արեւմտակողմէն երկայնութեան վրայ կան քանի մը փոքր պատուհաններ, որոնցմով կը բաւականանան եղեր երբեմն, իսկ վերջին ատեններ երկու ծայրերը մէյմէկ մեծ պատուհաններ բացուած են, որով աւելի լուսաւորուած է սեղանատունը։ Սեղանատան արդի կազմակերպութիւնը կատարած է Շղթայակիրը ՌՃՂ (= 1741) տարին, իսկ ՌՄԿ (= 1811) թուին Թէոդորոս Վանեցին յախճապակով պատած է վերին մասին պատերը, որ ոտք մը բարձր է սրահին մնացեալ մասէն, և հոն զետեղուած են պատրիարքին և երիցագոյն միաբաններուն սեղանները։ Պատրիարքի յատկացեալ սեղանը կը գրաւէ սրահին ճակատը, 1,25×0,75 տարածութեամբ մարմարեայ հաստակառոյց սեղան մը, վերի մասէն ալ ոտք մը եւս բարձր զետեղուած։ Սեղանատան երկայնքին դէմ դիմաց շարուած են երկու կարգ սեղաններ, իւրաքանչիւրը 5 հոգւոյ բաւական, տեղերու յարմարութիւնն ալ նկատի առնելով։ Վերի կողմի չորս սեղանները մարմարեայ են, իսկ վարի կողմի եօթները փայտեայ։ Արեւմտակողմը սեղանի մը տեղը սպասարկութեան պիտոյից յատկացուած է։ Մարմարեայ սեղաններ լայն ու հաստակառոյց են, իսկ փայտեաները 0,50 մէդր լայնութեամբ ընկուզենիներ էին,

որոնք այժմ 0,70 լայնութեան վերածուած են հասարակ փայտի յաւելուածով, բայց սպիտակ մոմշորով ծածկուած են, մինչ մարմարեաները սփռոց չունին։ Բոլոր նստարանները փայտեայ են, և նեղ բարձով ծածկուած։ Ժամանակին գործածական եղող հողէ կուժերն ու ըմպանակները այժմ ապակեայ շիշերով և գաւաթներով փոխանակուած են. Նոյնպէս պնակներն ալ փոխուած են։ Իսկ ուտելու սպասը, այսինքն ղենջակ ու դգալ ու դանակ ու պատառաքաղ, վարի սեղանները եղողները իրենց մօտ կը պահեն, և միասին կը բերեն ու կը տանին, մինչ վերի սեղաններունը տեղւոյն վրայ կը պահուին։

41. — Սեղանատունին մէջ ինչ ինչ հետաքրքրական բաներ ալ կան զորս աւելորդ չենք գտներ նկարագրելու մէջ յիշատակել։ Մուտքի դրան դուրսի կողմէն կը բարձրացուի փոքր վերնատուն մը, ուսկից կը կարդացուի վանօրէից սովորական եղող ընթերցումը՝ հասարակութեան ճաշած ատենը։ Ընթերցողները ուրարաւորներն են. իսկ ընթերցանութեան գիրք ընդհանրապէս Աստուածաշունչն է, եւ երբեմն ալ ուրիշ գիրքեր։ Այդ վերնատունին և պատրիարքի սեղանին միջեւ եղող կամարին պատը ծածկուած է եղեր ընթրեաց մեծ պատկերով մը, որ հնութենէն փճացեր և վերցուեր է, և անոր տեղը Աստուածածնայ կիսաբոլորակ պատկեր մը դրուած է։ Այդ պատկերին դիմաց՝ կամարէն կախուած կանթեղ մը կայ, որ կիրակամուտներուն կը վառուի ի յիշատակ ննջեցելոց Միաբանութեան։ Կանթեղը կը վառուի նաև, երբոր յատուկ պատարագներու առթիւ սեղանատան մէջ հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի Միաբանութեամբ։

ճակատի պատուհանին վրայ կը գտնուի ուրիշ կիսաբոլորակ պզտիկ պատկեր մը, որուն մէջտեղը նկարուած է Ս. Յակոբեանց տաճարին նմանութիւնը, եւ երկու կողմերը վեց լուսարարապետներ, որոնց հնագոյնն է Պետրոս Եւդոկիացին, յետոյ պատրիարք, վախճանեալ 1800ին։ Սեղանատան երկայնքին արեւմտեան պատին վրայ կը ցուցուի փոքրիկ դուռ մը, ուսկից գաղտնի անցք մը կայ եղեր, և Եղիազար Այնթապցին ալ անկէ խոյս տուեր է 1656ին խնդրակներու ձեռք չիյնալու համար։ Այդ դուռնէն քիչ մը անդին, դէպ հարաւ, կը ցուցուի պատուհան մըն ալ, որուն առջև կը բարձրանայ եղեր հին ատեններ ծառակերպ ցախ մը, քաղաքին մէջ նշանաւոր դարձած, մինչև իսկ անոր անունով Ս. Յակոբեանց վանքը Զայըլը մանաստըր կոչուեր է երբեմն։ Կերակուրի ատեններուն և չափերուն և ուրիշ պարագաներուն վրայ այս տեղ զանց կ'ընենք խօսիլ, և կը պահենք Նկարագիրիս բարոյական մասին։

42. — Սեղանատունէն դուրս ելլելով, քիչ յառաջելէ ետքը դարձեալ ձախերնիս դառնալով, դէպ հիւսիս կը գտնենք խոհանոցը, 18 մէդր երկարութեամբ և մաս մը 5՝ մաս մը 8 մէդր լայնութեամբ տեղ մը, խոհանոցի պէտք եղած յարակիցները պարունակող։ Վառարանները այժմ երկաթեայ են, իսկ գլխաւոր կաթսաները մէդր մը տրամագիծով բազմամեայ աշխատած պղնձեղէններ են որոնք դըրուելու և վերցուելու համար յատուկ վերելակներ ունին։ Աւելորդ կը սեպենք աւելցնել թէ խոհանոցը մանր պղնձեղէններ ալ ունի առձեռն պէտքերու համար։ Խոհանոցի կազմութիւնը և իւր անօթներուն վի-

ճակը տակաւին շատ բան կը պահէ իր հնօրեայ վիճակէն, ինչ որ կը դժուարացնէ խստապահանջ մաքրութեան իրականացումը։ Խոհանոցէն ներսէ ներս երկու խուցեր ալ կան, որոց առաջինը յատկացուած է գործածական պղնձեղէններու պահպանութեան, եւ ետեւինը՝ սոխատուն անունով՝ կը ծառայէ իբր շտեմարան սոխի, սխտորի, եւ ուրիշ պահծու բուսականներու։ Խոհանոցին մէջէն դուռ մը կ'անցնուի վանքին փուռը, որուն այս վերջին օրեր դուրսի կողմէն ազատ դուռ մըն ալ աւելցուեցաւ։ Մայրավանքին եւ փոքր վանքերուն հացը մինչեւ չորս տարի առաջ հոս կը պատրաստուէր, վանքի հաշուոյն, վանքին կողմէն եւ միաբաններու աշխատութեամբ։ Աւելի առաջ, այսինքն իբր 40 տարի առաջ, ուղղակի ցորեն կը գնուի եղեր եւ զայն հացի փոխարկելու բոլոր աշխատութիւնները, ցորենը մաքրելէ եւ աղալէ սկսելով, վանքի մէջ կը կատարուին եղեր։ Յայտնի է թէ հին ատեններ քաղաքի տուներն իսկ հացերնին իրենք կը պատրաստէին, որուն այժմ հազիւ թէ յիշատակը մնացած է քաղաքներու մէջ։ Վանքն ալ, իբր առաջին փոփոխութիւն, յարմարագոյն գտեր է պատրաստ ալիւր գնել, իսկ վերջին տարիներու մէջ հացն ալ պատրաստ գնել սկսած է(*)։ Խոհանոցին մէջէն 25 ոտք սանդուխով մը կ'իջնուի ներքին նկուղները, ընդարձակ եւ զանազան մասերու բաժնուած տեղեր, որոնցմէ ոմանք կը գործածուին փայտ եւ ածուխ եւ հանքածուխ պահելու. ուրիշի մը մէջ կը մթերուի քարիւղը. շատեր այժմ լքեալ եւ դատարկ ու անխնամ

---

(*) Այժմ դարձեալ վանքի փուռին մէջ կը պատրաստուի հացը։ Ծ. Հ.

մնացած են։ Ասոնց կարգին են, Աղօրիքի թաղը պատած ատեննիս յիշուած՝ վարդեջուր հանելու տեղը, և աւելի անդին՝ բանուած քարերու բեկորներ և անգործածական պղինձներ պարունակող նկուղները, և լքեալ աղօրիքին տեղը։ Յատուկ բաժին մըն ալ կայ Գինետուն կոչուած, ուր ժամանակին գինի և օղի կը պատրաստուէր և կը պահուէր եղեր Միաբանութեան համար, այլ այժմիկ այս սովորութիւնը դադարած է։ Փայտանոցէն ուղղակի դուռ մը կայ փողոց հանող, կէս կամարին ներքևը, եւ կը ծառայէ պահուելիք նիւթերը դիւրաւ ներս առնելու։

43. — Խոհանոցէն ելած ատեննիս դիմացնիս եղող դուռը՝ Մառանն է, որուն մէջ կը պահուին նպարեղէնի և ընդեղէնի վերաբերող նիւթեր, զոր օրինակ՝ բրինձ, ձաւար, կորկոտ, ոսպ, լուբիա, սիսեռ և ուրիշ առձեռն բաներ։ Այս տեղ են նաև ձէթի մեծ կարասներ, եւ խղլի ու չուչմայի ամաններ։ Աղածոյ նպարները ուրիշ տեղ պիտի տեսնանք, իսկ սուրճ ու շաքար ու օճառ՝ հանդերձատան մէջ տեսանք։ Այդ բաշխումը հետեւանք է տեղերու յարմարութեան եւ նիւթերը անեղծ պահելու պահանջքին։ Մառանէն ելնելով խոհանոցին դիմացը յատուկ տեղ մը կայ Մսատուն անունով կոչուած, վասնզի այստեղ կը պահուին եւ կը ջարդուին ուտուելիք միսերը։ Սակայն միսը Մսատունին կէսը միայն կը գրաւէ, եւ միւս կէսը կը ծառայէ լեբ պանիրի, ձիթապտուղի եւ ուրիշ աղածոյներու մառան։ Մսատունին քովի սանդուխին միւս կողմն է Տնտեսատուն կոչուածը, որ է սենեակ մը երկու կողմերը բազմոցներով, յատակն ալ յախճապակով սալարկուած, որ կը ծառայէ մայրապետներուն,

երր, կերակուրներու տեսակին համեմատ, աւելի կամ պակաս թուով կուգան խոհանոցի պատրաստութեանց օգնելու, զոր օրինակ բանջարեղէն սակելու, ընդեղէն զտելու, լիցք պատրաստելու, խճողակ ոլորելու, և ուրիշ նմանօրինակ երկար աշխատութիւններ կատարելու։

Այդ զանազան մասերուն մէջտեղերը երեք խուցեր ևս կան, որոնք երբեմն կը գործածուէին իբր պաշտօնէից բնակարան, այլ այժմ ուրիշ մասնաւոր կիրառութեանց յատկացուած են։ Խոհանոցի և յարակից մասերու համար ըլլուելիք գիտողութիւնները ալ նախընթացներու նման է, թէ կարեւոր փոփոխութեանց պէտք կայ մաքրութեան և առողջապահութեան այժմեան պահանջներուն համաձայնեցնելու համար։ Կենցաղական պայմանները շատ մեծ փոփոխութիւններ կրած են վերջին տարուան մէջ. ինչ որ առաջին ժամանակներ իբր գոհացուցիչ կ'ընդունուէր, այժմ այլեւս նոյն ընդունելութիւնը չի գտներ, եւ հին հաստատութիւններ իրենց ներքին յարդարումները փոփոխելու և բարւոքելու ետեւէ են։ Աղքատին տունն իսկ իւր կազմաւորութիւնը փոփոխել սկսած է։



# ԳՐԵՆԱԿԱՆ ԲԱԺԻՆՆԵՐ

44. — *Նկարագիրիս ընթացքին մէջ կը բաղձայինք պարզ տեղագրական ուղղութեամբ յառաջել, և մէկ մասէն միւսը անցնիլ կանոնաւոր պտոյտի մը ծրագիրով, բայց շինութեանց պատահական կազմակերպութիւնը կը պարտաւորցնէ մեզ աւելի կիրառութեանց նմանութեան հետևիլ, և տարակայ մասերն ալ քովէքով բացատրել, նման նիւթերը իրարու հետ խմբելով։ Մայր տաճարն ու պատրիարքարանը ինքնուրոյն մասեր էին. բնակութեան բաժինները իրարու յարակցեցինք. սննդեան բաժինները իրարմէ շատ տարակայ չէին, իսկ գրական բաժինները անջատ կտորներ են, բայց պատշաճ կը սեպենք միացնելով ներկայել։ Ըստ այսմ մտադրութեան առնուելիք մասերը չորս կ'ըլլան. Գրչագիրներու մատենադարանը, Տպագիրներու երկու մատենադարանները եւ Տպարանը։ Այժմեան գրչագրաց մատենադարանը, 1897 թըւականին զետեղուած և կարգադրուած է Ս. Թէոդորոսի անուան նուիրուած եկեղեցւոյն մէջ, ուստի պէտք է նախապէս զայն իբր եկեղեցի նկատել, իբր մատենադարան մեր ըսելիքներէն առաջ։*

45. — *Ս. Թէոդորոս եկեղեցին մայր տաճարէն բոլորովին անջատ է, անոր հիւսիս-արևելեան կողմը, և ուխտաւորաց թաղերուն մօտ։ Ի՛նչ առիթով եւ ի՛նչ նպատակով Ս. Յակոբայ շրջափակին մէջ եր-*

կրօրդ եկեղեցի մըն ալ շինուած ըլլալը պատմութիւնը ստոյգ արձանագրութեամբ մեզի չէ հասուցած, բայց տեղական աւանդութիւն է, թէ այդ եկեղեցին շինուած ըլլայ Հեթում Առաջին թագաւորին կողմէ, իւր որդւոյն Թորոսի յիշատակին, որ սպաննուեցաւ Մառիի ճակատամարտին մէջ 1266ին, Եգիպտացւոց դէմ պատերազմելով։ Արդ՝ Հեթումի մահը տեղի ունեցաւ 1270ին, և միջանկեալ չորս տարիներու մէջ պատմութիւնը չի յիշեր Հեթումի Երուսաղէմ եկած ըլլալը, թէպէտ 1268ին Ապաղա խանի տեսութեան համար Միջագետք գնացած ըլլալը կը պատմէ։ Այդ դիտողութիւնը կ'ընենք, վասնզի մինչեւ ցայսօր Ս. Թէոդորոսի եկեղեցւոյն մօտերը սենեակ մըն ալ կը ցուցուի իբր Հեթումի բնակավայր եղած։ Պատմութիւնը կը յիշէ Հեթումի 1258ին Սիւրիոյ Տրիպոլիս քաղաքը գալը, ու 1259ին Միջագետք Հուլաւունի խանի այցելութեան երթալը, բայց Երուսաղէմ ալ եկած ըլլալուն խօսքը չ'ընէր, թէպէտ բոլորովին անտեղի չէր ըլլար ըսել, թէ այդ ուղեւորութեանց ժամանակ Ս. Տեղեաց ուխտագնացութիւն մ'ալ կատարած ըլլայ։ Ամէն առիթի մէջ մէկ կողմ թողլով Հեթումի անունը, կրնանք Ս. Թէոդորոսի շինութիւնը վերագրել Թորոսի եղբօր Լեւոնի, որուն համար յայտնապէս գրուած է, թէ երբ Մառիի պատերազմէն ետքը Եգիպտոս գերի կը տարուէր, փափաքեցաւ եւ արտօնուեցաւ Երուսաղէմի ուխտագնացութիւնը կատարել։ Հաննա պատմագիրն ալ այդ կարծիքին կը հետեւի, երբ կը գրէ, (երես 110), թէ եկեղեցիս է շինեցեալ ի Լեւոնի թագաւորէն մերմէ ի ՊԼԵ. թուին Հայոց, յորժամ Թորոս որդին իւր մեռաւ, աւս քաղելով զնա։ Բայց պէտք է որդին ուղղել և եղբայր ըսել, զի Թորոս Հեթումի

*որդին էր, և թուականն ալ, ուրիշ տեղ գրածիս համեմատ, ԻՃԼԵ = ՉԼԵ (= 1286) կարդալ, ինչոր Ս. Յակոբի ձախակողմեան եանի սիւնին վրայ ալ կը կարդացուի (եր. 20)։ Բայց այս առթին Ս. Թէոդորոսի եկեղեցւոյն շինութիւնը անագան կատարուած կ'ըլլայ, Լևոնի թագաւորութեան վերջին տարիները, որ* 1270 *ին թագաւորեց և* 1289 *ին վախճանեցաւ։ Ըստ այսմ Ս. Թէոդորոս եկեղեցին, թէ ոչ Թորոսի հօրը, գէթ Թորոսի եղբօրը ձեռօք շինուած Հեթումեան հիմնարկութիւն ըլլալուն աւանդական յիշատակը կ'արդարանայ։ Իսկ Թորոսի գերեզմանին այստեղ ըլլալուն նշան մը մնացած չէ, և հաւանական ալ չենք գտներ անոր մարմինին Մառիի պատերազմի դաշտէն մինչև Երուսաղէմ բերուած ըլլալը։*

46. — *Եկեղեցին* 9 *մէդր լայնութեան վրայ,* 13,5 *մէդր աւեանի և* 4,5 *մէդր բեմի, բովանդակ* 18 *մէդր երկայնութիւն ունի պատշաճ բարձրութեամբ և հաստակառոյց շինուածով, որուն տանիքը Ս. Յակոբայ շրջափակին մէջ ամենաբարձր գլուխ ունեցող ճեմելիքն է։ Առաջին Հեթումեան շինութիւնը ինչ կերպարան ունէր չենք գիտեր, զի այժմեանը Ծղթայակիրին կատարած նորոգութեան և տուած կերպարանին արդիւնքն է։ Պատերը երկու մարդաչափ բարձրութեամբ ընտիր յախճապակով պատած են, իսկ բեմի մասը բովանդակ, մինչև իսկ սանդուխներուն ոտքերը, յախճապակով զգեցուած են շնորհիւ Ծղթայակիրին և աշխատութեամբ Եղիա վարդապետի, որ* Ծեփարար *մականուամբ ծանօթ է, անշուշտ իւր արհեստէն առնելով։ Հիւսիսային պատին կամարներուն մէջերը երկու համաչափ պատկերներով զգեցուած են,*

մին Ցիսուսի և միւսը Տիրամօր կեանքէն դրուագներով, իսկ ցրիւ բուսական թուով պատկերներ կան միւս որմերուն վրայ։ Մտադրութեան արժանի է աւագ սեղանին Տիրամօր պատկերը, որ ընտիր արուեստի արտադրութիւն մըն է։ Խաչկալը քանդակազարդ եւ ոսկեզօծ է, և սեղանին ճակատը կը ծածկէ երեք կամարաձև բացուածքներով, իսկ արհեստով և երեւոյթով յարևնման է մայր տաճարի ճակատի խաչկալին և ուրիշ մասերու խաչկալներուն։ Շղթայակիրը ճարտար և հանճարեղ և բազմաչխատ վարպետներ ունեցած պիտի ըլլայ իր ձեռքին ներքև, ամէն կողմեր և սեղաններ, մինչև իսկ Ասորւոց Ս. Մարկոս եկեղեցին, փայտի ընտիր քանդակներով ճոխացնելու համար։ Եկեղեցիին յատակը հասարակ քարով սալարկուած է, և երկաթեայ վանդակ մը դասը ատեանէն կը բաժնէ։

47. — Ս. Թէոդորոս եկեղեցիին աջակողմը, բեմին քովէն, հինգ ոտք սանդուխով կը բարձրացուի Ս. Կարապետի մատուռը, որ եկեղեցւոյն աւանդատունն է, ինչպէս Ս. Ստեփանոսի մատուռը՝ մայր տաճարին։ Երկայնութիւնը 9, իսկ լայնութիւնը 4 մէդր է, ցած կամարով ծածկուած. բայց ամէն կողմը, նոյն իսկ կամարակապ առաստաղը, ընտիր յախճապակով պատած, սիրուն եւ գողտրիկ մատուռ մը կը ներկայացնէ։ Եկեղեցիին ձախակողմն ալ բեմին վրայէն եւ չորս ոտք սանդուխով կը մտցուի փոքրիկ մատուռ մը, իբր 2 մէդր երկայն, և ընդհանրապէս մէդր մը, իսկ սեղանի կողմը՝ քիչ աւելի լայն։ Այս ալ յախճապակներով ծածկուած է ամէն կողմ եւ մատուռը նուիրուած է Ս. Մերկեռիոսի անուան։ Դիտելու արժանի

է պատարագամատոյց սեղանին վրայի պատկերին կողմիակի զետեղուած ըլլալը, որպէսզի միւս մասին մէջ փոքրիկ լուսամուտ բանալու կերպը գտնուի։ Ս. Թէոդորոսի, Ս. Կարապետի և Ս. Մերկեռիոսի պատարագամատոյց սեղաններէն զատ չորրորդ մըն ալ կայ, եկեղեցիին դուռնէն դուրս, 4 քառակուսի մէդր տարածութեամբ բակին վրայ, Ս. Թադէոսի և Ս. Սանդըխտոյ նուիրուած։ Փոքրիկ սեղանը բարձր դիրքի վրայ է, այնպէս որ կիրառութեան ատեն հարկ եղած պիտի ըլլայ ոտքին ներքև բարձր պատուանդան մը կազմել։

Այս բակն ալ յախճապակներով պատած է, սակայն իբրև լքեալ տեղ մը, տեսակ տեսակ ընտիր եւ սովորական յախճապատ աղիւսներու աւելորդները խառն կերպով իրարու մօտ զետեղուած են։ Սակայն կ'արժէր որ առաջին Լուսաւորչին պատուոյն՝ ընտրելագոյն տեղ մը սահմանուած ըլլար։ Ս. Ցակոբեանց շրջափակը 40ի չափ պատարագամատոյց սեղաններուն մէջ նախկին Լուսաւորչաց համար արժանավայել տեղ մը տրուած չէ, ինչ որ հետևանք է անշուշտ Երևանեցի Սիմէոն կաթողիկոսէ առաջ տիրող տօնացուցական ըմբռնմանց։ Ս. Թէոդորոս եկեղեցին առաջները իբր յատուկ ուխտավայր նկատուած էր, եւ առանձինն տեսուչ ալ ունէր, իսկ այժմ մատենադարանի վերածուելէն ետքը, հաստատուն կերպով պատարագ կը մատուցուի մեծ պահոց առաջին շաբաթ օրը Ս. Թէոդորոսի տօնին, իսկ պատահաբար՝ երբոր յատուկ խնդրանք մը կամ պէտքի պարագայ մը տեղի ունենայ։ Սոյն այս եկեղեցին կը յատկացուի նորոգ ձեռնադրուած աբեղաներուն քառասունքը անցընելու, մօտիկ սենեակները բնակելով, և հոգևորական պաշ-

տամունքը եկեղեցւոյս մէջ կատարելով։ Այսչափ ինչ Ս. Թէոդորոսի մասին, պարզապէս իբր եկեղեցի նըկատուած ատեն, իսկ եկեղեցիներու և մատուռներու մասին ըսուելիքները լրացնելու համար, յիշենք Հոգւոյն Սրբոյ Նուիրեալ մատուռը, տանիքին վրայ, Ս. Թէոդորոսի մօտը, և ներքին պատուհանով անոր մէջը նայող. ընդամէնն իբր 12 քառակուսի մէդր տարածութեամբ, սովորական շինուածքով և պատարագամատոյց սեղանով մատուռ մը։

48. — Եկեղեցին մատենադարանի վերածելու միտքը կը պատկանի Վեհապետեան Յարութիւն պատրիարքին, որ մեր տեսութեամբ ալ գովելի միտք մը եղած է, թանկագին գրչագիրները խոնաւութենէ եւ ցեցակերութենէ ազատելու եւ վայելուչ կերպով ցուցադրելու համար։ Պատարագամատոյց սեղաններ և մատուռներ բաւականէն ալ աւելի կան Ս. Յակոբայ շրջափակին մէջ. արդէն ալ առողջ ուսման նպատակը չի հակառակիր եկեղեցւոյն, մանաւանդ որ սեղանին մեծ վարագոյրն ալ մշտնջենապէս գոց կը պահուի։ Յարութիւն պատրիարք 1897ին ձեռնարկած է պէտք եղած կարգադրութեանց, իւր անձնական ծախքով գեղեցիկ դարաններ շինել տալով եւ շուրջանակի յախճապատ որմերուն առջև զետեղելով, և անոնց առջեւն ալ երկաթեայ վանդակով պատուած անցք մը կազմելով, որպէսզի դիւրին չըլլայ եկեղեցական պաշտամանց կամ ուրիշ առիթներով ներս մտնողներուն՝ գրադարաններուն մօտենալ։ Դարանները 16 հատ են, 7ը հիւսիսակողման պատին առջև, 5ը արևմտեան ճակատը, և 4ը հարաւակողմը զետեղուած, զի եկեղեցւոյ մուտքը հարաւակողմէն է, քանի որ արևմըտ-

եան դուռը բոլորովին խափանուած է։ Ուրիշ երկու դարաններ ալ կան զանազան պահեստի առարկաներ և պաշտօնավարութեան պիտոյքներ դնելու համար։ Մէջտեղն ալ աշխատասիրողներու և հետազօտողներու համար ընդարձակ գրասեղան մը դրուած է։ Գըրադարանները երկու մասով են, վարի մասը աւելի լայն և վերը աւելի նեղ, ինչպէս են սովորական գըրադարանները։ Գրչագիրները դարաններու մէջ շարուած են հատորներուն հասակին համեմատ, այնպէս որ վարի մասերէն երկուքը միակ բաժինով կամ միադարակ են, մնացածները երկադարակ. իսկ վերի մասերը երեքէն մինչև եօթը բաժանումներ կամ դարակներ ունին, զանազան մեծութեամբ գիրքերը զետեղելու յարմարութեամբ։ Հատորները կոկիկ կերպով ալ կազմուած են, թէպէտ հին ոճով։ Բոլորը մէկտեղ առնուած՝ գեղեցիկ դասաւորութիւն կը ներկայեն։

49. — Գրչագիրները առաջին անգամ Տիգրան Սաւալանեան վարժապետին եւ գրապետին ձեռօք ցուցակագրուած են 1865-67 տարիներուն մէջ, եւ դասաւորուած են Նախկին մատենադարանին մէջ, որ այժմ տպագիրներու յատկացուած է։ Սաւալանեան Ցուցակին թուահամարը կը հասնի մինչեւ 1742, եւ թիւերը իւրաքանչիւր հատորին վրայ յստակ կերպով գրուած են։ Սակայն այժմեան թուահամարը կը հասնի մինչև 2720, մէջն ըլլալով նաև 114 գրչագիրներ, որոնք իրենց արծաթապատ կողքերուն կամ բարեպաշտական նշանակութիւններուն համար Ս. Մինասի գանձատան մէջ կը պահուին։ Գիրքերուն շատնալը մասամբ հետևանք է՝ մատենադարանին մէջ առանց ցուցակագրուելու ժողվուուած և պատրիարքարանի

ու խորհրդարանի և գանձատունին մէջ գտնուած գըր-
քերը մէկտեղ հաւաքելուն և ցուցակագրուելուն, և
մասամբ ալ Նոր Նուիրատուութեանց։ Բայց տակաւին
վանքին զանազան կողմերը կը գտնուին բաւական
թուով գրչագիրներ, որոնք ընդհանուր գումարը 3000ի
կրնան լրացնել, որով Ս. Յակոբեանց Աթոռին պատ-
կանող գրչագիրներու թիւը՝ Մայր Աթոռին մատենա-
դարանէն ետքը առաջին տեղը կը գրաւէ։ Գրչագիր-
ներուն ոչ ցուցակը կրնանք տալ այստեղ, եւ ոչ ալ
միտք ունինք անոնց վրայօք կատարեալ տեղեկու-
թիւն կազմել։ Բաւական ըլլայ գիտնալ, թէ ամէն
ճիւղերն ալ առատութեամբ ներկայացուած են։ Աս-
տուածաշունչ Ս. Գրոց հաւաքածոյն կատարելագոյնն
է, մեծահատոր երկաթագիրներ բազմաթիւ են, որոնց
հետ երկաթագիր ճաշոց մըն ալ. Նախնեաց մատենա-
գրութիւններու և թարգմանութիւններու ընտիր օրի-
նակներ բաւական կը գտնուին. Նոյնպէս պատկերա-
զարդ եւ ոսկեգիր բոլորգիրներ Ռուբինեաց շրջանէն,
որոնց մէջ պատմական կենդանագիրներ ալ կը գըտ-
նուին։ Իսկ եկեղեցական և գրական գիրքեր շատ ու
շատ են, և պատկառելի հնութեան նմոյշներ ալ կան։
Միջին ժամանակներու ընդօրինակութիւնները յիշելն
իսկ աւելորդ կը սեպենք։ Դարանաղցիին Նոր հրատա-
րակուած ժամանակագրութիւնը, գեղեցիկ նշան մըն
է մատենադարանիս կարեւորութեան։ Ասոր նմաններ
կան դեռ եւս, զոր օրինակ՝ Երեմիա Քէօմիւրճեանի
զանազան գործերը, Մինաս Ամդեցիի Օրագրութիւնը,
Եղիազար Այնթապցիի, Յովհաննէս Կոլոտի, Գրիգոր
Շղթայակիրի, Աբրահամ Խոշաբեցիի եւ Յակոբ Նալ-
եանի նամակները, և ուրիշ թղթակցութեանց և տե-
ղեկագրութեանց բնագիրները, որք երկայնամիտ հե-

տաղօտողներու երկարատեւ աշխատութեան նիւթեր կ'ընծայեն։ Մատենադարանը առձեռն ցուցակ մ'ունի, բայց նոր ոճով ընդարձակ մատենացուցակ մը եթէ հրատարակուի, աւելի լուսաւոր կերպով պիտի յայտնուի մեր համառօտ ակնարկներուն կարեւորութիւնը։

50. — Ըսինք թէ 1897էն առաջ ուրիշ տեղ ամփոփուած էին գրչագիրները։ Այս տեղը կը գտնուի տանիքին վրայ, մայր տաճարին և Ս. Թէոդորոսին մէջտեղերը, և է 8 և 4 մէտր թեւերով սենեակ մը, պզտիկ նախասենեակով մը։ Ներքին դուռին վրայ գրուած արձանագրութենէ մը կը քաղենք, թէ Շղթայակիրը շինած է այդ սենեակը ՌՃՀԶ (= 1727) թուին, այսինքն է իւր Երուսաղէմ մտնելէն վեց տարի ետքը, ուղղակի Կոլոտի բնակութեան համար, որ սակայն չէ կրցած գալ իւր մահուան պատճառով։ Կոլոտի մահը 1741ին տեղի ունեցած ըլլալով, արձանագրութիւնը անկէ ետքը գրուած պիտի ըսենք, քանի որ Կոլոտի մահը կը յիշուի։ Նմանօրինակ յիշատակ մըն ալ Սրբեղաթաղի ծայրը գրուած տեսանք, մեծ սենեակին գըրան վրայ։ Կ'երեւի թէ Շղթայակիր Կոլոտի մեռնելուն և Երուսաղէմ գալ չկրնալուն կարօտը՝ այդ արձանագրութիւններով ուզեր է յագեցնել և սիրտին ցաւը ամոքել։ Մեծ սենեակին ներքինն ալ կոկիկ է, և կամարներուն վրայ զարդի գծագրութիւններ ալ կ'երեւին։ Պատերը ամբողջ, մինչև իսկ կամարներուն կիսաբոլորակները, կոկիկ դարաններով գոցուած են, և դարաններուն մէջն ալ տպագիրներով լեցուն են։ Այդ մատենադարանը կրնանք իբր պահեստի շտեմարան նկատել, զի կիրառութեան և ընթերցանութեան յարմար գիրքերէն միմի կամ երկերկու օրինակ պատ-

ուած և ուրիշ մատենադարանի մէջ ամփոփուած են, ինչպէս պիտի տեսնենք։ Իսկ այստեղ թողուած են հնօրեայ տպագրութեանց աւելորդ օրինակները քանի մը տասնեակներով, մինչև իսկ Յովհաննու Մեկնութեան Կոստանդնուպոլսոյ տիպէն 90 օրինակներ կան։ Գործածութեան անյարմար պահծու գիրքերն ալ այս տեղ են դրուած, և յիշատակութեան արժանի է Ոսկանեան Աստուածաշունչի օրինակ մը մագաղաթի վըրայ տպուած, ստուգիւ եզական բան մը։ Մաս մըն ալ եւրոպական լեզուով հին գիրքեր կան, որոց մէջ աչուընիս զարկաւ Քալէբինիի լատիներէն մեծ բառարանը։ Գրադարաններուն վրայ թուղթեր պահելու դարակներ ալ կան, և բոլորն ալ լեցուն են հին գըրուածներով, և կ'արժէր որ մանրազնին խուզարկութեան ենթարկուէին։ Իսկ հին տպագրութիւններու աւելորդ օրինակները կրնան տրամադրելի ըլլալ գրադարան ունեցողներուն և հաւաքածոյ կազմողներուն, նոյնիսկ պարզ փոխանակութեան ձևի տակ։

51. — Տպագիրներու միւս մատենադարանը գետեղուած է Ս. Թէոդորոսի մօտերը, Տեյիրմեն և Տեմիր թաղերու մէջտեղը, Հեթում թագաւորի կոչուած սենեակներուն մէջ, որ երկու են եղեր և միացուելով մէկի վերածուած են, և 8,50 ու 5,25 թևերով բաւական սրահ մը կը կազմեն, 44 քառակուսի մեթր տարածութեամբ։ Ս. Թէոդորոսի եկեղեցւոյն Հեթումեան հիմնարկութիւն ըլլալուն մասին մեր տեսութիւնը վերև յայտնեցինք. Իսկ այս սենեակներուն Հեթումեան բնակավայր եղած ըլլալուն, աւանդութենէ զատ վըկայութիւն չեն գտներ, եթէ Հեթում Առաջինի վրայ պիտի իմանանք։ Այլ իբր հաւանական կրնար ընդու-

նուիլ, եթէ Լեւոն Հեթումեանի վրայ առնուէր։ Բայց մենք յարմարագոյն կը գտնենք Հեթում Երկրորդի վրայ իմանալ, որուն համար պատմութիւնէն գիտենք թէ 1300 յունուար 9էն փետրուար 3 օրերուն մէջ Երուսաղէմ գտնուեցաւ։ Նա թէպէտ Փրանկիսեանց հաստ կապայով և չուան գօտիով սքեմաւորուած էր, սակայն կը սիրենք հաւատալ թէ Հայոց թագաւորը ուզած է Հայոց պատրիարքարանը օթևանիլ, քան թէ լատին Փրանկիսեանց վանքը։ Մատենադարանին վրայ դառնալով, անիկայ սովորաբար Ընթերցարան անունով ճանչցուած է, և բացուած է 1901ին, որպէսզի միաբաններու դիւրութիւն ընծայուի գիրքերու և լրագիրներու ընթերցանութեամբ զբաղելու, թէ՛ սրահին մէջտեղը դրուած գրասեղանին շուրջը բոլորուելով, և թէ ստորագրութեամբ ստանալով եւ սենեակնուն մէջ կարդալով ու դարձնելով։ Այս տեղ ալ 8 հատ յատուկ դրադարաններ կան, գիրքեր շարելու յարմար, եւ երկուք ալ պատուհաններու խորշերուն մէջ յարմարցուած են։ Կան նաև երկու մեծ և երկու պզտիկ դարաններ լրագիրներու հաւաքածոները զետեղելու, որոնցմէ մաս մըն ալ կազմուած և գիրքերու շարքին անցած է։ Գիրքերուն ցուցակը 1200 թիւ կը պարունակէ իբր անուն. այլ եթէ ի միասին կազմուած մանր հատորները և բազմահատոր գործերը և զանազան տպագրութիւնները և երկրորդ օրինակներն ալ հաշուի առնուին, կրկնապատիկը կ'անցնի հատորներուն թիւը։ Այսօր բոլոր տրամադրելի տեղերը լեցուած ըլլալով, գրքերու դէզեր կը գտնուին սեղանի վրայ, գիրքերուն վրան ու ետևը, և մինչև իսկ գետինները։ Վանքին պակասութիւններէն մէկն ալ ընդարձակ և վայելուչ մատենադարան մը չունենալն

*է(*)։ Գիրքեր շատ կան, մանաւանդ հին եւ հնագոյն հրատարակութիւններ, թէպէտ նորագոյններ նուազ են։ Միաբաններէն շատեր սեպհական փոքրիկ գրադարաններ ունին, եւ պատրիարքարանի սենեակներուն մէջ հազարի չափ հատորներ կան տակաւին, և եթէ բոլոր պատրաստներն հաւաքուին և աւելորդները փոխանակուին, լաւ մատենադարանի մը նիւթը պատրաստ կը գտնուի։*

52. — *Գրենական բաժիններուն հետ կ'առնենք վանքին տպարանն ալ, որ* 1833*ին սկսած է Զաքարիա Կոփեցիի նախաձեռնութեամբ, Պօղոս Ադրիանուպոլսեցիի հովանաւորութեամբ և Կիրակոս Երուսաղէմացիի տեսչութեամբ։ Առաջին տպարանը զետեղուած էր վանքին հիւսիս-արեւելեան կողմը քանի մը սենեակներու մէջ, որ այժմ ուխտաւորներու յատկացուած են* Հին տպարանի բաղ *անուանով։ Այդ սենեակներուն յարմարութիւնը նուազ էր, և գործիքներն ալ հին ոճով էին, այսուհանդերձ բաւական թուով և կարեւոր նիւթով հրատարակութիւններ ելած են անկէ։ Ժամանակներուն զարգացումը տպարանին ալ կատարելագործութիւնը կը պահանջէր։ Ուստի Կիրակոս պատրիարք, նոյն ինքն առաջին տեսուչը, նոր շէնքի մը ծրագիրը յղացած էր, բայց չէ հասած գոր-*

---

(*) *Այս պակասը լրացած է այժմ շնորհիւ Վսեմ. Գալուստ Կիւլպէնկեանի վեհանձն նուիրատուութեան՝ հոյակապ Մատենադարանի մը կառուցմամբ, ի յիշատակ իր հանգուցեալ ծնողաց և ի մեծարանս հոգելոյս Տ. Եղիշէ Դուրեան պատրիարքի Քահանայութեան Յիսնամեայ Յոբելեանին։*
*Ծ. Հ.*

ծագրել։ Յովհաննէս պատրիարք, պատրիարքարանի և վարժարանի շինութեանց հետամուտ, տպարանը մտածելու ատեն չէ գտած, իսկ Եսայի պատրիարք նոր շէնքի գաղափարը թողլով, վանքին պատրաստ շինութեանց մէջ մտածած է տպարանը բարեկարգել 1865ին։ Նա իւր մտադրութիւնը կը դարձնէ ընդարձակ գետնայարկին վրայ, որ կը գտնուի մեծ բակին հարաւակողմը, մայր տաճարին կամ աւելի ճիշդ՝ Էջմիածնի տաճարին հարաւային պատին դիմացը, եւ որուն վերևը կը գտնուին ուխտաւորական Թօփալ և Պէքեար թաղերը։ Այս ընդարձակ սրահը, իւր վերնայարկ թաղերուն հետ, կառուցուած է 1675ին Այնթապցի Եղիազարէն, իբր ախոռ ուխտաւորաց գրաստներուն։ Ցամաքի կարաւաններուն նուազելէն կամ դադարելէն ետքը, նոյն տեղը գործածուած է իբր փայտատուն, զի մեծաքանակ վառելափայտի պէտք կար վանքին փուռին և խոհանոցին և լուացարանին համար, երբ նուազ էր փայտածուխի ու անծանօթ էր հանքածուխի կիրարկութիւնը։ Այդ գետնայարկը 34 մէդր երկայնութիւն և 22 մէդր լայնութիւն ունի, որ կու տայ 750 քառակուսի մէդր։ Կամարակապ է և հաստակառոյց. հինգ կամար երկայնքին և երեք կամար լայնքին, 15 համաչափ քառակուսիներու կը բաժնեն գետնայարկը, իւրաքանչիւրը 50 մէդր տարածութեամբ, մէջն ըլլալով կամարները վերցնող ութ ոտքերն ալ, որոց իւրաքանչիւրը իբր երեք քառակուսի մէդր նիստ ունի։ Յիշուած քառակուսիներէն մէկը միայն պատերով զատուած և դուրսէն դուռով արտաքին գործածութեան դրուած է, որով տպարանին տարածութիւնը կը մնայ 700 քառակուսի մէդր։ Մուտքը մեծ բակին կողմէն է, ուսկից կը զատուին

վանդակաձև երկաթներով երեք միջին կամարները․ արդէն արևմտեան անկիւնը դուրս թողուած ըսինք, իսկ արևելեան անկիւնն ալ ուրիշ շինութեանց ետև կը մնայ։ Երկրորդ դուռ մըն ալ կայ սրահին հարաւակողմը պարտէզ ելլող։

53. — Եսայի պատրիարք ամբողջ գաւթայարկը մէկէն ձեռք առած չէ, այլ երկայնքէն երեք կամարներուն միջոցը միայն, որ է ըսել ութը քառակուսիներ, միշտ անկիւնինը դուրս թողլով։ Բանի մը տարի ետքը, յատուկ նուիրատուութեան մը արդիւնքով, միւս երկու երկայնքի կամարներուն միջոցներն ալ կցած է տաճարնին, և մինչև ցայսօր ալ հին և նոր մասերը երկաթեայ վանդակով զատուած կը մնան։ Ընդարձակ տարածութիւնը, այսինքն 14 քառակուսիներու գրաւած մասը, այժմ բաժնուած է զանազան տաճարական ծառայութիւններու, հետևեալ կերպով։ Արևմտեան ծայրը, զատուած քառակուսիին գծին վրայ եղող երկու քառակուսիները, կազմատան յատկացուած են։ Անոնց վերևը եղող գծին քառակուսիներէն երկուքը գրաշարներու յատկացուած են, երրորդին մէջ զետեղուած են արագատիպը և ուրիշ մամուլներ։ Երրորդ կամ միջին գծին առաջին կամարին մէջ կը պարունակուի տպարանին մուտքը և գրավաճառութեան բաժինը․ ասկէ անդին են վիմագրութեան մամուլները եւ ուրիշ պէտքերը, եւ գիծը կը վերջանայ միւս դրան երթալու ազատ անցքովը։ Այստեղ է երկաթ վանդակապատը, որով կը զատուին երկու երկայնքին եւ երեք լայնքին կամարներուն մասերը։ Տպարանին արևելակողման այս վեց քառակուսիներէն չորսը մթերանոցի յատկացուած են, և հոն

կը պահուին տպագրութեան թուղթեր, մելաններ եւ ուրիշ պէտքեր, կազմուած գիրքեր դարաններու մէջ, կազմուելիք տպագրուած թերթեր դէզ դէզ, նաեւ հին լրագիրներ եւ ուրիշ աւելորդներ։ Իսկ հիւսիսային կողմի երկու քառակուսիները պատով զատուած են, եւ հոն հաստատուած է տառերու ձուլարանը իւր ամէն յարակիցներով(*)։ Տպարանին հանդերձանքը եթէ մեծահարուստ չ'ըսուիր, կատարեալ պիտի ըսուի, վասն զի բան մը պակաս չէ գոհացուցիչ գործեր արտադրելու համար։ Լաւ արագատիպ մը ունի, թէեւ բազուկի ոյժով կը շարժի, ձեռքի մամուլներ, վիմագրական մամուլներ, տոմսի եւ վերտառութեան մամուլներ, ճնշիչ մամուլներ, նաեւ ջրաշարժական մը, գլանաձեւ մամուլ, կտրիչ գործիքներ, կազմարարութեան եւ ձուլարանի գործիքներ, և հայերէն տառերու և հայկական խազերու 29 տեսակ մայրեր, զանազան մեծութեամբ տառեր, ոչ միայն հայերէն, այլ և եւրոպական և արաբական և եբրայական աթուեթայով զարդագիրներ, շրջանակի և անկիւնի զարդեր, մէկ խօսքով՝ ինչ որ տպարանական արտադրութեանց համար պէտք է։ Ըստ այսմ, Ս. Յակոբեանց տպարանը սովորական տպարան մը ըլլալէ աւելի, ձուլարանով եւ կազմատունով և վաճառանոցով լրացած՝ հրատարակչական հաստատութիւն մը կը ներկայանայ։

54. — Ս. Յակոբեանց տպարանին արդիւնաւորութեան մասին ալ գաղափար մը տուած ըլլալու

---

(*) Ձուլարանը այժմ վերածուած է ելեկտրական կայանի, ուր զետեղուած են մեքենաները իրենց յարակիցներով։ Ծ. Հ.

համար քանի մը մանրամասնութիւններ յառաջ բերել աւելորդ չենք նկատեր։ Ծիսական գիրքերու ճիւղը կրնայ այդ տպարանին իբր յատկանշական նըկատուիլ, ոչ միայն զի հեղինակաւոր հրատարակութեան կնիքը կը կրէ, այլ և այնպիսի ճիւղ մըն է, որ սովորական հրատարակիչներու առևտրական ուղղութեան չի համապատասխաներ։ Երուսաղէմի տպարանը ամենէն խիստ գրաքննութեան միջոցին ալ բացառիկ արտօնութիւն ստացած էր ծիսական և բարոյական գիրքերը ազատօրէն տպագրելու՝ վաղեմի օրինակներուն համաձայն։ Այս պատճառներով ծիսական գիրքեր երեք և չորս տպագրութիւններ ունեցած են, ինչպէս են, Ատենի ու Ձեռաց ու Ծոցի ժամագիրքեր, Ձայնքաղ Շարական, Տօնացոյց, Տաղարան եւ Խորհրդատետր. իսկ Սաղմոս եւ Նարեկ եւ Աղօթագիրք, և Ատեանի ու Ճաշու ու Իւղաբերից աւետարաններ, և Նոր Կտակարան մինչև հինգ և վեց տպագրութեան հասած են. վերջին անգամ Ճաշոց ալ տպուած է լաւ և տոկուն թուղթի վրայ։ Մեծահատոր հրատարակութիւններէն յիշենք Թադէոս վարդապետ Եկաւեանի Սուրբ Գրոց Համաբարբառը, Պետրոս Եպիսկոպոս Բերթումեանցի Եփեսացւոց Թղթոյն մեկնութիւնը, Ադրիանուպոլսեցի Պօղոս պատրիարքի Զանազանութիւն հինգ դարուց եռահատոր գործը երիցս տպագրուած, Սիօն ամսագիրի երկոտասանամեայ հատորները, Աստուածատուր Յովհաննէսեան եպիսկոպոսի երկհատոր Երուսաղէմի Պատմութիւնը, և Տիար Ֆրէտէրիք Մուրատի Յայտնութեան հին թարգմանութիւնը, ընդարձակ և կարևոր ուսումնասիրութեամբ։ Նախնեաց մատենագրութիւններէն հրատարակուած են Ղերուբնա Եդեսացի, Եղիշէ Վարդա-

պետ, Յովհաննէս պատմաբան, Ներսէս Շնորհալի, Ներսէս Լամբրոնացի, Վարդան Արեւելցի, Վահրամ Րաբունի, Մատթէոս Ուռհայեցի, Միքայէլ Ասորի, Եսայի Ջալալեան, որոնց կարգին պէտք է աւելցնել նորոգ տպուած Գրիգոր Դարանաղեցին։ Ասոնցմէ դուրս դասագիրքեր, բարոյագիրքեր, բանասիրականներ, քննադատականներ, պատմականներ, քերթողականներ, վէպեր եւ թատերգութիւններ, որոնք մեծ ու պզտիկ 150 հատորներու կը հասնին։ Հաշուի չենք առներ Սուրբ Տեղեաց պաշտամանց եւ հանդիսութեանց համար առձեռն հրատարակուած տետրակները։ Այդ համառօտ տեղեկութիւններն ալ բաւական են Ս. Յակոբեանց տպարանին վրայ նպաստաւոր գաղափար մը կազմելու։

---



## ՎԱՐԺԱՐԱՆԱԿԱՆ ԲԱԺԻՆՆԵՐ

55. — Նոր գլուխ մըն ալ կը բանանք վարժարանական ճիւղին շինութիւնները նկարագրելու, որոնք կրնան երկու մասի բաժնուիլ, նախ Ժառանգաւորաց, յետոյ Քաղաքացւոց վարժարանները։ Նորահաս աշակերտներու պատրաստութիւնը երբեք պակաս չէ կրցած ըլլալ Ս. Աթոռին մէջ. թէպէտեւ վարժարանի յատկացեալ մասնաւոր շինութեան մը հին յիշատակը չենք գտներ աւանդութեանց մէջ։ Այդ պակասը կը վերագրենք հին ատեններ սովորական եղող ձեւին, երբ կրթութիւնը ոչ թէ դասարանական

համախումբ ձեւի ներքեւ կը տրուէր, այլ ընծայեալներ եւ ընծայացուներ առ ոտս այս կամ այն վարդապետի մը կը մնային փոքրաւորի գերին մէջ, եկեղեցական սպասարկութեանց կը վարժուէին, եւ կարեւորագոյն սեպուած ուսմունքներու կը հետեւէին, իսկ առաւել զարգացումը ինքնայորդոր աշխատասիրութեան մէջ պիտի փնտռուէին։ Վերջին ԺԹ. դարուն առաջին քառորդին մէջ կը սկսին ժառանգաւորաց վարժարան կազմելու կամ հիմնելու մտադրութիւնները, եւ իբր նախաձեռնարկներ պիտի յիշուին Պօղոս Ադրիանուպոլսեցի կառավարիչը եւ Զաքարիա Կոփեցի ու Կիրակոս Երուսաղէմացի պատրիարքները։ Զաքարիա ամենէն աւելի գործին հետամուտ եղած է Կ. Պոլիս եւ Վենետիկ տեսածներուն ազդեցութեամբ. ուստի իւր պատրիարքութեան երկրորդ տարւոյն մէջ, 1843ին, առաջին վարժարանը բացած է Ռէմլէի վանքին մէջ, որ տարիուկէս ետքը, 1845ին, փոխադրած է Երուսաղէմի մէջ մասնաւոր տուն մը։ Կիրակոս, որ 1847ին յաջորդեց, վարժարանին աւելի զարկ տալու համար փոխադրած է վանքին մէջ, նոյն այն սրահը զոր Շղթայակիր շինած էր Կոլոտի համար, եւ զոր յիշեցինք իբր տպագիրներու շտեմարան (յօդ. 50)։ Այս տեղը բաւարար չէր կրնար ըսուիլ, ուստի Կիրակոս ուզեց յատուկ վարժարանի շէնք մը կառուցանել, եւ դրամական միջոցներու եւ պետական արտօնութիւններու պատրաստութիւններն ալ հոգաց, սակայն գործը իրականացնելու չհասաւ, եղածն ալ հետզհետէ խանգարեցաւ, մինչեւ որ քանի մը տարի ետքը բոլորովին փակուեցաւ։ Յովհաննէս պատրիարք, որ 1850ին Կիրակոսի յաջորդեց, իւր բոլոր մտադրութիւնը նախապէս պատրիարքարանի շինութեան վրայ

սեւեռեց, զոր աւարտեց 1853ին, եւ միեւնոյն ատեն Զամ-թաղն ալ շինեց, զոր հիմնած էր Կիրակոս, իբրեւ ուխտաւորաց թաղ. իսկ վարժարանի շէնքը պահ մը մոռցուեցաւ։ Յովհաննէս անագան ձեռնարկեց վարժարան մըն ալ կառուցանել, որ է այժմեան Ճեմարանը, եւ որ լրացաւ 1857ին. սակայն զանազան պարագաներ եւ իւր վերահաս մահը 1860ին, եւ Աթոռոյ պարապութիւնը մինչեւ 1865, չներեցին վարժարանի գործը կարգադրել, եւ Եսայի պատրիարքի միայն հին նպատակը գլուխ հանել։ Վարժարանը նորէն բացաւ Ճեմարանին մէջ, Զամ-թաղն ալ անոր յարակցելով, գիշերօթիկ վարժարանի մը պէտք եղած բաժինները լրացնելու համար։

56. — Զամ-բաղ կոչուածը իր անունը կ'առնէ շուրջը գտնուող վիթխարի մայրիներէն, եւ իբր ուխտաւորաց թաղ շինուած ու գործածուած ըլլալէն, թէ ոչ յարմարագոյն է պարզապէս Վարժարան անունով կոչել զայն, ինչպէս որ սկսած է այլ եւս գործածական դառնալ։ Հոն երթալու ճանպան վանքին մեծ բակէն է, որուն հարաւակողման շէնքերուն ներքեւէն ցած դուռէ մը կը մտցուի, եւ Պաղչէ-բաղի ու տպարանի մէջտեղ գտնուող նեղ անցքը կը տանի պարտէզներու մէջտեղ եղող բացավայրը։ Այս մասը պատերով եւ վանդակներով կանոնաւոր ձեւի վերածուած է 1908ին, Գրիգոր Աշճեան Վօսփորի Նէնիքէօյցի միաբանին ծախքովը։ Աջ կողմը կը մնան տպարանի եւ մանկապարտէզի ծառաստանները(*), ձախ կողմը ու-

(*) Վերջերս տպարանի ծառաստանին մէջ շինուեցաւ Նոր Մատենադարանը։ Տ. Հ.

րիչ ունի խնամեալ ծառաստան մը, և ճանպայ մը որ Ս. Հրեշտակապետի դուռը և վանքը կը տանի։ Վանդակադուռէն մտնելով կը գտնուինք վարժարանի շէնքին առջև սալայատակեալ արտաքին բաց բակի մը մէջ։ Վարժարանի շէնքը կանոնաւոր քառանկիւնի մը կը կազմէ՝ մէդր 51 երկայն և 29 լայն թեւերով, որ կուտայ 1480 քառակուսի մէդր տարածութիւն։ Դուռին մեծութիւնն ու ճակատը վայելուչ են, ուսկից անդին է շէնքին ներքին և կամարակապ մուտքը։ Միջավայրը բաց է, 30 մէդր երկայն և 8 լայն բակով մը, որ է 240 մէդր քառակուսի տարածութիւն, հիւսիսէն հարաւ երկնցող։ Բակին մէջտեղը պզտիկ ծաղկանց պարտէզ մը կազմուած է, գետնէն իբր կէս մէդր բարձր։ Յիշենք ևս այդ բակին հիւսիսային անկիւնը գտնուող երկու հսկայ տունկեր իրար պլլուած, որթատունկ մը և ծառացած յասմիկ մը, որոնք երկյարկանի շէնքին բարձրութիւնն ալ անցած ու տանիքին վրայ տարածուած են։ Բաց բակը շըրջապատուած է կամարակապ և երեսբաց ճեմելիքով մը, եօթը կամարներով և 3,25 մէդր լայնութեամբ՝ կամարներու սիւներն ալ միասին համրելով։ Այս անցքին վրայ կը բացուին սենեակներուն դուռները։ Բաց բակին հիւսիս-արևելեան և հարաւ-արևմտեան անկիւններէն 24 ոտք սանդուխներ կը հանեն վերնայարկը որ նոյնպէս կամարակապ և երեսբաց ճեմելիքով շրջապատուած է, և վրան կը բացուին սենեակներու դուռները։ Շէնքին արտաքին կերպարանքը նկարագրելէն ետքը, անցնինք պարունակութիւնը բացատրել։

57. — Գետնայարկին վրայ դէմ դիմաց լննական սենեակներ կան, արևելեան եւ արևմտեան թևերուն

վրայ։ Իւրաքանչիւր սենեակ համաչափ է, 4,60 մէտր երկայն՝ արեւելքէ արեւմուտք, եւ 3,60 լայն, որ է 16,50 մէտր քառակուսի։ Իւրաքանչիւր սենեակ ունի դուռ մը, վրան լուսամուտ, դիմացը պատուհան, խորշ մը կրակ վառելու յարմարութեամբ, եւ պատին մէջ գործուած դարան մը։ Ներքնայարկի այդ սենեակները յատկացուած են վարժարանին աշխատաւորներուն, եւ զանազան ընդհանուր պէտքերուն(*)։ Վարժարանին մուտքին կողմը երկու անկիւններուն սենեակներն աւելի մեծ են և ներսէն բաժնուած սենեակ մը ունին. հիւսիս—արեւելեան անկիւնը հանդերձատուն է, իսկ հիւսիս-արեւմտեան անկիւնը տնտես մայրապետին յատկացուած է։ Հարաւային թեւին մէջտեղը սեղանատուն է, արեւմտեան անկիւնը խոհարան և լուացարան, իսկ արեւելեան անկիւնը մեղուանոցի յատկացուած տեղ մը, և անկէ անդին ճեմիշներ։ Վերնայարկի մէջ սենեակներ իրարու միացած են վարժարանին պահանջից համեմատ։ Արեւելեան թեւին մէջ հարաւակողման չորս սենեակները միացնելով սերտարան կը կազմեն, իսկ միւս հինգ սենեակները դասարաններու և դաստուներու կը ծառայեն։ Արեւմտեան թեւին մէջ երկու ծայրերէն չորսական սենեակ միացնելով երկու ննջարան կը կազմեն, և միջին սենեակն ալ գիշերապահի յատկացուած է, և կողմնակի պատուհաններ ունի դէպի ննջարանները։ Հարաւակողման ճակատին մէջտեղը աշակերտաց զբօսարան է, արեւմտեան անկիւնը կառավարիչի սենեակ(**), իսկ արեւելեան անկիւնը կարեւաց

(*) Այս սենեակներուն մէջ այժմ կը բնակին Ընծայարանի սարկաւագ ուսանողները։ Ծ. Հ.

(**) Այս երկու սենեակները այժմ դասարանի վերածուած են ի պէտս Ընծայարանի։ Ծ. Հ.

տեղիք ներքեւիններուն նման։ Հիւսիսային ճակատին մէջտեղը դպրոցական գրադարանն է, իսկ երկու անկիւնները վարժարանաց տեսուչին յատկացուած են, արեւելակողմը իբր տեսչարան եւ արեւմտակողմը իբր բնակարան։ Այս երկու սենեակներն ալ ներքին բաժանումներ ունին։ Չամ-բաղը կամ Մայրի-բաղը, որ այլեւս Ժառանգաւորաց վարժարան եղած է եւ այնպէս ալ կոչուելու է, ընդհանուր առմամբ գոհացուցիչ կրնայ ըսուիլ։ Միակ դիտողութեան առարկայ կրնայ ըլլալ պատուհաններուն բաւականաչափ մեծ չըլլալը, թէպէտ ուրիշ տեղերու պատուհաններէն մեծ են։ Ներքին բնակութիւնը օդաւէտ է, դուրսէն չորս կողմը շատ ընդարձակ հողեր կան, իբր մշակելի պարտէզ եւ իբր խաղատեղի գործածուելու յարմարութեամբ։ Օդը պայծառ չեղող օրեր, վերնայարկի կամարակապները յարմար եւ ընդարձակ ճեմելիքներ են աշակերտաց համար. գրօսարան սենեակն ալ հանգիստ ըլլալու կը ծառայէ։ Վարժարանի պարունակութեան տեսակէտէն, երկու ննջարանները 32 մահճակալի եւ սերտարանն ալ նոյնչափ գրասեղաններու բաւական կը գտնենք։ Դպրոցական ծրագրին վրայ խօսիլը բարոյական մասին կը պահենք։

58.— Ներքնայարկի արեւելակողման սենեակներէն միջինը ճեղքուելով ճեմարան երթալու անցք եղած է այժմ։ Վիթխարի մայրիներուն ետեւը կը բարձրանայ այդ շէնքը, որ հիմնադիրին նպատակով վարժարան ըլլալու սահմանուած է, բայց միայն սերտարանի եւ դասարանի տեղը ունի, եւ զուրկ է գիշերօթիկի մը պէտք եղած ուրիշ մասերէն, ինչպէս են ննջարան, հանդերձատուն, ճեմիչ, եւայլն, որով հարկ

եղաւ սկիզբէն Մայրի–Թաղը վարժարանի խառնել, եւ ծեմարանը միայն իբր դասարան և սերտարան գործածել, նոյն իսկ ասոնք ալ ձմեռնային միջոցին Մայրի–Թաղ փոխադրելով։ Մեր տեսութեամբ յարմարագոյն է նկարագրուած Մայրի–Թաղի վարժարանը ամէն եղանակի մէջ ալ գործածել, զի ծեմարանին շէնքը, իւր ընդարձակութեամբը ու բարձրութեամբը և ուրիշ պարագաներովը, սերտարանի մը համար պահանջուած ամփոփ դրութենէն օտար է, և վարժարանէ աւելի հոյակապ հանդիսարան և գեղեցիկ թանգարան մը ըլլալու աւելի յարմարութիւն ունի։ Շէնքը դուրսէն 21 մէդր թևերով և 240 քառակուսի մէդր տարածութեամբ կանոնաւոր քառակուսի մըն է, վայելուչ ճակատ մը ունի, և ներս մտնելու համար 12 ոտք սանդուխ մը կայ, գլուխներէն դարձուածներով, և հետզհետէ ամփոփուելով մինչև շէնքին դուռը, որ արևմտեան ճակատին վրայ է։ Ներքինը խաչաձևուած է, չորս անկիւններէն մէյմէկ սենեակ զատելով իբր դասարան, և մէջտեղի մասն է որ սերտարան նկատուած է։ Կեդրոնը գմբեթայարկ է, վայելուչ և բարձր, որուն գագաթը գոնէ 15 մէդր բարձր ըլլալու է յատակէն վեր։ Շինութիւնը զարդարուն է սիւնաձևերով և ցիւերով և շրջանակներով։ Խաչաձևի թևերուն ծայրերը երեքական պատուհաններ կան, միայն մուտքին կողմը միջինը դրան փոխուած է. մէյ մէկ ալ ձուաձև ընդարձակ լուսամուտներ կան պատուհաններուն վերև և կամարներուն ներքև, և որանց կատարելապէս լուսաւոր է։ Գետինը առաջ մարմարով սալարկուած է եղեր, և միայն 1898ին մարմարներ վերցուելով երփներանգ տկար աղիւսներու փոխարկուեր են, յայտնի չէ թէ ինչ նպատակով։ Խաչաձև

թեւերը 19 մէտր են երկայնքին և 7 մէտր լայնքին, որ կեդրոնէն զիրար կը կտրեն: Պատերուն ներսերը դարաններ գործուած են, 8 հատ մեծ՝ հիւսիսէ հարաւ թեւերուն մէջ, և 4 փոքր միայն՝ միւս թեւերուն վրայ, վասն զի այս կողմը դրուած են 4 սենեակներուն ալ դուռները: Բոլոր դարանները լեցուն են հընագիտական, բնագիտական, պատմական, ազգաբանական եւ հնաքրքրական առարկաներով, որոնք խառն կերպով դիզուած են, առանց ուսումնասիրուած կարգի, և, ըսենք նաև, առանց թանգարանական ճաշակի: Աչքի զարնող իրեր են՝ հին քանդակներ և արձանագրութիւններ, ճարտնական յախճապակներ, չինական առարկաներ, հեթանոս կրօնականներ, հընդկական իրեղէններ, հանքաբանական նիւթեր, կենդանեաց զմռսուածներ, հազուագիւտ ոսկրէներ, հին և նոր եկեղեցականներ, ովկիանոսներու ձուկեր, հին դրամներ, պղնձեղէն հնութիւններ, կոկորդիլոս մը, այծի հրէշ ծնունդ մը, և ուրիշ տեսակ տեսակ բազմաթիւ առարկաներ, որոնք եթէ դասակարգուէին, մանաւանդ եթէ պատրիարքարանի դահլիճին և խորհըրդարանին մէջ տնուողներն ալ միացուէին, հարուստ և կարևոր թանգարան մը կազմելու բաւական են, մինչ ներկայ վիճակի մէջ հազիւ թէ հնաքրքրութիւն կը շարժեն: Անկիւնի չորս սենեակները 5,40 ու 4,50 մէտր թեւով և 25 մէտր տարածութեամբ կոկիկ դասարաններ են հինգ հինգ պատուհաններով: Հիւսիս-արևելեան անկիւնի սենեակը բնագիտութեան յատկացուած է, և հոն կը պահուին բաւական թուով բնագիտական նիւթեր ու գործիքներ և մարդկային կմախք մը: Խաչաձևին հարաւային թևին պատին վըրայ հնաքրքրական իւղանկար մը կայ, Ումէտ Պէյ-

ղատ նկարիչի գործ, օսմանեան կայսերական գահը ներկայացնող, լաւ մտածուած յատկանիշերով, և զօրութեան նշանակ առիւծ մը ու բարձրութեան նըշանակ արծիւ մըն ալ երկու կողմերը։

59.— Ծեմարանի շինուածոյն ներքնայարկին մէջ զետեղուած է այժմ քաղաքացի մանչերու դպրոցը, ուր երբեմն ժառանգաւորաց գծագրութեան դասարանը կը գտնուի եղեր(*)։ Երկար սրահ մըն է 5,20 մէդր լայնութեամբ, որուն հարաւային ծայրէն 4,50 մէդր երկարութեամբ մաս մը իբր դասարան զատուած է, և մնացածը 13,50 մէդր երկարութեամբ սերտարանը կը կազմէ։ Քաղաքացւոց դպրոցը, զոր աւելի սովորական կոչմամբ կրնանք Թաղական նախակրթարան անուանել, Մեսրոպեան անունով կոչուած է, և Երուսաղէմի Աթոռին կողմէ կը պահուի, առանց քաղաքացւոց վրայ բեռ ըլլալու, ասով մէկտեղ հազիւ 30 աշակերտներ կը յաճախեն հոն, զի այստեղ ալ կը տիրէ օտարազգի վարժարաններու մենամոլութիւնը։ Քաղաքը արաբախօս ըլլալով, նոյնպէս են հայ ընտանիքներն ալ, և մինչև այսօր ալ արաբերէնն է հայ տուներուն մէջ սովորաբար խօսուածը, թէպէտ հայերէնին անգիտակ չըլլան, շնորհիւ մանչերու եւ աղջիկներու նախակրթարաններուն, եւ մանաւանդ փոքրիկներու մանկապարտէզին, զորս Աթոռը կը պահէ։ Մանչերու նախակրթարանը իւր առջեւը ընդարձակ բացավայր մը ունի, տղայոց օդ առնելուն և խաղալու համար զատուած։ Նախակրթարանին մուտքը

(*) Այս մասը հիմա կը ծառայէ իբրև ճաշարան ժառանգաւորաց վարժարանի։ Ծ. Հ.

երկու կողմէն ալ է, այսինքն թէ՛ վանքին մէջէն եւ թէ հայոց բնակութեանց կողմէն։

60.— Աղջիկներու Նախակրթարանը Գայեանեան անունով կը կոչուի, և յարակից ունի մանկապարտէզը, և բոլորովին զատուած է մանչերու Նախակրթարանէն եւ կը գտնուի ժառանգաւորաց վարժարանը չմտած, Ս. Հրեշտակապետ տանող ճանպուն ձախակողմը, Պաղչէ-թաղին մօտ եղող ինքնուրոյն շինուածի մը մէջ, որ կառուցուած է 1862ին, Նոր Նախիջեւանցի Տուլտովեանց Կարապետի ծախքով։ Այս կողմէն մտած ատեննիս նախ ունինք պզտիկ բաց բակ մը, որ երբեմն աղաւնետուն է եղեր։ Անկէ կը մտնուի առաջին սենեակ մը 6,80 եւ 7,10 մէտր թեւերով եւ 48 քառակուսի մէտր տարածութեամբ, որ երբեմն երկաթագործութեան կրպակ մը եղեր է, և յարդարուելով աղջկանց Նախակրթարան եղած է։ Անկէ կ'անցնուի մանկապարտէզը, 12,80 և 5,90 մէտր թեւերով, որ է ըսել 75 մէտր քառակուսի տարածութեամբ սրահ մը, ուր կը մնան մանկապարտէզի մանուկները, մանչ ու աղջիկ խառն։ Երեք բաժիններու զատուած՝ իբր հարիւր մանուկներ կը գտնուին այժմ այդ մասին մէջ, և 20 աշակերտուհի ալ աղջկանց Նախակրթարանին մէջ։ Ծրագիրը ընդհանրապէս հայերէնի վրայ է, եւ ձեռագործն ալ լաւ տեղ մը կը գրաւէ։ Մանկապարտէզի մանուկները կարմրազգեստ են, ըստ տարածեալ սովորութեան. իսկ Նախակրթարանի աղջիկները սև գոգնոց ունին դպրոցին մէջ, իսկ իբր համազգեստ՝ սև շրջազգեստ և սպիտակ օձիք։ Սրահին միւս ծայրը ուրիշ դուռ մը մանկապարտէզը ուղղակի հայոց թաղաբաժինին հետ հաղորդակցու-

թեան կը դնէ, սակայն աշակերտուհիներէն մէկ մասին համար աւելի յարմար կուգայ վանքին մէջէն անցնիլ(*)։

---



# ՈՒԽՏԱՒՈՐՆԵՐՈՒ ԲԱԺԻՆՆԵՐ

61. — Երուսաղէմի ուխտագնացութիւնը հին դարերէ ի վեր հայ քրիստոնէին համար նուիրական եղած է, ինչ որ Երուսաղէմի Աթոռն ալ պարտաւորած է անոնք պատսպարելու համար տեղեր պատրաստել։ Նախնական բնակարանները որո՛նք եւ ի՛նչչափ են եղած՝ չենք կարող ճշդել, զի ուխտաւորաց թաղերը հարկաւ փոփոխութիւններ կրած են դարերու ընթացքին մէջ, և պարագաներու համեմատ հետզհետէ շատցած են նոր գնումներով և յաւելուածներով, և տարբեր կիրառութիւն ունեցող մասեր ուխտաւորներու յատկացուելով։ Այժմեան թաղեր կրնան երկուքի բաժնուիլ, հիները և նորերը. հիները՝ շատ քիչ տարբերութեամբ՝ Շղթայակիրի ժամանակին կրնանք վերա-

---

(*) Վերջին տարիներս աղջկանց Նախակրթարանի ու մանկապարտէզի այս շէնքը ու քովի տուները փլցուելով՝ շինուած է այժմեան երկսեռ Նախակրթարանն ու մանկապարտէզը Սրբոց Թարգմանչաց անուամբ, և կը պարունակէ 400է աւելի սան ու սանուհիներ։ Ծ. Հ.

գրել, իսկ նորերը իրենց կարգին պիտի ցուցնենք։ Որչափ ալ բոլոր շինութիւններու գնումներ ու յարգարումներ միշտ Աթոռին կողմէ կատարուած ըլլան իրենց ամբողջութեան մէջ, սակայն ուխտաւորաց թաղերուն, մանաւանդ հնագոյն թաղերուն մէջ ստէպ կը տեսնենք դուռերուն ճակատը ագուցուած արձանագրութիւններ, թէ այս սենեակը յիշատակ է այս անուն անձի, այսինչ թուականին նուիրուած։ Բայց այս ըսել չէ, թէ այս սենեակը այնինչ տարին նոր նուէրով շինուած ըլլայ, այլ թէ արդէն պատրաստ սենեակ մը՝ այսինչ անձը պատշաճաւոր նուէրով մը խուրացուցած, և ետքէն իրեն կամ իրեններուն անունին յիշատակ ըրած է։ Այս տեսակ յիշատակարաններ Սբեղաթաղի և ուրիշ միաբանական բնակարաններու մէջ ալ գրուած էին, զորս մենք զանց ըրինք յառաջ բերել՝ նկարագիրնիս մանրամասնութիւններով չխճողելու համար։ Նոյնպէս պիտի ընենք ուխտաւորաց թաղերու համար ալ։ Ուխտաւորներու տրամադրելի սենեակներ իբր 300 կը համրուին այժմ, սակայն մի մասը կամ գետնայարկ կամ նեղ ըլլալուն և անխնամ թողուելուն համար սովորական կիրառութենէ դուրս մնացած է, և միայն ստիպողական պարագաներու կը գործածուի։ Ընդհանրապէս շուրջ 16 քառակուսի մէգր տարածութեամբ և 2 կամ 2,50 մէգր բարձրութեամբ սենեակներ են, յատակը քար, պատերը հաստ և առաստաղը կամար. ունին մուտքի դուռ մը, վրան լուսամուտ, դիմացը պատուհան, պատին մէջ դարակ, եւ անկիւնը կրակի համար խորշ մը. այս է սենեակներուն սովորական կազմութիւնը։ Իբր կարասի վանքէն կը տրուին բազմոցի խոտկուր մը բարձերով, պառկելու անկողին կամ տեղաշոր՝ բարձերով, վեր-

մակ և պատահաբար նաև կապերտ, իսկ խոհանոցի պղնձեղէններէն՝ կաթսայ և պնակ, տապակ և դոյլ։ Որչափ ալ այդ սենեակները և կարասիները դիւրութեանց կողմէն շատ համեստ ըլլան, սակայն ուխտաւորներն կը գոհացնեն, որոնք բարեպաշտական և ոչ դիւրակեցական զգացմամբ կուգան տնօրինական տեղերը։ Աւանդական սովորութիւն էր ուխտաւորաց ամիսներով մնալ Երուսաղէմի մէջ, անոր համար դիւրութեանց իրեղէններէն մաս մը մէկտեղ կը բերէին, մաս մըն ալ տեղւոյն վրայ իրենց կողմէ կը հոգային։ Այս չափ ինչ ընդհանուր կերպով յիշելէ ետքը, անցնինք զանազան թաղերու նկարագրութիւնն ընել։

62.— *Ուխտաւորաց թաղերուն կեդրոնը կը նկատուի մեծ բակը, զոր արդէն յիշեցինք, և որ կը գտնուի վանքին մեծ դուռնէն սկսող անկիւնաւոր անցքին ծայրը։ Աւագ-թարգմանին պաշտօնատեղին անցնելէն ետքը, ձախ թևին վրայ կը գտնուի սենեկապետ մահտեսիին սենեակը, որ ուխտաւորաց թաղերուն ընդհանուր հսկողն է. նա է բանալիներուն պահապանը և ըստ պատշաճին սենեակները բացողը։ Իսկ ուխտաւորական գործերու ընդհանուր վարիչը դարպասընկալ եպիսկոպոսը կամ վարդապետն է, որուն կարգադրութեանց գործադիրն է հիւրընկալը, իսկ խնդիր ծագած առեն կը միջամտէ աւագ-թարգմանը։ Վանդակապատ մը կայ անցքին ծայրը, որ ուխտաւորական միջոցին փակ կը պահուի և միաբանական թաղերը ուխտաւորականներէն կը զատէ։ Քիչ անդին, նոյնպէս ձախակողմը, Աբեղաթաղի ներքևը, փոքրիկ տեղ մը կայ, ուսկից կը բաշխուին ուխտաւորներու հասցէին եկած նամակները։ Մեծ բակը մը-*

տած ատեննիս աջ կողմերնուս վրայ երկու պզտիկ դուռեր կան, մէկը դէպի անցքը և միւսը դէպի բակը բացուող, որ երկու գետնայարկ մթերանոցներ են, և ուխտաւորներու համար գործածուելիք խոշոր անօթները և անոնց պատկանող բրեղէնները պահելու կը ծառայեն։ Ծուռ սանդուխ կոչուած ոլորապտըտոյտ աստիճաններէն կը բարձրացուի վերի սենեակը, որ երբեմն ուխտաւորաց կը տրուի եղեր, բայց այժմ վերի կողմէն Ս. Մինասի կոչուած պաշտօնատանց թաղին հետ հաղորդակցութեան մտած է և միաբաններու կը ծառայէ, ինչպէս պատրիարքարանի բաժնին մէջ ալ յիշեցինք (յօդ. 25)։ Քիչ մը եւս յառաջելով, միշտ աջ թևերնուս վրայ, կամ բակին արևմտակողմը, կը հանդիպինք Հոգետունի դուռին։ Այս անունը տրուած է գետնայարկ ընդարձակ սրահի մը, որ կը գտնուի Ս. Մինաս թաղին ներքևը, և ուր նոր հասնող ուխտաւորներու խումբը առժամապէս կը զետեղուի, մինչև որ իւրաքանչիւրին կացութիւնն ու կարողութիւնը ճշդուելով, ըստ այնմ յարմար սենեակ մը տրուի։ Այդ առթիւ երեք ժամ ալ ձրի կերակուր կը տրուի նոր հասնող ուխտաւորներու։ Այժմեան սրահը երեք կամարէ կը բաղկանայ, որոնք կը յենուն երկու յաղթ ոտքերու վրայ։ Սրահը 14,20 ու 9,40 մէդր թևերով 133 քառակուսի մէդր տարածութիւն ունի։ Նախնական վիճակին մէջ հինգ կամարէ կը բաղկանայ եղեր Հոգետունի սրահը, իսկ այժմ հիւսիսակողման ծայրի կամարը թարգմանատունին խառնուած է, իսկ հարաւակողման ծայրի կամարը առանձինն սրահ մը կը կազմէ, իբրև Հոգետունի մասնաւոր բաժին։ Հոգետունին դուռէն դուրս ելած ատեննիս երկու կողմերը հինգ սենեակ կը գտնենք, երկերկու

երկու կողմերը, ու վրայի վրայ և մէկ հատ ալ առանձինն հիւսիսային անկիւնը։ Հինգին ալ դուռները իրարմէ տարբեր ուղղութեամբ կը բացուին։ Այս սենեակները պարագայից համեմատ թէ՛ իբր Հոգետունի մաս կը գործածուին, և թէ ուխտաւորաց բնակութեան կը տրուին։ Բակին մէջ դէպի հարաւ յառաջելով՝ աջակողմեան անկիւնը կը գտնենք ընդհանուր ճեմիշները, որ առաջ աւելի դուրս զետեղուած են եղեր։ Ծակատնիս կը տեսնենք տպարանը, զոր արդէն նկարագրեցինք։ Մեծ ու փոքր սրահներէն զատ 5 սենեակ ունեցանք Հոգետունի բաժնին մէջ։

63. — Տպարանի կամարներուն արևելակողմը 21 ոտքով սանդուխ մը մեզ կը բարձրացնէ Պէքեար-բաղը, այսինքն է Ամուրիներու թաղ, այսպէս կոչուած՝ մինակ գլուխ եկող այր ուխտաւորներու գործածութեան համար։ Կամարակապ և երեսքաց ճեմելիք մըն է այս թաղին բակը, վանքի մեծ բակին վրայ նայող, 21 մէղր երկայն արևելքէ արևմուտք, և երկու մէդր լայն։ Ասոր վրայ կը բացուին 6 սենեակներ, իւրաքանչիւրը 3,60 մէդր թևերով, և 13 քառակուսի մէդր ընդարձակութեամբ, որ է ըսել սովորական չափէն ալ պզտիկ։ Սենեակներու ներքինը ընդհանուր ձևին հետևողութեամբ է։ Ծեմելիքին արևմտեան ծայրը կը գտնուի պատրիարքարանի մառանը, զոր այնտեղ յիշած ենք (յօդ. 28)։ Թաղը ամողջ տպարանի աջակողման վրան է։

64.— Պէքեար-բաղի ճեմելիքին արևելեան ծայրը եղող դուռէն կը մտնենք Թօզար-բաղ, որ է Նեղօկլիացւոց թաղ, որոնք յայտնի չէ թէ ինչ արժա-

նիքով անուններ տուած են այս թաղին, զի մէկ տեղացի ուխտաւորներուն սովորաբար որոշ թաղի մը մէջ հաւաքուիլը արժանիք մը չէ։ Թաղը ամբողջաբար կը գտնուի տպարանին վրայ, և շինուած է Այնթապցի Եղիազար պատրիարքէն։ Կողմնակի մուտէ մը կը մտնենք Թաղին բաց բակը որ արևելքէ արևմուտք 34 մէտր երկար է ու 6,75 մէտր լայն, և 230 քառակուսի մէտր ընդարձակութիւն ունի։ Մաքուր և օդաւէտ դիրք մը ունի, և Թաղերուն կարգին երկրորդական աստիճանէ կը համարուի։ Բակին արևմտեան ծայրը հաստատուն զետեղուած են երկու մեծամեծ կաթսաներ ներքին հնոցով, և անոնց առջևը բակէն մաս մը ծածկուած է, և մօտն ալ կը գտնուի ընդարձակ ջրրամբար մը։ Այդ պատրաստութիւնները կը գործածուին թէ՛ մեղրամոմ հալեցնելու և ճերմկցնելու, և թէ ուխտաւորաց տրուած տեղաշորերը ու վերմակները ու բարձերը լուալու՝ երեսովը ու բուրդովը։ Այդ մաքրութիւնը տարուէ տարի կը կատարէ մայրապետներու խումբը, Համբարձման մօտ օրերը, ուխտաւորներուն ցրուելէն ետքը։ Թօղաթ-թաղը 19 սենեակներ ունի, թէ՛ բակին երկու կողմը դէմ դէմի, և թէ մուտքին վրայ՝ արևելեան գլուխը։ Սենեակներ ընդարձակութեամբ իրարմէ քիչ տարբերութիւն ունին, 13–17 քառակուսի մէտր տարածութեամբ։ Հիւսիսակողման սենեակները Պէքեար-թաղի սենեակներուն պատկեց են, և միայն բակին կողմէն լոյս կ'առնեն։ Սենեակի մը չափ տեղ մը ճեմիչներու տրուած է, ուրիշ մաս մը մթերանոց է, և մաս մըն ալ պատրիարքարանի մառանին կը պատասխանէ (յոգ. 28 և 63)։

65. — Պէքիար-Թաղ տանող սանդուխէն վար իջնելով, և երեսնիս դէպ հիւսիս յառաջացած ատեննիս, աջ կողմերնիս կամարի ներքևի դուռնէն 16 ոտք մանաւոր սանդուխով կը բարձրանանք Զարտախ կամ Տաղաւար յարկաբաժինը, Եադուպ ամիրայի սենեակ կոչուած, որ երբեմն պատրիարքներու ամարանոց է եղեր, և կը բաղկանայ մի լաւ և երեք մանր սենեակներէ, բնակութեան մը յարակից պահանջներով։ Այժմ ալ տրամադրելի տեղերու մէջ լաւագոյններէն մէկն է։ Մուտքի դրան քովն է վարժարան տանող անցքը, և անոր մօտը սենեակ մը Զարտախին ներքև, և ուրիշ ընդարձակ սենեակ մը անոր գլխացը. անկէ անդին երկու գետնայարկ մանր սենեակներ՝ Շողբաթաղի ներքև, սենեակ մըն ալ Շողբաթաղի սանդուխին վարը։ Սանդուխը անցնելով դէպ արևելք քալած ատեննիս, դարձեալ 3 մանր գետնայարկ սենեակներ կան և չորս ալ վերնայարկ սենեակներ, որոնց սանդուխը ծայրն է, մեծ ջրհեղջ հորին քովէն։ Վերնայարկի երկու սենեակներ Օտապաշիի անուանի ներքև դարպասընկալի ծառայեր են երբեմն։ Այս 16 սենեակները, Զարտախի չորսերն ալ մէջն ըլլալով, մեծ բակի չուրջը կը գտնուին, եւ յատուկ մաս մը կը սեպուին, թէպէտ թաղ մը չեն կազմեր։ Զարտախի ու վերնայարկի սենեակներուն երեքէն զատ, մնացածները պզտիկ են և շատերը՝ գետնայարկ։ Ասոնց մէջ տեղը պզտիկ կամարի մը ներքև պզտիկ ախոռ մը կայ, և ուրիշ կամարի մը ներքև ալ մեծ դուռով ընդարձակ մթերանոց մը կայ, ուխտաւորներու կարասիները զետեղելու կամ հաւաքելու, կամ կանուխ հասածները պահելու համար։ Այս տեսակէտէն հնար է սոյն մթերանոցը իբր Հոգետունի մաս սեպել։

66.— Քիչ մը եռ դառնալով, 15 ոտք սանդուխով կը բարձրանանք Նորաքաղի արտաքին մասը, ուր կան 4 լաւ սենեակներ, մեծ բակի վրայ պատուհաններով, որոնք երբեմն պատրիարքական փոխանորդի և լուսարարապետի և ուրիշ գլխաւորներու ամարանոցներ են եղեր, ինչպէս Զարտախը՝ պատրիարքին։ Այժմ ալ ատոնց մէջ կը գտնուին նըշանաւոր կամ պաշտօնական հիւրեր, զի չորս սենեակներէն երկուքը ներքին բաժին ալ ունին։ Աւելի առաջ քալած ատեննիս կը գտնուինք սրահի նման անցքի մը մէջ, որուն ծայրը Թօղաթ-թաղի մէջ կը բացուի, և միւս ծայրն ալ Պաղչէ-թաղին վրան կ'ելլայ։ Այդ անցքին մէջ դիզուած են ուխտաւորներու տրուելիք բազմոցի խոտկուրները և անոնց բարձերը, բոլորն ալ առանց երեսի։ Անցքին քովն են երկու սենեակներ, ուր դիզուած կը պահուին ուխտաւորներու տրուելիք պղնձեղէններ, ընդ ամէնն իբր 500 կտոր։ Բուն Տօրաթաղը բաց բակ մըն է 20 և 5 մէտր թևերով, որուն չուրջը կը գտնուին 9 սենեակներ, տարբեր ընդարձակութեամբ, 20 է 25 քառակուսի մէտր տարածութեամբ, և սրահ մը իբր 60 քառակուսի մէտր ընդարձակ։ Ասոնց մէջ դիզուած են տեղաշորեր եւ բարձեր, վերմակներ և կապերտներ, և այս դէզերէն կ'առնէ թաղս իւր անունը։ Թէպէտ այս կերպով բոլոր Տօրաթաղը սովորաբար խափանուած կը մնայ, բայց ուխտաւորութեան միջոցին, երբ որ ամէն բան կիրառութեան կը տրուի, թաղն ալ ուխտաւորներու բնակութեան տրամադրելի կը դառնայ իւր 15 սենեակներով և 2 սրահներով։ Պատրաստ կարասին իբր 300 ձեռք կը հաշուուի, իւրաքանչիւր ձեռքը իւր տեղաշորով ու խոտկուրով ու վերմակով և յարակից բարձերով։

67. — Զարտախ յարկաբաժինէն Ծօրաթաղի սան-
դուխը եկած ատեննիս, աջ կողմերնիս կամարակապ
լայն անցք մը թողուցինք, ուր կը դառնանք Ծօրա-
թաղի սանդուխէն իջնալով։ Այդ անցքը Քէրէճխանէ
անունով կը կոչուի, զի անոր ներսը կը գտնուին ըն-
դարձակ և կամարակապ երեք կտոր նկուղներ, ուր
կիր կը մարեն եւ կը մթերեն, եւ յարակից պլտոյքը
կը պահեն եղեր։ Մեծ ջրհոր մը և ընդարձակ կրակի
տեղ մըն ալ կայ, նոյն նպատակով պատրաստուած։
Կամարներու ներքև չորս ալ գետնայարկ սենեակներ
կան, որք թերևս առաջ գործարանին աշխատաւորաց
յատկացեալ էին, բայց այժմ հասարակ կիրառութեան
կարգ են անցած։

68. — Քէրէճխանէի անցքին մէջէն բացուած
դուռէ մը կը մտնենք Նոր-բաղը, Զաքարիայէ հիմ-
նարկուած և Կիրակոսէ աւարտած 1848ին։ Այս թա-
ղը, որ ուխտաւորականներուն ամենէն լաւն է, թէ՛
օդաւէտութեամբը, թէ կերպարանովը եւ թէ ներքին
կազմութեամբ, նման է Կ. Պոլսոյ հին մեծ խանե-
րուն. երկյարկանի է, կամարակապ և երեսբաց ճե-
մելիքներով, որոց վրայ կը բացուին սենեակներուն
դուռները։ Դիրքը հիւսիսէն դէպ հարաւ կ'երկարի,
բայց ձևը կանոնաւոր քառանկիւն մը չէ, զի հիւ-
սիսային թևը, որուն մէջ է մուտքը, կրկնապատիկն
է հարաւակողման թևին, և արևելեան թևն ալ շե-
ղակի շինուած է։ Միջավայրը ընդարձակ բակ մըն է,
որուն կեդրոնը պարտէզ մըն ալ յարդարուած է, մեծ
ռօսով մը եւ նարնջենի ծառերով եւ ծաղիկներով,
ուսկից ծագած է Պաղչէ-բաղ կամ Պարսիզաբաղ կո-
չումը, որով աւելի ստէպ կը յիշուի Նոր-բաղը։ Բաց

բակի անկանոն քառակուսիին տարածութիւնը կրնայ հաշուիլ իբր 450 քառակուսի մէդր։ Հիւսիսային թեւը սենեակներով և ճեմելիքով կազմուած չէ, այլ մուտքէն զատ մէկ կանոնաւոր սենեակ և երկու փոքր մթերանոցներ կը պարունակէ, վրանին թաւէ թև տանող բաց անցքով մը, որով թաղը երեք թևեր միայն ունեցած կ'ըլլայ։ Կամարակապ եւ հաստատակառոյց եւ երեսրայ ճեմելիքը, առջեւի պատերուն կամ լաւ եւս կամարներու ոտքերուն և զանոնք միացնող մասերուն թանձրութիւնը դուրս թողլով, 4.25 մէդր լայնութիւն ունի։ Ճեմելիքին երկայնութիւնն է 35 արեւմըտեան, 15 հիւսիսային, և 50 արեւելեան թևերուն վրայ, բովանդակ 100 մէդր երկարութիւն։ Սենեակներուն թիւը 23 է երեք կողմերուն վրայ, հիւսիսակողման միակ սենեակն ալ համրելով։ Սենեակներուն ընդարձակութիւնը 24 քառակուսի մէդր խորաքանչիւրին, միայն հարաւ-արեւելեան անկիւնը բաց է, և ճեմելիքը երկնցած է մինչև չէնքին պատը։ Վերջին սենեակն ա՛լ աւելի ընդարձակ է և ներքին բաժանում ունի։ Սենեակներուն ներքին կազմութիւնը ընդհանուր ձևին յարանման է. դուռ, լուսամուտ, պատուհան, դարան և կրակարան։ Արևմտեան սենեակներուն պատուհանները շատ մանր են եղած, սակայն սենեկապետ մահտեսի Սարգիս Պաղտասարեան մեծկակ պատուհաններ բանալ տուած և չէնքին վըրայ նորոգութիւններ ալ ընել տուած է իր ծախքով 1908ին, և այս թևին անկիւնի թիւ 9 սենեակը առժամաբար իրեն համար ամարանոց յարդարած է. իսկ արեւելեան կողմի սենեակներուն պատուհաններն ալ մեծցնել հնար չէ եղած, քաղաքացւոց տուներուն հետ պատկից ըլլալնուն համար։ Այս կողմի ճեմլի-

ներն ալ վերցուած են, և կը միան հիւսիս-արևելեան անկիւնին մէջ զետեղուածները։

69. — Երկու սանդուխներ հիւսիս-արևելեան և հարաւ-արևմտեան անկիւնները, իւրաքանչիւրը 20 ոտքով կը հանեն վերնայարկը, որ յար եւ նման է ներքին յարկին բոլոր ձևերովը և չափերովը։ Միայն արևելեան ճեմելիքին հարաւային ծայրը սենեակով փակուած է, մինչ վարը բաց թողուած էր՝ մինչեւ չէնքին արտաքին պատը։ Սենեակներուն թիւը 21 է, և հարաւային թևին անկիւնի սենեակները աւելի մեծ են։ Ճեմելիքին կամարներուն միջոցներ ցած վանդակով պատսպարուած են, ինչպէս է ներքնայարկի ճեմելիքին երեսն ալ։ Իսկ ճեմիչներ հիւսիս-արևելեան և հիւսիս-արևմտեան անկիւններն են։ Աւելի պարագայ մը չունինք աւելցնելիք, քանի որ ձևեր ու չափեր ներքնայարկին վրան բացատրուած են։ Պարտիզակթաղը ո՛չ միայն իւր նորութեամբ եւ մաքրութեամբ, այլ եւ օդաւէտ ըլլալուն, նախապատիւ համարուած է վանքին բոլոր թաղերուն վրայ, միաբանականներն ալ մէջն ըլլալով։ Այս պատճառով երբոր Զատկի և Աշխարհամատրան կիրակիներուն միջոցին ուխտաւորներ կը քաշուին եւ ամառուան տօթն ալ կը սկսի տիրել, սովորութիւն եղած է որ վեղարաւոր և ուրարաւոր միաբաններ, իբր օդափոխութեան տեղ՝ Պարտիզակթաղին սենեակները կը փոխադրուին, ուր ոչ միայն աւելի հովասուն բնակարան մը կ'ունենան, այլ եւ ճեմելիքներու մէջ և տանիքներուն վրայ օդ առնելու դիւրութիւն կը վայելեն։ Այստեղ կը մնան մինչև Վարագայ Խաչի կամ Գիւտ Խաչի տօնը, երբ ուխտաւորներուն համար պատրաստութիւններ կը սկսին,

որոնք այդ տօներէն ետքը հետզհետէ կը հասնին։

70.— Նոր-Թաղէն ելլելով՝ կը դառնանք մեծ բակը, և դէպ արևելք դառնալով չրջաբակին ծայրը սանդուխ մը կը տեսնենք վեր ելլող, բայց մենք նախապէս սանդուխին ներքևը մտնենք, և վար իջնող 4 ոտք սանդուխէն երթանք գետնայարկ սենեակները տեսնելու։ Փոքրիկ բակերու և նեղ անցքերու վրայ բացուող փոքրիկ դուռներ և մանրուկ լուսամուտներ են երևցածները, անոնց ետևը եղող խուցերն ալ հազիւ 8 էն 10 քառակուսի մէդր տարածութիւն ունին, քանի մը հատի բացառութեամբ։ Ո՛չ կանոնաւոր յատակագիծ մը ունին, և ոչ նախագծուած կարգի մը վրայ շինուած են, զի հին տուներ են, որոնք գնուելով և հետզհետէ իրարու միացուելով թաղի ձև են առած։ Ժամանակ մը լաւ գործածական և ուխտաւորներու գոհացուցիչ և բաւարար բնակարաններ են եղած այս խուցերը, բայց տարիներէ ի վեր լքուած, շատեր կիսաւեր կերպարան առած են, և մասամբ ալ փլած և անհետացած են։ Թաղերուն գետիններն ալ անհաւասար են մնացած, և մէկէն միւսը անցնելու համար երկու երեք ոտք ելլելու կամ իջնելու է, ինչ որ իրարմէ անկախօրէն շինուած ըլլալնին կը հաստատէ։ Առաջին դիմացնիս ելլողը Տէմիրճանէ-բաղճ է 7 գոհացուցիչ սենեակներով. իսկ թաղն իւր անունը առած է երբեմն այստեղ դարբինի գործարան մը գտնուելէն, որ այժմ պարապ կը մնայ, և կրակի հին փուքերն ալ մէջը կը տեսնուին մէկ կողմ թողուած։ Երկրորդը Մարանկօզ-բաղճ է, 5 սենեակով. անունը առած՝ մէջը հիւսնի գործարան եղած ըլլալէն։ Կիմոնճի Ճերքեսի-բաղ կոչուածն է երրորդը՝ 6 սեն-

եակով։ Անոր մօտը Խճճիր–բայըր՝ 4 սենեակով և Նառ–բայըր՝ 7 սենեակով, ժամանակին այս տեղեր եղող թզենիէ մը և նռնենիէ մը անունին առած։ Բովանդակ 29 խուցեր, մեծաւ մասամբ սովորական գործածութենէ դուրս մնացած, որոց անյարմար դիրքն ալ չի քաջալերեր նորոգութեամբ բարւոքել։ Այս հինգ թաղերուն վրայ շինուած են յետոյ Լիմոնի–բայը եւ Հաճճա–բայը, որոնց երթալու համար, եկած անցքերնէս ետ դառնալով, նորէն մեծ բակը կուգանք։

71.— Այս անգամ վերեւ յիշուած արեւելեան ծայրի սանդուխէն վեր կ'ելլանք, եւ 11 ոտք բարձրանալով կը գտնուինք Իզմիր–բայըի դուրսի մասին մէջ։ Մեր ձախը կը տեսնենք Սրէճաւուր կոչուած երեք սենեակները, որ առանձին դուռով եւ ներսը պզտիկ բակով մը իբրեւ յատուկ յարկաբաժին պատուած են։ Իսկ աջ կողմերնիս կը տեսնենք երկու բաւական ընդարձակ եւ լուսաւոր եւ օդաւէտ սենեակներ, որոնց առջինը խոստովանանոր սենեակ, և երկրորդը Հին իսրայէլի սենեակ անունը կը կրեն, անշուշտ խոստովանահայր վարդապետ մը և նորադարձ հրեայ մը անոնց մէջ բնակած ըլլալէն։ Այդ սենեակներուն առջեւէն անցնելով և 3 ոտք ևս բարձրանալով կը գտնուինք Իզմիր–բայը, որ կը պարունակէ 7 սենեակներ մէկ գծի վրայ, և երկուք ալ ծայրերը, դարձքին վրայ։ Կանոնաւոր քառանկիւն և 46 քառակուսի մեդր տարածութեամբ բակի մը վրայ, առջեւնին բաց եւ լուսաւոր սենեակներ են, որոնք բարեկեցիկ Զմիւռնացիներն ալ գոհ են թողուցեր։ Այս սենեակներուն ծայրէն 9 ոտք վար իջնալով կուգանք Իզմիր–բայըն ներքեւը, որուն Քիւրէճ–բաղ անունն ալ կը տրուի,

վերեւ յիշուած (յօդ. 67) կիր մարելու եւ պահելու մթերանոցներուն միւս ծայրին յարակից ըլլալուն համար։ Հինգ սենեակներ ալ այստեղ կը գտնուին, որոնք յարմարագոյն է Իգմիր–թաղին մէջ համրել, զի արձանագրութիւնն ալ կ'ըսէ թէ Գանձակեցի Կարապետ պատրիարք 12 սենեակներ շինել տուած է ՌՄԺԴ (= 1765) թուականին, որք են 7 վերի եւ 5 վարի սենեակները, իսկ 2 ետքէն աւելցուած եւ 5 թաղը չմտած եղողներն ալ համրելով՝ կ'ունենանք 19 սենեակներ որ միեւնոյն Իգմիր–թաղի անունին ներքեւ կրնան առնուիլ։

72. — Քիչ մըն ալ յառաջելով և 4 ոտք եւս բարձրանալով կը գտնուինք Հանիս-բալը, աղաւաղմամբ Անիս-բաղ կոչուած, զոր շինած է ՌՃՀԹ (= 1730) թուին Շղթայակիրի փոխանորդ Երուսաղէմացի Յովհաննէս եպիսկոպոսը, որ է ծանօթ գործիչ եւ պատմիչ Հաննա վարդապետը, ի յիշատակ Երուսաղէմի Աթոռին ծանր պարտքերէ ազատելուն։ Դիրքը օդասուն է, բակը ընդարձակ և լուսաւոր, իսկ յատակը կլաէջներով անհաւասար։ Հինգ սենեակներ կան արեւմտեան կողմը մէկ շարքի վրայ, և 4 ալ արեւելեան կողմը, թէպէտ ոչ մէկ շարքի վրայ։ Բակին մէջտեղը 7 ոտք սանդուխով բարձրաւանդակ մը կայ, որուն կտուրը լաւ հանգստանալու տեղ մը կը կազմէ. իսկ մէջը 2 սենեակներ կը պարունակէ։ Այդ ամէնը քարաշէն է հաստ պատերով, սաղիմական շինութեանց ոճով։ Միայն վերջին տարիներ արեւելակողման սենեակներուն վրայ 4 եւս լուսաւոր և ընդարձակ սենեակներ աւելցուած են, բայց տարբեր ոճով, այսինքն պաղտաշի կոչուած փայտածեփ պա-

տերով և կղմինտրէ տանիքով, որ շատ ցանցառ է Երուսաղէմի մէջ, այլ հաճելի և նախընտրելի կ'երևի մայրաքաղաքի կողմերէն եկողներուն։ Ըստ այսմ Հաննա-թաղին բովանդակութիւնը 15 սենեակներ կը պարունակէ։ Թաղին առաւելութիւնը, սենեակներու յարմարութենէն զատ, լաւ սալարկեալ տանիքի վրայ օդաւէտ բացավայր ալ ունենալն է։ Այս Հաննա-թաղին ներքևն էին՝ վերև յիշուած Ինճիր և Նառ թաղերը։

73.— Կը յաջորդէ Յովակիմ-բաղը, որ անունը կ'առնէ զայն շինող Բանաքեացի Յովակիմ պատրիարքէ որ վախճանած է ՌՄԽԲ (= 1793) թուին։ Թաղը գետնէն 13 ոտք բարձր է, եւ շինուած է ներքևի սենեակներուն վրայ, որոնք Խուրմա-բաղ կոչմամբ ծանօթ են, զի ժամանակով արմաւենի մը գտնուած է այս տեղ։ Խուրմա-թաղը 7 գետնայարկ սենեակներ կը պարունակէ զանազան դիրքերու մէջ։ Իսկ Յովակիմ-թաղը առաջին յատակին վրայ 3 սենեակ ունի, մէկը աւելի մեծ և մէկն ալ Գեղեցիկ անունով արձանագրուած, և երկու սենեակներ ալ կան 5 ոտք աւելի բարձր դիրքի վրայ։

74.— Թաղ մըն ալ Նիկոմիդացի Գաբրիէլ պատրիարք շինած է ՌՄԿԸ (= 1819)ին, որ իւր անունով Գաբրիէլ-բաղ կը կոչուի ցարդ, և ուր կ'երթուի Յովակիմ-թաղէ մասնաւոր սանդուխով մը։ Թաղին յատակն ալ անհաւասար է, վարի մասին մէջ 2 սենեակ կայ, 4 ալ վերի մասին մէջ, որոնցմէ մէկը հաղորդակցութիւն ունի մերձակայ սենեակներուն հետ, որք կը կազմեն Հին Տպարանը, և այժմ թաղի վե-

բածուած են։ Սենեակները չափաւոր են, և բարձր դիրքովը օդասուն և լուսաւոր ալ են։ Այդ պարագային, և մանաւանդ Ս. Թէոդորոս եկեղեցւոյն կից ըլլալը, առիթ տուին, որ Ս. Թէոդորոս եկեղեցին մատենադարանի վերածուելէն ետքը, այդ սենեակներուն մէջ զետեղուին նորընծայ աբեղաները իրենց քառասունքը անցընելու, հոգևորական պաշտամունքը միշտ նոյն եկեղեցւոյն մէջ կատարելով, և դիրքին յարմարութենէն օդ առնելու օգտուելով։ Գաբրիէլ-Թաղին ներքևը կը գտնուի Խրիմ-թաղը, ուր 7 գետնայարկ սենեակներով, որոնք մասամբ Ս. Թէոդորոս եկեղեցւոյն ներքևն ալ կը մտնեն։

75. — Գաբրիէլ-Թաղէն կողմնակի անցքով եւ 4 ոտք սանդուխով կ՚իջնենք Լիմոն-թաղը, որուն ներքևի գետնայարկները յիշեցինք արդէն (յօդ. 70)։ Չափաւոր բակի մը վրայ 5 սենեակներ կը բացուին, ամէնն ալ բաւարար բնակարաններ։ Այդ բակին արևելակողմը 5 ոտք սանդուխէ վեր բարձրաւանդակ մը կայ, որ 2 սենեակներ կը պարունակէ, առջևը երկու բաց մուտքով, և որ սովորաբար Քէօշկ անունով կը յիշուի։ Լիմոնի բակէն յառաջելով՝ յարակից մաս մըն ալ կը գտնենք, դարձեալ 5 սենեակով, որոնցմէ անկիւնի սենեակը Մասքեոս վարդապետի անունով ճանչցուած է և արձանագրութիւն մը կը յայտնէ, թէ ՌՄԾԴ (= 1805) տարին շինած է զայն Զարազցի Մատթէոս լուսահան վարդապետը։ Այս կերպով Լիմոն-Թաղին սենեակներուն թիւը 12ի կը լրանայ։ Աւելի առաջ անցնելով և պարապ բակէ և պզտիկ կիսաբոլորակ սանդուխէ անցնելով, կը հասնինք Ցորենաքաղի ընդարձակ բակը։

76. — Կեդրոնական մեծ բակէն ետքը ընդարձակագոյնը Ցորենաթաղին բակն է, որ 19 և 13,50 մէդր թևերով 256 քառակուսի մէդր տարածութիւն ունի, լաւ սալարկուած է, և մայր եկեղեցւոյ արեւելակողմը կը գտնուի։ Դիրքը գետնէն բարձր է, զի այդ բակին ներքևն է հին աղօրիքը, հաստաբուռն կամարներով և յաղթ ոտքերով, այժմ խախտարուած և փակուած (յօդ. 36)։ Ցորենաթաղի բակը երբեմն ծառայեր է ցորեն փռելու և մաքրելու, երբ հացագործութիւնը իւր ամբողջութեամբ վանքին մէջ կը կատարուի եղեր, և այս պատճառով Կալի–վրայ անունն ալ տրուած է սոյն բակին։ Սակայն ներքևի ամբողջութիւնը, աղօրիքէն զատ, կը պարունակէ արևմտակողմէն զատուած մաս մը, իբր մայր տաճարին խուղատունը (յօդ. 20)։ Մեծ բակի մէջէն ալ մուտք մը կը տանի աղօրիքի մէջը, ուր այժմ կիր, քար, և կղմինտր և ուրիշ շինուածանիւթեր կը մթերուին առ ձեռն կիրառութեան համար։ Այս կողմի մուտքը յարկածածուկ է, զի վրայի մեծ շէնքը դէպ առաջ ընդարձակուած է երկու հաստ ոտքերու վրայ։ Սոյն յարկածածուկին ներքև կողմնակի սանդուխով առանձնացած և կղզիացած սենեակ մըն ալ կայ, եւ երկու սենեակներ ալ կան մուտքի անցքին երկու կողմերը։ Եթէ մեծ բակէն գալով Ցորենաթաղ մտնել ուզէինք, 17 ոտք սանդուխ մը պիտի ելլէինք, լայն և ցած ոտքերով, որ նորոգ յարդարուած է 1897ին։ Ցորենաթաղի բակը մտնելէն ետքը, աջ թևին վրայ կամ բակին հարաւակողմը, առաջին տեսնուած դուռը մէջէ մէջ երկու սենեակներու մուտքն է, իսկ յաջորդ երկու դուռերը՝ մէյմէկ նեղ ու փոքրիկ սենեակներ են։ Ճակատը կամ բակին արևելակողմը, եր-

կու դուռներէն առաջինը Կիրակոս աղայի կոչուած սենեակն է, որ յարկաբաժինի կը նմանի, պզտիկ բաց բակով, և պզտիկ խոհանոցով և ճեմիչով, ուր բնակեր է երբեմն Բինկեանցի Քարուկենց Կիրակոս աղա մը։ Իսկ միւս դուռէն կը մտցուի աւելի մեծկակ բաց բակ մը, որուն ձախ կողմը կը գտնուին երկու սենեակներ, իսկ աջ կողմը լուսաւոր և ընդարձակ սենեակ մը կայ, Գուպպէլի կոչուած, առաստաղը գմբեթաձև ըլլալուն համար։ Ցորենաթաղի բակը դառնալով, 10 ոտք սանդուխով կը բարձրանանք յարկաբաժին մը, որ մասամբ կը տարածուի վերջերս յիշուած երկու սենեակներուն վրայ։ Այժմ երեք սենեակներ կը պարունակէ այդ յարկաբաժինը, բայց առաջ միակ սենեակ է եղեր, Ցորենատան պահապան միաբանին յատկացուած։ Վերջէն անոր դիմացի փայտէ միջնորմով բաժնուած ախուրանոցը սենեակի է փոխուեր, իսկ երրորդ աւելի կոկիկ սենեակը ցորենապահ Պետրոս պապան է շիներ, առջևն ալ ծածք մը աւելցուցեր, թեթև շինութեամբ և կղմինտրէ տանիքով։ Բակին հիւսիսակողմը սենեակ չկայ, որով Ցորենաթաղի բովանդակ սենեակները կ՚ըլլան ընդ ամէնն 12 հատ, թէպէտ իրարմէ շատ տարբեր պայմաններով։

77. — Այս թաղին մէջ նշանաւոր եւ աչքառու մաս մը կայ, որ է բակին հարաւակողման հին սենեակներուն վրայ բարձրացած նոր և գեղեցիկ յարկաբաժինը, որ Նոր-Զարտախ անունն ալ ունեցեր է, և զոր իբր պատրիարքներու ամարանոց կառուցեր է Կիրակոս պատրիարք 1849ին, և որ վանքին լաւագոյն շէնքն եղած է այն ատեն, զի հոյակապ պատրիար-

քարանն ու ճեմարանը յաջորդին օրով շինուած են։ Ցորենաթաղի բակին յատակէն 17 ոտք սանդուխով կ'ելլուի այս յարկաբաժինը, որ ունի 4 լաւ սենեակներ և մէջտեղը եռամասնեայ սրահ մը, այսինքն մուտքը, այս օրեր ապակեփեղկով գատուած, և միջին մասը և վերին մասը՝ որ միւս մասերէն երեք ոտք ևս բարձր է։ Սենեակները համաչափ չեն, հարաւարևմտեան անկիւնի սենեակը ամենէն մեծն է, 25 քառակուսի մէտր տարածութեամբ. միւսները նուազագոյն՝ մինչեւ 16 քառակուսի մէտր։ Առաստաղները կամարակապ եւ բարձր են, պատուհանները մեծ եւ շատ, յարկաբաժինը լուսաւոր եւ օդաւէտ, արդէն դիրքն ալ բարձր է և ամէն կողմէն ազատ։ Ունի նաև իւր յատուկ խոհանոցը և կարեաց ու աւելորդաց տեղերը։ Հոյակապ պատրիարքարանին շինութենէն ետքը պատրիարքները այլեւս պէտք չեն ունեցած այս տեղ փոխադրուելու, որ սկսած է գործածուիլ իբրեւ վերապահեալ հիւրանոց։ Մկրտիչ Խրիմեան եւ Մատթէոս Իզմիրլեան, նախկին պատրիարքներ եւ ապագայ կաթողիկոսներ, այս յարկաբաժինի մէջ բնակեցան, երբ կայսերական հրամանով Երուսաղէմ ղըրկուեցան։ Այժմ ալ ուրիշ նախկին պատրիարք մը(*) կը գտնուի սոյն յարկաբաժինին մէջ, որ որչափ ալ ուխտաւորաց թաղերով շրջապատուած, սակայն միաբանական բնակութեանց յարակից դարձած է։

78. — Ցորենաթաղի բակին արևմտակողմը երեք բարձր և երկու մէտր լայն անցք մը կազմուած է, որ կը

(*) Նոյն ինքն տողերուս գրողը՝ Մաղաքիա Արքեպս. Օրմանեան։ Ծ. Հ.

տանի ուխտաւորական ներքին թաղերը։ Առաջինը որ դիմացնիս կ'ելլայ Պրուսա-բաղն է, որուն չի մտած՝ երկու սենեակներ կան ձախ կողմը, և հատ մըն ալ աջ կողմը՝ 5 ոտք աւելի բարձր, և անոնց մօտ անձուկ տեղ մը, որ հազիւ թէ սենեակ կրնայ կոչուիլ։ Եթէ ուղիղ յառաջէինք Տէյիրմէն-բաղը կը մտնէինք, զոր յիշեցինք միաբանական թաղերուն կարգը (յօդ. 36)։ Պրուսա-թաղին բաց բակը 11 և 5 մէտր թեւերով 55 քառակուսի մէտր տարածութիւն ունի, եւ անոր վրայ կը բացուին 11 սովորական սենեակներ, և մէկ նեղ տեղ մը. իսկ ճեմիշները ետեւօք առանձինն մաս կը կազմեն։ Սենեակներուն լոյսը բակին կողմէն է միայն, զի ետեւները գոց են։ Արեւելակողման սենեակներուն ետեւը կ'իյնայ Ցորենատունը, միակտուր ընդարձակ շտեմարան մը, բակին երկայնութեամբ, և բակէն մէտր մը աւելի լայն եւ սենեակներէն երկու մէտր աւելի բարձր, որ 300 և աւելի խորանարդ մէտր պարունակութիւն կուտայ։ Շտեմարանին դուռը միւս կողմէն է, Ցորենապահի կոչուած սենեակին քովէն (յօդ. 76), իսկ պատուհանները՝ սենեակներէն աւելի վեր բարձրացած պատին վրայ են։ Քանի որ վանական մատակարարութիւնը պատրաստ հաց գնել սկսած է, ցորենատունը պարապ կը մնայ, և միայն ուխտաւորաց շատութեան առթին անոնց կիրառութեան կը տրամադրուի, բայց հիմնովին ձեւը փոխել յարմար չի դատուիր, քանի որ ընդարձակ շտեմարան մը՝ երբ և ըլլայ կրնայ օգտակար դառնալ։ Պրուսա-բաղին դուրսէն Տէյիրմէն-բաղը տանող դուռը գոց կը պահուի ուխտաւորութեանց միջոցին, միաբանական և ուխտաւորական թաղերը զատելու համար։ Մենք պտոյտնիս շարունակելով եւ Պրուսա-բաղէն ելլալով, 8 ոտք

սանդուխով մը կը մտնենք Ս. Թորոսի ճամպան։

79.— Երկու պատերու մէջ փակուած, լայն անցք մըն է այդ ճամպան. իբր 4 մէդր լայն և 10 մէդր երկայն բակի մը կը նմանի, բայց չուրջը սենեակ չկայ։ Մտած ատեննիս ձախ կողմը ունինք ուրիշ դուռ մը, ուսկից կ'երթուի Ս. Ստեփանոսի մատուռին (յօդ. 20) ընդարձակ տանիքը, որ այժմ բաց է, բայց մատենադարանի կամ թանգարանի փոխարկուելու շատ յարմարութիւններ ունի։ Անկէ անդին ալ կ'անցնուի տանիքի վրայ եղող միաբանական սենեակներուն (յօդ. 38), և այս պատճառով ասոր դուռըն ալ գոց կը պահուի ուխտաւորական միջոցին։ Միակ սենեակ մը կայ Ս. Թորոսի ճամպուն ծայրը, զոր կրնանք Պրուսա-թաղի սենեակներուն հետ համրել։ Նոյն ճամպուն աջակողմեան ծայրը դուռ մը կայ, որ Ս. Թէոդորոսի եկեղեցիին դուռն էր, վարի յարկէն նոր մուտքը չբացուած (յօդ. 36)։ Այժմ երբոր այս դուռէն կ'անցնինք, կը գտնուինք պատշգամբի պէս կղզիացած տեղւոյ մը վրայ, որուն առջևէն վերցուած է Ս. Թէոդորոսի եկեղեցին իջնող սանդուխը, և վերէն միայն կը տեսնուի եկեղեցիին կողմնակի դուռը եւ Թադէոսի ու Սանդխտոյ սեղանը (յօդ. 47), իսկ գլխացը կը գտնուին Գաբրիէլ պատրիարքի կոչուած սենեակները (յօդ. 74)։ Ս. Թէոդորոսի տաճարին յատակէն ալ վար, եւ անոր ներքեւ կը տեսնուին Սըչաճ-բաղ կոչուած նկուղանման սենեակները, թուով 6, որոնց ծակամուտ դիրքը հարկաւ ծագում տուած է Մկճարաղ կոչուելուն։ Քովընտի պատին վրայ, որ Ս. Թէոդորոսի հարաւային որմն է, կը տեսնուին չորս հինգ հատ փոքր խաչքարեր, շատ

հին և հողմի ու անձրևի ազդեցութենէն հալած ու մաշած, և մէկուն զարդերուն մէջ լատիներէն բառեր ալ կը կարդացուին, թէպէտ ներքևի արձանագրութիւնը հայերէն է։ Մտած դուռներնէս ելնելով կը գտնուինք Ս. Թորոսի ճանպուն վերին ծայրը։

80.— Ութը ոտք սանդուխէ իջնալով, և Հեթում թագաւորի անունը կրող ու այժմ ընթերցարանի վերածուած սենեակներուն քովէն անցնելով (յօդ. 51), կը մտնենք Ս. Թորոսի բակը, որ բաւական ընդարձակ է, սակայն բակը ընդհատեալ է երկու մասերու, կամուրջ անցքով միացած, որուն քովէն սանդուխ մըն ալ ներքնագոյն բակերը կ՚իջեցնէ։ Ծուրջանակի 12 սենեակներ կան այդ թաղին մէջ, տարբեր դիրքերով, ինչպէս որ ընդհատումներու ձևը կը պահանջէ։ Սենեակները քիչ ու շատ օդաւէտ են, և Այնթապցիներէ նախադասուած են իբրև իրենց ժամադրավայր։ Վար իջնող սանդուխը 17 ոտք ունի, և ուղղակի կը տանի Խրիմ-բաղը, զոր արդէն յիշեցինք (յօդ. 74), և ուրիշ նշանակելու արժանի պարագայ մը չի ներկայեր։ Ներքևի թաղեր բնական հետևանքով նուազ օդաւէտ և քիչ լուսաւոր են և այժմ շատ գործածական չեն, բայց ժամանակով մինչև իսկ դուռնեբաց ըլլող, այսինքն յատուկ պատարագի և միաբանական սեղանի նուիրատուութիւնն ընելու կարող ուխտաւորներ կը բնակին եղեր ներքևի այս սենեակներուն մէջ։

81.— Ցիշեալ սանդուխէն վար չիջնելով կ՚երթանք Ս. Թորոսի թաղին միւս ծայրը, մեծ դուռի մը հանդէպ, որուն վրայի արձանագրութիւնը կը յիշե-

ցընէ, թէ ՌՃՀԸ (= 1729) թուին Ծղթայակիրը գնած է դուռին անդին մասը և վանքին պարիսպին մէջ առած։ Արձանագրութիւնը Ծղթայակիրի և Կոլոտի անունները զոյգ կը յիշէ, թէպէտ Կոլոտ այդ գնմանց եւ նորոգութեանց ժամանակին Երուսաղէմ գտնուած չէ, բայց Ծղթայակիրը զայն միշտ իրեն հետ և իրեն գործակից նկատած էր՝ հեռուէն ընձեռուած օգնութիւնները իբր ներկայութիւն սեպելով։ Այդ ոճով արձանագրութիւններ ուրիշ կողմեր ալ զետեղած է Ծղըթայակիր։ Դուռէն անցնելով կը մտնենք Ատանա–թաղը, որ 28 մէտր երկայն և 3 մէտր լայն երեսբաց ճեմելիքի մը վրայ 9 սենեակներ կը պարունակէ, սովորականներէն աւելի ընդարձակ եւ բաւական օդաւէտ՝ առջեւը բաց ըլլալուն։

82.— Ատանա–թաղին ներքեւը Զէյթուն–թաղն է, թերեւս Զէյթունցի ուխտաւորներէն առած իւր անունը, ինչպէս Ատանա–թաղը Ատանացիներէն, կամ թէ երբեմն բակին մէջտեղը գտնուող ձիթենիէն, որ այժմ չկայ և արմատախիլ եղած կ'ըսուի, չուրջը գտնուող բազմաթիւ և ընդարձակ հորերուն վրայ պատճառելուն համար։ Հորերէն մի քանին մէջտեղն են, իսկ երկուքը փոքրիկ սենեակներու մէջ առնուած են, զգուշութեամբ մաքուր պահուելու համար։ Վար իջնող սանդուխը 16 ոտք ունի, իսկ սենեակներ 8 են վարի բակին չուրջը, ամէնքն ալ մեծ և ընդարձակ, և բազմաթիւ անձեր պարունակելու բաւական։ Այդ բակէն կը բարձրացուի Ատանա–թաղին հանդիպակաց վերնայարկը, որ ետեւէն Գաբրիէլ–թաղին կը համապատասխանէ, ուր 3 սենեակներ եւս կան, զորս ի դէպ է Զէյթուն–թաղին վրան համրել։ Զէյթուն–թաղին

մէջէն դուռ մը կայ, որ վանքին շրջապատէն դուրս կը հանէ, վանքը հիւսիսակողմէն շրջապատող փողոցին վրայ։ Իսկ ներքին հաղորդակցութիւններ կամ անցքեր կը տանին դէպի Խրիմի և Տէյիրմէնի թաղերը, զի բոլոր թաղեր իրարու հետ հաղորդակցութեան մէջ են, թէպէտ անկանոն և ելևէջ անցքերով։ Չէյթուն-թաղէն Նորէն Ասլան-թաղը բարձրանալով եւ կողմնակի դարձով մը կը մտնենք Հին Տպարանը, ուր 6 սենեակներ եւս կան, և դուռներուն վրայ տակաւին վիմագրատուն, կազմատուն և այլն անուններ կը կարդացուին, թէպէտ շատոնց ուխտաւորական թաղի վերածուած են։

83. — Այս տեղ կը վերջացնենք ուխտաւորական թաղերու պտոյտը, որուն մէջ 27 թաղերու զատ զատ անունները տուինք, եւ սենեակներու թիւը բաւական ստուարացաւ, այնպէս որ մեծ սրահները քանի մը սենեակներու հաւասար նկատելով, անոնցմէ դուրս եղող բնակելի մասերն ալ թիւի անցընելով, և միաբանական թաղերը հաշուելով, եւ հանրային պէտքերու յատկացուած վայրերն ալ իրենց տարածութեան համեմատ գումարի խառնելով, շատ հեռու չենք մնար յառաջ դարձած Երուսաղէմի հազար սենեակներու զրոյցէն։ Սակայն պէտք չէ միտքէ հանել, որ սենեակներու մէկ մասը քայքայուած, մաս մըն ալ անբնակելի վիճակի հասած է, և որ կան է, դիրքով ու հանգամանքներով՝ նորոգութեամբ յարդարուելու իսկ յարմար չի նկատուիր։ Հին ատեններ ասոնց ամէնը կը լեցուին եղեր, և գոհացուցիչ բնակարան մը կը սեպուին եղեր, մինչ այժմ ուխտաւորներն ա՛լ աւելի պահանջկոտ դարձած են, այնպէս որ 1914ին իբր երկու

հազար ուխտաւորները զետեղելու համար վարժարանն ու միաբանական թաղերու մի մասը ուխտաւորներու բնակութեան տրամադրուած են։

Թաղերը նկարագրած ատեննիս, չյիշեցինք ուխտաւորներու համար կարեւոր եղող տնական կամ անձնական պէտքերը։ Միայն Շորաթաղի մէջ յիշեցինք կարասւոյ վերաբերեալ առարկաները, ինչպէս են անկողին ու վերմակ, բարձ ու բազմոց, դոյլ ու կաթսայ, խսիր ու կապերտ որոնք համեստ պայմաններու ներքեւ կը տրամադրուէին ուխտաւորներու կիրառութեան (յօդ. 66)։ Ծեմիշներ քանի մը թաղերու մէջ, ինչպէս են մեծ բակը, Նոր–թաղը, Իզմիր եւ Պրուսա եւ Հաննա թաղերը յատուկ կողմ մը քովէ քով կը գտնուէին բաւական թուով, իսկ միացեալ թաղերը, անկիւն տեղեր, սանդուխի ներքեւներ, անցքերու մէջեր, զատ զատ զետեղուած են, նախնական և չա՜տ նախնական վիճակին մէջ, և միայն բաց տեղեր գտնուելնէն վտանգաւոր չեն դառնար։ Գրեթէ ամէն թաղ իր մէջը կամ մօտը ջուրի հորեր, կամ աւելի ճիշտ խօսելով՝ ջրամբարներ ունի, որոնք ձմեռուան մէջ կը լեցուէին ընդարձակ տանիքներէ հաւաքուած անձրեւի ջուրով, և ամառնային երաշտութեան ալ կը բաւեն։ Հարիւրի կը հասնին բովանդակ վանքին՝ միաբանական և ուխտաւորական թաղերուն և պարտէզներուն մէջ գտնուած ջրամբարները, շատերը մեծ եւ շատ ընդարձակ։ Ոմանց ջուրերը աւելի յարդարումներով և աւելի զգուշութեամբ հաւաքուելով՝ խմելու կը յատկացուէին, իսկ ուրիշներ առաւելապէս տնական պէտոյից և մաքրութեանց կը սահմանուէին։ Հորերուն ջուրը վանական եւ ուխտաւորական պէտքերու, եւ քաղաքացիներու ու պարտէզներու բաւելէ զատ, ա-

մեն տարի ջուրի վաճառումէն հասոյթ մը ալ կը գոյացնէ վանական սնտուկին։ Աշխատաւոր միաբան մը, սենեկապետի պաշտօնով, կը հսկէ ուխտաւորական թաղերու պահպանութեան և մաքրութեան, և ի հարկին իրեն օգնականներ ալ կ'առնէ։ Տիարպէքիրցի մահտեսի Սարգիս Պաղտասարեան, զոր ուրիշ տեղ ալ յիշեցինք (յօդ. 68), երեսունէ աւելի տարիներէ հետէ այդ պաշտօնը կը վարէ, և յաջորդած է նոյնպէս երկարատև պաշտօնավարով մահտեսիներուն։

---



## ՊԱՐՏԷԶՆԵՐ

84. — Վանքի շրջափակին մէջ կը պարունակուին նաև ազատ հողամասեր, որոնք ճեմելու և օդ առնելու կը ծառայեն որոշեալ խումբերու և որոշեալ սահմաններով, ուստի քանի մը խօսքով անոնց ալ նկարագիրը տալ հարկաւոր կը սեպենք։ Ասոնք երկու մեծ բաժիններու կրնանք վերածել, մէկը վանքին դիմացը, հասարակաց փողոցին միւս կողմը, և միւսը Ճեմարանին շուրջը։ Նոյն իսկ վանքին դրան առջև, սեղանատունի կամարէն մինչև պատրիարքարանի կամարը գտնուող մասը, որ Եսայի պատրիարքէ ընդարձակուելով հրապարակի վերածուած է, օդ առնելու տեղ կը նկատուի, և հեռուներու չգացող միաբաններ պահ մը անոր մէջ կը ճեմեն և ազատ օդ կը շըն-

չեն, զի անցուդարձն ալ չափաւոր ըլլալուն՝ պտոյտներու արգելք չ'ըլլար։ Հրապարակը 60 մէտր երկայն և 15 մէտր լայն է, և 900 քառակուսի մէտր ընդարձակութիւն ունի, և մէջտեղէն կառքերուն թողուած գիծէն զատ, մնացածը սալարկուած է։ Այդ հրապարակին արևմտակողման վրայ բացուող երեք դուռներ դիմացի պարտէզներուն զանազան մասերուն կը տանին։

85. — Հարաւ-արևմտեան անկիւնը երկու ոտք սանդուխով կը մտցուի պատրիարքարանի պարտէզը, որ փոքր անցքէ մը ետքը 40 մէտր երկայն և 30 մէտր լայն և 1200 քառակուսի մէտր ընդարձակութիւն ունեցող տեղ մըն է։ Արևելեան կողմէն 2,50 մէտր լայն սալարկուած մաս մը կայ, ցած պատով և վանդակով ածուներու մասէն զատուած։ Այդ անցքին վրայ են պատրիարքարանի հետ ուղղակի հաղորդակցութեան դուռները, աղաւնոցի և հաւնոցի համար պատրաստուած տեղերը, և ծայրն ալ բաղնիքին հնոցին մուտքը։ Ածուներու սահմանուած մասին հիւսիսային գլուխը աւազան մը կայ, բոյսերը ոռոգելու դիւրութեան համար, և անոր մօտը գետնէն 4 ոտք բարձրացած բարձրաւանդակ մը՝ իբր 100 քառակուսի մէտր տարածութեամբ, և երկրորդ աւազան մըն ալ անոր վրայ։ Պարտէզը մասամբ ծաղիկի եւ մասամբ բանջարեղէնի մշակութեան կը գործածուի, և յաղթ մայրիներով և նորահաս նոճիներով և ուրիշ ծառերով հովանաւորուած է. իսկ արևմտակողմը տաղաւարակերպ և գետնէն քիչ բարձր նստելու տեղ մըն ալ կայ։ Յիշենք նաև չորս եղանակներու միջահասակ մարմարեայ արձանները, իտալական գործեր, որոնք Եգիպտոսէ նուիրուած են պարտէզը զարդարելու։ Պարտիզպան մը

յատկացուած է պատրիարքարանի պարտէզին մշակութեամբը և մաքրութեամբը զբաղելու, որ ուրիշ խոշոր ծառայութիւններ ալ կը կատարէ։

Պարտէզը պատրիարքէն զատ հիւրամեծարութեանց ալ կը գործածուի, և պզտիկ դուռ մըն ալ ետևի կողմէն պարիսպներու ներքև եղող ընդարձակ գետինը կը հանէ։

86. — Հրապարակին վրայ գտնուող միջին դուռն ալ նեղ անցքով մը նոյն այդ ընդարձակ գետնին կը տանի, որուն ձախակողմն է արդէն նկարագրուած պատրիարքի պարտէզը, իսկ աջ կողմը կը գտնուի ուրիշ պարտէզ մը, գլխաւոր վանականներուն խնամքին և կիրառութեան թողուած, և գովութեամբ կը յիշատակուի այդ մասին Տէր Սահակեան Երեմիա արքեպիսկոպոսին հոգածութիւնը, մինչև իր մահը 1900-ին։ Այդ պարտէզը՝ 45 մէտր երկայնք և 30 մէտր լայնք և 1350 քառակուսի մէտր տարածութիւն ունի, և անոր մէջ յիշատակութեան արժանի են մեծայաղթ մայրիներ, պատկերացուելու արժանի։ Այս երկու պարտէզներն են որ Երուսաղէմի օտարազգի հաստատութեանց մէջ նոր հասած մայրիներու սերմն են տուած, և իսկապէս մայրիներու մայր են եղած։ Երրորդ պարտէզի դուռ մըն ալ կը տեսնուի հրապարակին հիւսիսային անկիւնը, և պարտէզը թողուած է առջևի խանութներու վարձակալներուն։ Ասոր ալ տարածութիւնը մերձաւորաբար 1000 քառակուսի մէտր է։ Երեք պարտէզներն ալ կանոնաւոր քառանկիւններ չըլլալուն, և մտած ելած մասեր ունենալնուն, չափերը միջին հաշուով նշանակած ենք, և բովանդակը 3500-4000 քառակուսի մէտր կը կազմէ։

87. — Միջին գօտիէն ներս ընդարձակ գետին մը գտնուիլը յիշեցինք, որուն վերջին գիծը կը կազմեն՝ արեւմուտքէն քաղաքին պարիսպները, հարաւէն զօրանոցի հրապարակը եւ հիւսիսէն դարձեալ քաղաքին պարիսպները՝ Դաւիթի դրան կողմէն։ Իսկ արեւելեան կողմը կը գտնուին նախ վերոյիշեալ երեք պարտէզները, և անոնցմէ ետքը դէպ հարաւ՝ վանքին առջեւի փողոցին շարունակութիւնը, մինչև քաղաքին պարիսպները։ Այդ գետնին հարաւային ծայրը առաջ պատով բաժնուած և մշակեալ մրգաստան է եղեր, խաղողի այգիով, պտղատու ծառերով և նարինջենիներով, զորս անկեր և հասուցեր և խնամեր է Տէր Յովհաննէսեան Աստուածատուր եպիսկոպոս մինչեւ իւր մահը 1900ին։ Բայց իր մահէն ետքը խաթարուեր է, այնպէս որ հին վիճակին և ոչ հետքը կ'երեւի այլեւս, եւ բաժանման պատն իսկ քակուած է, եւ ծայրէ ծայր ընդարձակ ազատ գետին մը եղած է։ Երկայնութիւնը 230 մէտր կը հաշուուի, իսկ լայնքը, հիւսիսէն հարաւ, հետզհետէ աւելցած ըլլալով՝ միջին հաշուով 90 կը գնենք, և 20,000 քառակուսի մէտր ընդարձակութիւն կ'ունենանք, որուն մէջ միայն ցանցառ ձիթենիներ կը տեսնուին։ Գրեթէ անգործածական կը մնայ այդ գետինը, զի և ոչ պտոյտի յարմարութիւններ կը ներկայէ, և մերթ ընդ մերթ աննշանակ վարձքով մը փէլլահ հողագործներու անջուր մշակութեան կը տրուի։ Սահմանագիծ կազմող արեւմտեան պարիսպներուն դուրսի կողմն ալ աթոռական ստացութիւն է, ներսի մասէն ոչ նուազ տարածութեամբ և զառիվայր դիրքով, այնպէս որ երկու մասերը միանալով նշանաւոր ստացութիւն մը կը կազմեն, և օգտակար կիրառութեան ալ կրնան

ծառայել, և նոյն իսկ արդիւնքի աղբիւր դառնալ։

88. — Պարտէզներու միւս մասը Մայրի-թաղին, կամ լաւ ևս վարժարանին և ճեմարանին չուրջը կը պատէ, կամ ուրիշ բացատրութեամբ ընդարձակ գետին մըն է, որուն մէջ կը գտնուին վարժարանն ու ճեմարանը, զորս արդէն նկարագրած ենք (յօդ. 55-58)։ Հետևապէս գետինը անկանոն մասերու բաժնուած է, որք կիրառութեան համար ալ՝ ժառանգաւորացին և նախակրթարաններուն և մանկապարտէզին պտոյտի և խաղի յատկացուած են, և մաս մըն ալ ժառանգաւորացին թողուած է մշակուելու համար։ Մեծաւ մասամբ ծառաստունկ է այդ գետինը, և մէկ մասին մէջ վիթխարի մայրիներ ալ կը գտնուին, բայց բոլորովին բաց ու լերկ խաղատեղիներ ալ կան։ Աւելորդ կը գտնենք իւրաքանչիւր մասը զատ զատ նկատի առնել եւ չափերը ճշդել, եւ բաւական կը սեպենք ըսել, թէ շէնքերը դուրս հանելով՝ մերձաւորաբար 10,000 մէդր քառակուսի տարածութիւն մը կը մնայ պարտէզներուն։ Տպարանին ետևը եղող մասը տպարանին աշխատաւորներուն յատկացուած է, և այժմ աւելի լբբև հաւնոց կը գործածուի։ Պարտէզի երրորդ մաս մըն ալ կայ, բայց անիկայ քաղաքացւոց տուներուն մէջը գտնուելուն, այն կողմի նկարագիրին կը թողունք։

89. — Որովհետև պտոյտի յարմար տեղերը կը նկարագրենք, այդ կարգին յիշենք վանքին մեծ բակն ալ՝ Էջմիածինի տաճարին, և Հոգետունին և տպարանին և Շորաթաղին մէջ տեղը, բաւական ընդարձակ և սալարկուած բացավայր մը։ Միայն Էջմիածինի տա-

ճարին կողմը ուղիղ գիծով է, միւս կողմերը ներս ու դուրս գիծեր են, չէնքերուն հետեւողութեամբ, և միջին հաշուով ի դէպ է իր 2,500 քառակուսի մէտր տարածութիւն տալ բոլորին, որ բաւական ընդարձակ և ճեմելու բաւական բացավայր մը կը ներկայէ, եւ որ մանաւանդ ձմեռուան մէջ իր չոր գետինովը եւ հարաւահայեաց դիրքովը՝ նախադասելի է խոնաւ հողամասերուն։ Պտոյտի դիւրութիւն կ'ընծայեն եւ միաբաններէն ալ սիրուած են վանքին ընդարձակ տանիքները, որ բակին չորութեան եւ արեւոտութեան վրայ, բաց հորիզոն և մաքուր օդ ալ կ'ընծայեն։ Յատկապէս Էջմիածինի տաճարին եւ Աբեղաթաղին տանիքները այդ նպատակին պատրաստուած են, եզերքները երկաթեայ ցած եւ վանդակակերպ պատուարներով։ Նոյնպէս է Ս. Թէոդորոսի տաճարին բարձրագոյն տանիքն ալ, որ շատ կանուխէն խողովակաձև կղմինտրներէ պատուարով պարփակուած է։ Գեղեցիկ և բարձր է Մայրի-թաղի կամ վարժարանի տանիքը իւր չորս թևերուն վրայ, թէպէտ պատուարափակ չէ։ Պատրիարքարանին կողմն ալ նոյն նպատակին կը ծառայեն Թօղաթ-թաղի և Պէքեար-թաղի և Շորաթաղի տանիքները։ Աւելի բարձր և գեղեցիկ է Նոր-թաղին տանիքը, սակայն այն ալ պատուարափակ չէ։ Ընդհանրապէս բոլոր միաբանական և ուխտաւորական թաղերու տանիքները կրնան պտոյտի գործածուիլ, բայց յարմարագոյնները և գործածականները առաջ յիշուած Էջմիածինի և Աբեղաթաղի տանիքներն են։ Մինչև աստ վանքը իւր ամբողջութեամբ, ներսով ու դուրսով, նկարագրած եղանք․ այժմ կ'անցնինք վանքին յարակից մասերուն։

# ՑԱՆԿ







# ԺԱ

## ՍՈՒՐԲ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏ

90. — *Սուրբ Յակոբեանց աթոռական մայրավանքին մեծ շրջափակին մէջ՝ բայց միանգամայն ինքնուրոյն յատուկ մաս կազմող վանք մըն է Ս. Հրեշտակապետը, մայր եկեղեցւոյն հարաւ-արեւելեան կողմը, իւր յատուկ եկեղեցիով և բնակութեան սենեակներով, որ մասնաւոր տեսչութիւն ալ ունի, իւր կըրկնակ նշանակութիւններովը, թէ՛ իբր կուսաստան կամ մայրապետաց վանք և թէ իբր թաղական եկեղեցի, կամ Երուսաղէմացի ազգայնոց եկեղեցական պաշտամանց եւ հոգեւորական պիտոյից մատակարարութեան կեդրոն։ Ս. Հրեշտակապետը ազգային նախնական և անյիշատակ ժամանակաց շինութիւններէն մէկն է, զոր* Մեծամեծ եկեղեցիք *շարքին մէջ կը թուէ Անաստաս վարդապետն հայոց,* 700*էն առաջ, և Տրդատի և Լուսաւորչի օրով շինուած կը ճանչնայ։ Եկեղեցւոյն Հրեշտակապետի անուան նուիրագործումը կը կապուի Գադ մարգարէին բերնով նշանակուած հրեշտակին երեման հետ, որ յղուեցաւ Դաւիթի ունայնամտութիւնը պատժելու։ Ս. Գիրքը կ'ըսէ՝ թէ «Հրեշտակ Տեառն կայր ի կալն Ոռնեայ Յեբուսացւոյ», և թէ «ամբարձ Դաւիթ զաչս իւր եւ ետես զհրեշտակն Տեառն» (Ա. Մնաց. ԻԱ.* 15, 16*)։ Իսկ Ոռնեայ կալին գիրքը ճանչցուած է այս եկեղեցւոյն տեղը։ Տնօրինական յիշատակաց հետ ալ կապուած է այս տեղը, և բովանդակ քրիստոնէութենէ ճանչցուած է իբ-*

րեւ Աննա քահանայապետի տունը, ուր Գեթսեմանիի ձերբակալութենէ ետքը «ածին նախ» Յիսուսը (Յովհ. ԺԸ. 13) հին քաղաքին մէջէն, իսկ նոր քաղաքին պարիսպներուն ներքեւի ճամբուն ուղղութեամբ։ Մեր ծրագիրէն դուրս է քահանայապետական ատեանին մասին աւետարաններուն խօսքերը համաձայնեցնել. ամէն առիթի մէջ խնդիրէ դուրս է Յիսուսի պահ մը Աննայի ապարանքին մէջ կապեալ և բանտարկեալ մնալը, որուն յիշատակներն են Զիթենին և Առաջին Բանտը, զորս պիտի նկարագրենք, և ուսկից ետքը «առաքեաց զնա Աննա կապեալ առ Կայիափա» (Յովհ. ԺԸ. 24)։ Ըստ այսմ Հրեշտակապետի վանքը ոչ միայն ազգային՝ այլ և ընդհանուր քրիստոնէական տեսակէտով կարեւոր տեղ մըն է, որուն նկարագիրին կը մտնենք։

91. -- Մայրավանքին մէջէն գալով, մեծ բակէն կ'անցնինք վարժարանի հրապարակը, և մանկապարտէզին առջեւէն իջնելով կ'անցնինք մեծ դուռը, որ այժմ միշտ բաց կը մնայ, բայց առաջ վանքի շրջապատի դուռ կը նկատուի եղեր, և անկէ դուրս եղող ճամբան հասարակ փողոց է եղեր։ Այժմ ճամբան վերի գլուխէն պատով փակուած է Եսայի պատրիարքի օրէն, իսկ վարի հարաւային գլուխը կրկնակի դուռեր ունի։ Առաջին դուռէն անդին տրամադրելի հաղամաս մը կը գտնուի եղեր, որ իբր ուրկանոց ալ կը ծառայէ եղեր։ Առաջ հոգ տարուեր է ուրկանոցը խափանել, և յետոյ Եսայի պատրիարք քաղաքապետութեան հետ համաձայնութեամբ և պատշաճ փոխանակութեամբ այդ մասին կը տիրանայ, մինչեւ առջեւի փողոցը՝ որ պարիսպներուն ներքեւէն կ'անցնի։ Սոյն

հողին առջևի մասին վրայ և փողոցին երեսը կրպակներ շինուեցան 1906ին, որոց ետեւն ալ եռանկիւն ձեւով պարապ հող մը մնաց իբր 60 քառակուսի մէդր տարածութեամբ, որ այժմս ալ տրամադրելի է իբր պարտէզ, թէպէտ ոչ մի կողմի հետ ուղղակի յարաբերութիւն չունի, և առանձին դուռով փակուած կը մնայ։ Կրպակներուն քովէն երկրորդ փոքրիկ դուռ մըն ալ դրուած է փողոցին վրայ, եւ երկու դուռներուն մէջտեղն է փոքր հողամասի մուտքը։ Մենք փակուած փողոցն ի վեր ետ դառնալով, վերի յիշուած մեծ դուռին հանդէպ ցած դուռ մը կը տեսնենք, որ Հրեշտակապետի վանքին մուտքն է։

92.— Դուռէն մտնելով կը գտնուինք փոքր բակի մը մէջ, կամ լաւ ևս եկեղեցւոյն հիւսիսային նեղ բակին գլուխը։ Ձախ թեւին վրայ կը տեսնենք նեղ անցք մը, երկու սենեակներու մէջտեղէն ձախակողմեանին դուռը այս անցքին վրայ է, իսկ աջակողմը լոկ սենեակի մը կողմնակի պատն է։ Պատին ծայրը կը գտնուի դուռ մը, ուրկէ ներս պարտէզ մը կայ 20 և 23 մէդր թեւերով, գրեթէ կանոնաւոր քառակուսի մը, 460 քառակուսի մէդր տարածութեամբ, որ կրնար իբր պտոյտի և օդ առնելու տեղ ծառայել, եթէ կանոնաւոր պահուած ըլլար(*)։ Անցքին ծայրն երկրորդ դուռ մըն ալ կայ, որ Հրեշտակապետի թաղը հաղորդակցութեան կը դնէ քաղաքացւոց բնակութեան հետ։ Իսկ այս դուռին դիմացը ուրիշ դուռ մըն ալ կը տեսնուի, որ մանկապարտէզի մուտքն է, և ղային հա-

(*) Այս պարտէզը խափանուած է հիմա ու իբր զբօսավայր կը ծառայէ Նորաշէն վարժարանին։ Ծ. Հ.

ղորդակցութեան կը դնէ Հայոց թաղաբաժնին հետ, ինչպէս յիշեցինք մանկապարտէզը նկարագրած ատեններս (յօդ. 60)։ Անկէ անդին Հայոց թաղաբաժնի փողոցներն են, որոց մէջ չենք մտներ առայժմ, եւ կը դառնանք ներքին փոքրիկ բակը, ուսկից մեկնեցանք։ Աչուընիս վեր բարձրացուցած ատեն կը տեսնենք համեստ զանգակատուն մը, որ շինուած է 1874-ին, տեսուչ Եղիա Յովհաննէսեան վարդապետին հոգածութեամբ։ Աջ կողմերնիս կը գտնուի սանդուխ մը որ տեսչարան կը հանէ։ Տեսչարանը, զոր ներքեւի սենեակներուն վրայ շինած է տեսուչ Խաչատուր Ճանսուզեան վարդապետ 1860 ին, երեք մասերէ կը բաղկանայ. պաշտօնական սենեակ մը և երկուքին մէջտեղ նախասենեակ մը։ Իրաւ սենեակները ընդարձակ չեն, բայց գոնէ պահանջը լրացնելու կը բաւեն։ Տեսչարանին պաշտօնական սենեակին ներքև կը մնայ մայրապետի սենեակը, զոր նեղ անցքին վրայ յիշեցինք, իսկ ննջարանի ներքև գտնուող սենեակը ժամկոչին է պահուած, որ լուսարարի մը հետ յատկացուած է Հրեշտակապետի եկեղեցւոյն ծառայութեանց։ Առջևնիս եղող նեղ և երկար բակը առայժմ զանց ընելով, աջ կողմերնիս գտնուող ուրիշ ցած դուռէ մը կը մըտնենք եկեղեցւոյն կողմը։ Դարձեալ նեղ անցք մըն է որ դիմացնիս կ'ելլէ, որուն աջակողմը 5 հատ մայրապետի սենեակներ կան, իսկ ձախ կողմը եկեղեցւոյն պատն է։ Այս նեղ անցքին ծայրը, չորս ոտք սանդուխէ վար, քիչ մը կ'ընդարձակի, և անոր վրայ կը բացուի լուսարարի սենեակը, որ հին տեսչարանն է եղեր, և ձախ կողմերնիս գտնուող փոքր դուռէն երեք ոտք ևս իջնելով՝ եկեղեցին կը մտնենք։ Անցած դուռերնիս երկաթեայ եւ արհեստակերտ միափեղկ

դուռ մըն է, ՌՄԽԶ (= 1797)ին շինուած Պետրոս պատրիարքի օրով։

93. — Հրեշտակապետի եկեղեցին կը պահէ հայ եկեղեցիներու հին տիպարը, որոնք երկուքի կը բաժնուէին, արտաքին եկեղեցի կամ ժամատեղի և ներքին եկեղեցի կամ տաճար։ Ժամատեղին 15 եւ 6,50 մեդր թեւերով իբր 100 քառակուսի մեդր տարածութիւն ունի, և բոլորովին պարզ շինուած մըն է։ Հիւսիս-արեւելեան անկիւնը պատարագամատոյց սեղան մը կայ Զարչարանաց սեղան անունով, ի յիշատակ Նախատանաց զորս Քրիստոս կրեց քահանայապետին տունը, և քովընտի դրուած նորակերտ նկար մը կը պատկերացնէ Քրիստոսի ապտակուիլը քահանայապետին ատեանին մէջ։ Այստեղ անցողաբար յիշենք թէ՝ որչափ որ ապտակի պարագայն աւետարանիչներէ մէկուն պատմութեան համեմատ իբր Աննայի տունը տեղի ունեցած կը կարծուի (Յովհ. ԺԸ. 20–24), սակայն միւս աւետարանիչներուն հետ համեմատուած ատեն, կը հաստատուի որ քահանայապետական ատեանը եւ Քրիստոսի հարցափորձը ո՛չ Աննայի, այլ Կայիափայի ապարանքին մէջ կատարուած են (Մատթ. ԻԶ. 57, Մարկ. ԺԴ. 53, Ղուկ. ԻԲ. 54), իսկ Կայիափայի ապարանքը Ս. Փրկիչն է։ Եթէ որմերուն շինուածը դիտենք, յայտնի կը տեսնենք որ Զարչարանաց սեղանը ժամանակին ուղղակի իւր դիմացը յատուկ դուռ ունի եղեր, որ յետոյ հիւսուեր է։ Ժամատեղիին մէջ բաւական թուով պատկերներ կան կախուած, որոնց մէջ նշանաւոր են, վերոյիշեալ ապտակի պատկերէն զատ, Դաւիթի ու սատակիչ հրեշտակի, եւ Քրիստոս Դատաւորի ու ատենակից առաքեալներու հին պատ-

կերները՝ արեւելեան և հարաւային պատերուն վրայ։ Երկու մեծկակ պատուհաններ երկաթէ վանդակներով և վանդակակերպ արուեստակերտ դուռը ժամատեղին տաճարին հետ հաղորդակցութեան կը դնեն և ի դէպ կուգան պատարագին մէջ սարկաւագին կողմէ ոչ-արժանաւորներուն ուղղուած հրամանին, թէ «առ դրունս ելէք և աղօթեցէք»։ Ժամատեղին դուրսի գետնէն եօթը ոտք ցած էր, տաճարն ալ ժամատեղիէն երկու ոտք եւս աւելի վար է։

94. — Տաճարին ընդարձակութիւնը, բեմն ու խորաններն ալ մէջն ըլլալով, 15 և 8,25 մէտր թեւերով քառանկիւն մը կը կազմէ, որ է 125 քառակուսի մէտր տարածութիւն։ Մէջտեղը չորս քառակուսի հաստատուն սիւներ կամարները կը վերցնեն և կողմնակի երեք կամարներ կը կազմեն։ Բեմը և դասը ներածին չափ են. աւագ սեղանին խաչկալը քանդակեալ և ոսկեզօծեալ փայտէ է, Շղթայակիրի ժամանակէն և մայր տաճարին խաչկալներուն արհեստով. երկու կողմի սեղանները պզտիկ են. պատերը մէկուկէս մարդաչափ ծաղկենկար յախճապակով պատած են, թէև ոչ բոլորը միատեսակ, և մէջերը աստ և անդ յիշատակի փոքր խաչքարեր զետեղուած են, իսկ սիւները միագոյն կանաչ յախճապակով գոցուած են։ Բեմին ճակատը ներկուած քար է, իսկ բեմին վրայի պատերն ալ ծաղկենկար յախճապակով գոցուած են։ Ձեղունի կամարները սպիտակ ծեփուած կը մնան։ Միայն կամարներուն կիսաբոլորներուն մէջ համաչափ պատկերներ կան. հարաւային կողմը՝ Ս. Գէորգ և Ծնունդ և Ս. Թէոդորոս, և հիւսիսային կողմը՝ Ննջումն Տիրամօր և Ս. Կարապետի կեանքէն դրուագներ. դրան

վրայ՝ Ընթրիք, իսկ աւագ սեղանի կիսաբոլորակին մէջ՝ Աբրահամ և երեք հրեշտակներ։ Կողմնակի սիւներուն վրայ Միքայէլ և Գաբրիէլ հրեշտակապետներ նկարուած են ներսի կողմէն, եւ Յարութիւն եւ Խաչելութիւն՝ ճակատի կողմը, և մէջտեղի սիւներուն վրայ ալ զանազան պատկերներ կան. առաջին սիւներուն վրայ երկու արծաթեայ Տիրամօր պատկերներ, մայր տաճարին մէջ գտնուածին նմանութեամբ, եւս և Ս. Գլխադիր և Առաքինութեանց անձնաւորութիւններ, իսկ յետի սիւներուն վրայ Ս. Հռիփսիմէի և Ս. Երինէի նոր նկարներ։ Երուսաղէմի եկեղեցիներու մէջ պատկերներու շատութեան բացատրութիւնը տըւած ենք ուրիշ տեղ (յօդ. 15), և ցուցուցած ենք իր տեղական պահանջէ յառաջ եկած սովորութիւն մը։

95. — Նշանաւոր է տաճարին երկու կողմերուն պատերուն հաստութիւնը, ճիշդ երեքուկէս մէդր, որուն մէջ սակայն մաս մաս պարապ տեղեր թողուած են։ Առաջինն ու գլխաւորն է տաճարին հիւսիս-արեւմտեան անկիւնի պզտիկ մատուռը, որ Առաջին Բանտ անունով ճանչցուած է։ Թէպէտ Աւետարանի մէջ յիշուած չէ, բայց պէտք է ընդունիլ, թէ երբոր Յիսուսը Գեթսեմանիի պարտէզէն Աննայի տունը բերին, հարկաւ նոյն տունին մէջ որ եւ է անկիւն մը արգելական պահեցին Կայիափայի առեանը տանելէ առաջ։ Սակայն մեր տեսածը և Բանտ կոչուած տեղը մաս կը կազմէ տաճարին այժմեան շինուածին, և 1,50 մէդր լայնքի վրայ 2,75 մէդր երկայնութիւն ունի, և բոլորակը 2,50 մէդր հաստ պատին մէջ բացուած է, եւ դժուար է այժմեան պատը Յիսուսի օրէն մնացած ըսել։ Նոյն դիտողութիւնը ուրիշ սրբավայրերու վրայ

ալ պէտք է տարածել, և քրիստոնական յիշատակները լոկ տեղերուն նոյնութեանը վրայ իմանալ, եւ ոչ շինուածին ալ նոյնութեանը վրայ, բայց եթէ երբ ընական ժայռ մը կամ քարայր մը և կամ բացառիկ կերպով պահուած մաս մը շինուածին նոյնութիւնը ապացուցանէ։ Մատուռը կամ Բանտը երկու մէդր բարձրութիւն ունի, և ամէն կողմերը, նոյնիսկ վրայի կամարը, ընտիր յախճապակով պատած է, իսկ դուռը սատափազարդ է։ Պատարագամատոյց սեղան ալ ունի արեւելեան կողմը, որուն ներքեւը կիսաբոլորակ ձեւով բաց է, քանդակուած մարմարներով և չորս մշտավառ կանթեղներով, յարեւնման մայր տաճարի մէջ գտնուող Գլխադիրի գերեզմանին (յօդ. 21)։ Նմանօրինակ սեղան մըն ալ Ս. Փրկիչի մէջ կայ, և իբր Գըլխադիրի յիշատակ շինուած կ'երեւին այդ սեղանի ներքեւ եւ կիսաբոլորակ սեղանները, քանի որ յատուկ նշանակութիւն մը չի տրուիր ու չի յիշուիր։ Մատուռին հանդիպակաց կողմը, տաճարին հարաւ-արեւմըտեան անկիւնն ալ, պատին մէջէն իբր 0,75 մէդր լայնքով անցք մը կայ, որուն ծայրն է խուղատունը, եւ հոն կը պահուին կանթեղներու համար ամբարուած տարեկան ձէթը։

96. — Ձախակողմեան դասին հասա պատին մէջէն բացուած մէդրուկէս լայն անցքով մը կը մտցուի տաճարին աւանդատունը, որ իւր մէջ փոքրիկ տաճար մըն է, 7,25 եւ 3,25 թեւերով քառանկիւն մը, որ կուտայ 24 քառակուսի մէդր տարածութիւն, իւր բեմով և պատարագամատոյց սեղանով։ Համեստ խաչկալով զարդարուած է, եւ սեղանին պատկերին մէջ՝ Աստուածածնայ քովերը՝ նկարուած են Ս. Հռիփսիմէ

և Ս. Գայեանէ կոյսերը, բայց մատուռը միայն Ս. Հռիփսիմէի անունով կը կոչուի, եւ Հռիփսիմեանց տօնին հանդէս կը կատարուի։ Մայրապետներու քովի օրհնութիւնն ալ այս մատուռին մէջ կը տրուի։ Սոյն մատուռին արեւմտեան պատին մէջ 4 քառակուսի մետր տարածութեամբ խորշ մը գործուած է իբր գանձատուն, կամ լաւ եւս իբր զգեստուց և սպասուց պահարան, որ փայտէ քանդակեալ հին դուռ մը ունի, ՌՂԸ (= 1649) թուականով։ Եկեղեցւոյն նկարագիրը լրացնելով, տաճարին մէջէն և ժամատեղիէն դուրս կ'ելլանք մայրապետներու վանքին կամ կուսաստանին շրջանն ընելու։

97. — Ժամատեղիին դրան հանդէպ ուրիշ փոքր դուռ մը կը տանի վանքին հարաւային բակը, որ իւր առաջին մասին մէջ նեղ է, իսկ ծայրը կ'ընդարձակուի և փոքր քառակուսի մը կը կազմէ, զոր կը զարդարէ կայտառ եւ սաղարթախիտ ձիթենի մը։ Այդ բակին երկու կողմերը 13 մայրապետներու խուցեր կը համրուին, 4 ալ անոնց տանիքին վրայ։ Մարմար սանդուխով կը բարձրանանք սենեակներուն տանիքը, որ եկեղեցւոյ չուրջը կը պտտի։ Արեւելակողման ներքեւի սենեակներուն առաջինները կպած են եկեղեցւոյն, և ազատ անցք չեն թողուր, և սենեակներուն դուռերն ալ կողմնակի բակերուն վրայ են։ Տանիքը արեւելակողմէն կը յառաջէ դէպի հիւսիսակողմ և բովանդակը կը ծառայէ գլխաւորապէս լուացուած լաթեր չորցընելու։ Արեւելակողման միւս ծայրէն ուրիշ սանդուխով կ'իջնենք ներքեւի հիւսիսային բակը, որուն վրայ 16 սենեակներ կը համրուին, ամէնքն ալ եկեղեցւոյն հանդիպակաց կողմին վրայ, և երկու սենեակ ալ տա-

նիքին վրայ։ Ըստ այսմ մայրապետներուն սենեակները կը գումարուին 41, այսինքն է՝ 1 առաջին անցքին վրայ, 5 եկեղեցւոյ անցքին մէջ, 13 հարաւակողմը և 4 տանիքին վրայ, 16 արեւելեան և հիւսիսային կողմերը, եւ դարձեալ 2 տանիքին վրայ։ Այս սենեակներուն մի մասը աւելի պզտիկ ըլլալուն լուսացարանի և խոհանոցի վերածուած են, և տանի չափ ալ կանուխէն այդ պէտքերուն յատկացուածներ կան, զորս մենք սենեակներուն հաշուին ալ չանցուցինք։ Սակայն, տեսչարանի եւ տանիքներու սենեակներէն դուրս՝ ամենքն ալ նեղ, ցած, խոնաւ, և մութ տեղեր են, որոնք եթէ դուռերնին գոցեն, բակին վրայ բացուած մանր ծակէ մը միայն օդ ու լոյս կրնան ունենալ։ Այս սենեակները բնակողները բարեպաշտ կոյսեր են, քիչերը այրիներ, որոնք հանապազօրեայ աղօթքին հետ, ամբողջ միաբանութեան լուացքովը և մանր կարերովը կը զբաղին, և պատահաբար միայն քաղցրեղէն մը կամ խորտիկ մը կը պատրաստեն։ Միաբաններու անձին վրայ և վանքին բնակութեանց մէջ տիրող մաքրութիւնը այդ մայրապետներուն արդիւնքն ու գովութիւնն է, իսկ ուխտաւորներու (յօդ. 64) և խոհանոցի (յօդ. 43) և վարժարանի (յօդ. 57) համար կատարած աշխատութիւննին արդէն յիշած ենք։ Տարբեր աշխատութիւն ըլլալով Մալկարացի Գայիանէ Ստեփանեան մայրապետը տեսանք, որ ոստայնանկութեան կ'աշխատի, և նոյն կազմածի վրայ՝ հին կտաւներու շերտերը իբր թելան գործածելով՝ թելէ առէջներու վրայ մանր կապերտներ կը գործէ։ Կարի մեքենայ գործածողներ ալ կան։

98. — Մեր պտոյտին մէջ դանց ըրինք ինչ ինչ

Նշանաւոր բաներ յիշատակել, անոնք առանձին յօդուածի նիւթ ըլլալու համար։ Ասոնց առաջինն ու գլխաւորն է բազմադարեան ձիթենի մը, որ այնչափ նշանաւոր եղած է, որ Հրեշտակապետի վանքը, տեղական յորջորջմամբ, Տէր-էլ-Զէյթուն (= Ձիթենեաց վանք) կը կոչուի։ Ձիթենիին միայն արմատը և հաստաբուն կոճղը մնացած է այժմ, Զարչարանաց սեղանին արեւելակողմը և Առաջին Բանտին հիւսիսակողմը, եկեղեցւոյ պատերէն դուրս բարձրացած հողամասի մը մէջ։ Ծառին բունը չ'երեւիր այլեւս, զի կոճղը հողով ծածկուած կ'ապրի Քրիստոսի օրերէն ի վեր, և ընձիւղներ կ'արձակէ, որոնց գլխաւորները տեղերնին են, իսկ մնացեալներ տեղափոխուած են։ Այն կայտառ և գեղեցիկ ծառը, զոր հարաւային բակին քառակուսիին մէջ յիշեցինք, այս արմատին շառաւիղներէն է, և ուրիշ ճիւղեր ալ անկուած են այն ընդարձակ ազատ գետնին վրայ, զոր պարտէզներու կարգին յիշեցինք (յօդ. 87)։ Այդ ձիթենին կը պատուեն իբր Յիսուսի կապուած ծառը, երբ որ առաջին անգամ ձերբակալեալ բերին զայն Գեթսեմանիի պարտէզէն Աննայի տունը (յօդ. 95)։ Բարեպաշտներ ուխտի կու գան այդ ծառին. աւագ ուրբաթ գիշեր յատուկ Զարչարանաց կարգ կը կատարուի անոր առջեւ. պտուղները շարականով և երգով կը հաւաքուին, և անոնց կուտերով կը շինուին Սուրբ Ծառի համրիչները, որոնք Երուսաղէմէ կը սփռուին ուխտաւորներու ձեռքով։ Նոյն համրիչներու կը գործածուին նաև հարաւային բակի ծառին և ազատ գետնին ձիթենիներուն կուտերը, որք միեւնոյն արմատէն բուսած են։ Եղիազար Այնթապցին Երուսաղէմի մէջ օրհնած միւռոնին ձէթը այս ծառերէն առած է, ինչպէս պատմութիւնը

կը յիշէ, և նոյն միւռոնէն տակաւին կը գտնուի Երուսաղէմի մէջ և կը գործածուի։ Այն ծառէն զատ կայ նաև անոր մօտ և եկեղեցւոյ պատին մէջ հիւսուած կոշտ քար մը, բաւական մեծ, որուն վրայ բերանի նման ճեղքեր կը տեսնուին, և աւանդութեամբ ընդունուած է, թէ այդ ճեղքերը բացուած են, երբոր Քրիստոս՝ հանդէսով Երուսաղէմ մտած օրը՝ ովսաննաները լռեցնել պահանջող Փարիսեցիները կը յանդիմանէր ըսելով. «Եթէ դոքա լռեսցեն, քարինքդ աղաղակեսցեն» (Ղուկ. ԺԹ. 40)։ Այս պատճառաւ Ովսաննայի քար կը կոչուի այդ անտաշ վէմը, և ընդհանուր բարեպաշտութեան առարկայ եղած է անյիշատակ ժամանակներէ հետէ։

---



# ՍՈՒՐԲ ՓՐԿԻՉ

99. — Նուիրական սրբավայր մըն ալ այս վանքն է, որուն յիշատակութիւնը ունինք դարձեալ Անաստաս վարդապետի հնաւանդ Ցուցակին մէջ, և որ նշանաւոր է Կայիափա քահանայապետին տունին տեղը ըլլալուն, ուր անցաւ Յիսուսի վերջին գիշերը, և կատարուեցան հրէական ատեանին գործողութիւնները, Պետրոսի ուրացութիւնն ու զղջումը, եւս և Յիսուսի կրած նախատինքները, թուքերն ու ապտակները ու կռուփները (Մատթ. ԻԶ. 67)։ Հնագոյն եւ տեւական

աւանդութիւնը, որուն հետեւած է բոլոր քրիստոնէութիւնը, այստեղ կը ճանչնայ Կայիափայի տունը եւ անօրինական եղելութիւնները։ Վերջերս լատին նոր միաբանութիւն մը, Կայիափայի տունը քիչ մը անդին իր սեպհականութեան մէջ զետեղելու փափաքը ունեցաւ, սակայն իւր կարծիքը հիմնական փաստերով հերքուեցաւ Սուրբ Տեղեաց պահապան և հնագոյն՝ դարձեալ լատին միաբանութեան մը կողմէն։ Տեղական կոչմամբ ալ Ս. Փրկիչը Հաբս էլ-Մեսիհ (= Քրիստոսի Բանտ) անունով ճանչցուած է անյիշատակ ժամանակներէ հետէ։ Ս. Փրկչի դիրքը այժմ քաղաքին սիւլէյմանաչէն պարիսպներէն դուրս կը մնայ, թէպէտ անմիջաբար պարիսպներուն ներքեւն է, սակայն Քրիստոսի ժամանակ այդ մասն ալ Երուսաղէմի քաղաքամէջն էր, ուր Աննայի տունը Կայիափայի տունին մօտ եւ մէկ գիծի վրայ գտնուած կ'ըլլայ, եւ լիովին կ'արդարանայ աւետարանական պատմութիւնը։ Փրկչի վանքը ժամանակով ծաղկեալ և ընդարձակ հայ վանք եղած է, իսկ այժմ պարզ տեսչութիւն մըն է, որուն յանձնուած են ազգային գերեզմանատան հսկողութիւնը և Ս. Աստուածածնայ գերեզմանին հոգածութիւնն ալ։ Վանքին գետինին ընդարձակութիւնը, իւր նախկին տարածութեան մէջ, վերջէն գրաւեալ մասերն ալ մէջն ըլլալով, 180 և 80 մէտր թեւերով մեծ քառանկիւն մը կը կազմէր, որ ըսել է իբր 15,000 քառակուսի մէտր տարածութիւն մը, թէպէտ այժմ մասամբ նուազած է, ինչպէս իւր կարգին պիտի բացատրենք։

100.— Վանքին աւագ դուռնէն ելնելով և դէպ հարաւ յառաջելով կը հասնինք մինչև քաղաքին պա-

րխպները, ուսկից ձախերնիս դառնալով և պարխպները ներսէն քերելով կը հասնինք Դաւիթի կամ Սիոնի դուռը։ Դուրս ելնելով՝ առջեւնիս կ'ունենանք Ս. Փրկիչի պարսպաձեւ պատը, և դուռ մըն ալ որ գործածական չէ։ Այդ պատին արեւելեան կողմը պատէն դուրս մնացած սիւն մը կը տեսնուի, հին դարերէ ի վեր հոն պահուած, որ աւանդութեան մը համեմատ կը ցուցնէ այն տեղը ուր Հրեայք Աստուածածնայ յուղարկաւորութիւնը խափանել փորձեցին և իրենցմէ մէկը յանդգնեցաւ ձեռքը մարմինին հասցնել, բայց ձեռքը գօսացաւ։ Մենք պէտք է դէպի աջ դառնանք, որ յառաջենք մինչև վանքին արտաքին դուռը ձախ կողմերնիս։ Պարսպաձեւ նոր պատը ու մուտքի մեծ դուռը նոր և կանոնաւոր շինութիւններ են, 1898ին կատարուած Ցարութիւն պատրիարքի արդեամբ եւ ծախիւք և հոգածութեամբ, որ տարին Երուսաղէմ կ'այցելէր Գուլիելմոս Բ. Գերմանիոյ կայսրը։ Դուռէն ներս մտնելով առջեւնիս կը տեսնենք ընդարձակ բացավայր մը, որ երկուքի բաժնուած է, արտաքին դուռնէն մինչև վանք տանող և վերջերս սալարկեալ ճանպով մը։ Ձախակողմեան կամ արեւելեան մասը կանոնաւոր քառակուսի մը կը կազմէ 44 եւ 42 մէդր թեւերով, որ կուտայ իբր 1900 քառակուսի մէդր տարածութիւն, եւ այդ մասին մէջ եղած կ'ըլլայ հին վանքին գլխաւոր մասը, ինչպէս կը հաւաստեն հողին մէջ մնացած պատերու հիմերն ու տեղտեղ ի լոյս հանուած միւսխին յատակի մասերը, ոմանք միագոյն սպիտակ, և ոմանք գունաւոր զարդերով խառն։ Մինչեւ վերջին տեններ աւերակի կոյտեր կը տեսնուէին եղեր այդ մասին մէջ, որոնք այժմ հարթուած են, բայց միանգամայն պեղումներու ատեն մէջտեղ ելած.

հին պատերէն քանդուած ու վերցուած մասեր ալ եղեր են։ Հիւսիսային պատին առջև նորատունկ նոճիներով ծառուղի մը կազմուեր է, և արևելեան կողմն ալ նորակերտ թև մը կառուցանելու միտքը յղացուեր է և պետական արտօնութիւնն ալ ստացուեր է։ Այժմ տափարակ ու պարապ գետին մըն է, և առաջիկային ծառաստան մը ունենալու նպատակով նորաբողբոջ բոյսեր տնկուած են։

101. — Բացաստանին աջակողմեան կամ արևմտեան մասը երթալով կը նեղնայ՝ իր հարաւային թևին դէպ առաջ ծռելովը, այնպէս որ արևմտեան թևը մինչև 23 մէդր կը նուազի։ Ասոր ալ պատճառը՝ Լատիններէ գրաւուած մասին շրջապատի անկանոն ձևն է։ Այդ մասին տարածութիւնը արևելքէն արևմուտք 45 մէդր է, իսկ հարաւէն հիւսիս՝ 40 էն մինչև 23 կ'իջնայ, և 30 մէդրը միջին առնելով, մերձաւորաբար 1400 քառակուսի մէդր տարածութիւն կրնայ հաշուուիլ, որ գումարուելով արևելեան մասին և միջին ճամպուն հետ, մերձաւորաբար 3500 քառակուսի մէդր տրամադրելի գետին մը կուտայ։ Այս կողմն ալ անհարթ հողակոյտներով գետին մըն է եղած, որ վերջին օրեր բաւական հարթուեցաւ։ Հին պատերու եւ միւսին յատակներու հետքեր այդ մասին մէջ ալ կը գտնուին, որ կը ցուցնէ հին վանքին ընդարձակութիւնը. իսկ պեղումներով հանուած ու ճամպուն երկու կողմը շարուած կոփածոյ քարերն ալ շինութեան ոճն ու ճաշակը կը հաւաստեն։ Առաջին մասին հիւսիսային պատին առջև կազմուած նոճիներու ծառուղին այս մասին մէջն ալ կը շարունակէ։ Երկրորդ մասին հարաւ-արևելեան անկիւնը պզտիկ դուռէ մը կը

մոցուի ազգային գերեզմանատունը, զոր վերջէն նը-
կատի պիտի առնենք. Իսկ այժմ մեծ դուռին ուղ-
ղութեամբ դիմացնիս գտնուող պզտիկ դուռէն կը
մտնենք Ս. Փրկիչի վանքը։

102. — Երեք ոտք սանդուխով կ'իջնենք եկե-
ղեցւոյ բակը, որ բացօթեայ եկեղեցիի կերպարանը
առած է, իրեն մէջ ունենալով պատարագամատոյց սե-
ղան մը, որ աւելի գործածական է քան բուն տաճա-
րին սեղանը։ Բակին արեւելակողմը տաճարին դուռէն
և ճակատէն եռքը բարձրաւանդակի մը վրայ կանգ-
նուած է այդ սեղանը, որ նուիրուած է Պետրոսի
Ուրացութեան, բայց պատշաճագոյն կ'ըլլար Պետրոսի
Զղջման սեղան անուանել, ինչպէս խորանին քովի
պատկերը եւ խորանին դիմացը պզտիկ քանդակը
կ'ուզեն ակնարկել՝ Պետրոսի մօտը դնելով աքաղաղը,
որուն ձայնը սթափեցուց ուրացող Պետրոսը (Մատթ.
ԻԶ. 75)։ Հին ատեններ Փրկիչէ քիչ հեռաւորութեամբ,
դէպի Սեղովամ իջնող զառիվայրին վրայ, եղեր է
Հաւաչմանց վանք մը, ի յիշատակ Պետրոսի զղջումին,
սակայն շատ լաւ կընանք տարբերել զղջումի առա-
ջին զգացումը և զղջումի շարունակութեան լացքն
ու կոծը քարայրի մը մէջ։ Պատարագամատոյց սեղա-
նին դառնալով՝ յիշենք, թէ կը գտնուի յարկածածուկ
կամարի մը ներքեւ, և թէ սեղանին ներքեւը կիսաբո-
լորակ բաց է, նման Գլխադիրի սեղանին, քանդակ-
եալ մարմարով պատած, որուն ճակատը կը տեսնուի
Քրիստոս սիւնին կապուած։ Յատուկ յիշատակ մը չի
ցուցուիր կիսաբոլորակ բացին համար, եւ ամենայն
հաւանականութեամբ Գլխադիրի նմանութիւնն է որ
այստեղ ալ, Հրեշտակապետ ալ կրկնուած է։ Բակին

ընդարձակութիւնը 16 և 8,50 մէդր թևերով կանոնաւոր քառանկիւն մըն է, որ ըսել է 136 քառակուսի մէդր տարածութիւն։ Արևմտեան և հարաւային թևերը կամարակապ ճեմելիք ունին 4,50 մէդր լայնութեամբ։ Երկրորդ և վերին երեսաց ճեմելիք մը ալ ներքինին վրայ կայ, և այս վերին ճեմելիքին վրայ կը բացուին սենեակներուն դուռները։ Վարի և վերի ճեմելիքները բացօթեայ եկեղեցւոյն իբրև վերնատուն կը ծառայեն։ Իսկ բակը բարձրէն գոցուած է որթոցով մը, իւր բովանդակ տարածութեան մէջ, զոր կը լեցնեն երկու հսկայ որթատունկեր, որոց բուները կը գտնուին արևմտեան ճեմելիքին առջև եւ սեղանին հանդէպ։ Պատերուն վրայ կը տեսնուին քանի մը պատկերներ. յատուկ դիտողութեան արժանի է Ս. Յակոբայ վանքին նախկին տեսարանը ցուցնող հին պատկեր մը՝ հարաւային պատին վրայ կախուած, զոր արժան էր թանգարանի մէջ զետեղել։

103. — Ս. Փրկչի բակը ամբողջ գերեզմաննոց մըն է, եւ բակին յատակը լեցուն է ծայրէ ծայր եպիսկոպոսներու եւ վարդապետներու եւ նշանաւոր անձերու գերեզմաններով, դրեթէ ամէնքն ալ իրենց տապանագիրներով։ Ասոնց կատարեալ ցուցակը տալ երկար պիտի ըլլար, բայց գոնէ գլխաւորները նշանակած ըլլալու համար յիշենք աւագ լուսարար կամ լուսարարապետ եպիսկոպոսներէն Սիմէոն Վանեցին 1820ին թաղուած, Մկրտիչ Երևանեցին 1838ին, Մարկոս Փօթուշանցին 1849ին, Գէորգ Ռոմանցին 1861ին և Իսահակ Բաբերդցին 1883ին։ Ասոնցմէ հընագոյն են աւագ լուսարար վարդապետներէն՝ Յակոբ Գալաթցին 1739ին, Աստուածատուր Ալաշկերտցին

1759ին, և Միքայէլ Տէկիրմէնցին 1775ին։ Այնտեղ թաղուած են նաև փոխանորդ եպիսկոպոսներէն՝ Գաբրիէլ Ղուզուճանցին 1782ին, Պետրոս Զմշկածագցին 1810ին, Կարապետ Նեղոկիացին 1849ին, և Դաւիթ Կարնեցին 1858ին, Վրթանէս Ատըեամանցի վարդապետը 1884ին, որ Յովհաննէս պատրիարքին մահուընէ ետքը չորս տարի տեղապահութիւն վարեց, և Երեմիա Տէր Սահակեան արքեպիսկոպոսը, որ Եսայի պատրիարքի վախճանելէն ետքը մինչև Յարութիւն պատրիարքի պաշտօնը ստանձնելը քառամեայ տեղապահութիւն վարեց եւ 1900ին վախճանեցաւ։ Յիշենք նաև վերջին վաղամեռիկ լուսարարապետները, Կարապետ Տէր Ներսէսեան եպիսկոպոսը և Թադէոս Եկաւեան և Գաբրիէլ Անոյշեան վարդապետները, որոնց վրայ տակաւին յիշատակի արձանագրութիւն գրուած չէ(*)։ Տապանագիրներու մէջ բաւական հիներ ալ կան, և մեր աչքին զարկած հնագոյնը՝ Ստեփան Թորոս Պարոնտէր վարդապետինն է 1636ին։ Նկատառութեան արժանի կը սեպենք Յարութիւն Մուրատեան Ապուչեխցի և Յովսէփ Սահաթճեան Ստամպօլցի իշխանի կոչուածները 1741ին և 1750ին թաղուած, և առաջինը իբր Ս. Աթոռին մեծերախտ, և երկրորդը իբր մեծ բարեկամ յիշուած։ Այստեղ է նաև Կոլոտ պատրիարքի Կ. Պոլսոյ մէջ բացած դպրատունին վերակացու Գասպար Ամուճայի գերեզմանը։ Վերջապէս յիշուելու արժանի է Տոսպեցի Կարապետ վարդապետը, որ Ս. Փրկչի վանքին պահ մը անտէր և ամայի մնալէն ետքը, ԺԴ. դարուն մէջ յաջողած է կրկին տիրանալ վանքին, եւ զայն նորոգել ու պայծառացնել, բայց գերեզմանը

(*) Այժմ ունին։ Ծ. Հ.

չունինք։ Այժմ անցնինք հանգուցեալ պատրիարքներու տապաններուն։

104. — Պատրիարքներու գերեզմանները առանձինն կերպով զետեղուած են բարձրաւանդակներու վրայ, կամ ներքին ձեմելիքներու կամարներուն ներքեւ, եւ բարձր տապանաքարեր ունին, շատերը ընդարձակ տապանագիրերով։ Բակը մտած ատեննիս եւ ձախ կողմերնիս բարձրաւանդակ մը կայ վրան չորս տապանաքարերով։ Ետեւի երկուքը երկու մեծ Գրիգորներուն գերեզմաններն են. առաջինը՝ Գրիգոր Պարոնտէրը ՌՂԴ (= 1645) թուականով, եւ անոր քովը՝ Գրիգոր Շղթայակիրը ՌՃՂԸ (= 1749) թուականով։ Իսկ անոնց առջեւը, պատին քովը՝ Թէոդորոս Խորենացին ՌՄԺ (= 1761) թուականով, եւ առջեւը՝ Կարապետ Գանձակեցին ՌՄԺԷ (= 1768) թուականով։ Չորս գերեզմաններ ալ սեղանին առջեւը զետեղուած են, որ բակին յատակին վրայ բարձրաւանդակ կը կազմեն, բայց սեղանին գետինն են դարձած։ Այս մասին մէջ թաղուածներ են՝ Աստուածատուր Տարոնեցի ՌՃԻ (= 1671) թուականով, Յովհաննէս Կոստանդնուպոլսեցի ՌՃԽԶ (= 1697) թուականով, Մինաս Ամդեցի ՌՃԾԳ (= 1704) թուականով, եւ Յովհաննէս Երուսաղեմցի, արքեպիսկոպոս եւ աթոռակալ ՌՃՁԲ (= 1733) թուականով, որ է նոյն ինքն Հաննա վարդապետ, իրապէս արժանաւոր պատրիարքաց շարքին մէջ զետեղուելու։ Չորս գերեզմաններ ալ ձեմելիքին գլուխը կը գտնուին. նեղ կամարին ներքեւ են՝ Գաբրիէլ Նիկոմիդիացի 1840 թուականով, Թէոդորոս Վանեցի 1819 թուականով, Յովակիմ Բանաքեցի ՌՄԽԲ (= 1793) թուականով, եւ Պօղոս Վանեցի ՌՄԻԴ (= 1775)

թուականով։ Մենք դուրսէն դէպի ներս շարքին հետեւեցանք, բայց ընական էր որ ներսէն դէպի դուրս կարգով թաղուած ըլլային։ Ճեմելիքին հարաւային կամարին ներքեւ կը գտնուին քովէ քով՝ Կիրակոս Երուսաղէմացի 1850 եւ Զաքարիա Կոփեցի 1844 թուականներով, երկուքն ալ չքեղ տապանաքարերով։ Անոնց առջեւն են Յովհաննէս Զմիւռնացին 1860 թուականով(*), եւ քովը Պօղոս Ադրիանուպոլսեցին ընիկ միաբան, Կ. Պոլսոյ պատրիարքութենէ ետքը Երուսաղէմի ծայրագոյն կառավարիչ եղած և 1853ին վախճանած։ Ասոնց ալ առջեւը թաղուած է Յակոբոս Սերոբեան, նախկին պատրիարք Կոստանդնուպոլսոյ, որ 1862ին ուխտի գալով քիչ օրէն պատահական արկածով վախճանած է։ Ճեմելիքին արեւմտեան թեւին մէջ թաղուած է Եսայի Թալասցի՝ 1885ին վախճանած եւ սեղանին հանդէպ թաղուած, եւ քիչ անդին Յարութիւն Վեհապետեան վերջին պատրիարքը՝ 1910ին վախճանած եւ որոյ գերեզմանը տակաւին տապանաքար չունի, յաջորդին ընտրութեան սպասելով(**)։ Ըստ այսմ յիշատակած եղանք 19 գերեզմաններ, որոնցմէ 16ը Աթոռին ախրապէս գահակալներու տապաններ են։ Պարոնտէրէ մինչեւ Վեհապետեան 20 պատրիարքներ նստած են Երուսաղէմի Աթոռը, բայց Եղիազար Այնթապցին Էջմիածին է թաղուած, Մար-

(*) Վերջին անգամ Զմիւռնացի Յովհաննէս պատրիարքին քով թաղուեցաւ երջանկայիշատակ Տ. Եղիշէ Դուրեան պատրիարք։ Ծ. Հ.

(**) Յարութիւն պատրիարք 1930ին ունեցաւ իր հոյակապ շիրիմը, որուն վրայի ոտանաւոր տապանագիրը շարադրեց Ս. Աթոռիս ներընտիր պատրիարք Ամենապատիւ Տ. Թորգոմ արքեպիսկոպոս։ Ծ. Հ.

տիրոս Կաֆացին՝ Գահիրէ, Յակոբ Նալեան՝ Կոստանդնուպոլիս, և Պետրոս Եւդոկիացին՝ Յոպպէ։

105. — Գաւիթին շրջանը լրացնելէ ետքը, երեք ոտք սանդուխով կը մտնենք եկեղեցին կամ բուն տաճարը, որ բեմով ու սեղանով 12 մէտր երկայնք և 6,5 մէտր լայնք ունի, որ է բովանդակ իբր 75 քառակուսի մէտր տարածութիւն։ Փոքրկութեանը պատճառով սիւն ու բաժանում չունի և միակ կամար է. պատերը մօտ երկու մարդաչափ յախճապակով պատած, նոյնպէս բեմին վրայ և խորանին չուրջը. իսկ յատակը հասարակ քար է։ Կողմնակի կիսաբոլորակներուն մէջ՝ աջակողմը նկարուած են Քրիստոսի տնօրինականք և ձախակողմը՝ Վերջին Դատաստանի ատեանը։ Սեղանի ոտքը և վէմը անարդիլ և ահագին ու չյղկուած քար մըն է, իբր 5,5 մէտր շրջապատով, որ երեք տեղերէն բաց թողուած է ջերմեռանդներու համբոյրին, իսկ մնացածը յախճապակով պատած է։ Այս է Քրիստոսի գերեզմանին մուտքը փակելու համար՝ «թաւալեցուցեալ կափարիչ դրան գերեզմանին վէմ մի մեծ» ըսուածը (Մատթ. Իէ. 60), զոր ի դէպ թաւալեցուցեալ կ'ըսէ Աւետարանիչը, վերցնելու եւ դրուելու չափէն աւելի մեծ եղած ըլլալուն համար, և որուն համար մտահոգ էին Իւղաբեր կիները, թէ «ո՞վ թաւալեցուսցէ մեզ զվէմն ի դրաց գերեզմանին... քանզի էր մեծ յոյժ» (Մարկոս ԺԶ. 3-4)։ Այդ վէմը անյիշատակ ժամանակներէ հետէ Ս. Փրկիչի եկեղեցւոյն մէջ պահուած և ազգային սեփականութիւն մնացած է, և ընդհանուր քրիստոնէութեան եւ ամէն ազգէ ուխտաւորներու բարեպաշտութեան առարկայ եղած է։

106. — Սեղանին խաչկալը քանդակագործ եւ ոսկեզօծ փայտէ է, բայց արհեստը տարբեր է Շղթայակիրի ժամանակի ոճէն, զի ոսկեզօծները գունաւոր զարդերով խառն են, և կապոյտ յատակի վրայ ագուցուած են։ Արդէն գործուածին և յարակից պատկերներուն վրայ ՌՄԿԴ ( = 1815 ) թուականը եւ Վանեցի Թէոդորոս պատրիարքի անունը կը կարդացուին։ Պատկերները կը ներկայեն մէկ կողմը Վերջին Ընթրիքը և Ոտնալուայն, իսկ միւս կողմը Քրիստոսի սիւնին կապուած գանակոծութիւնը։ Սեղանին պատկերը կը ներկայացնէ Հոգւոյն Սրբոյ գալուստը, զի Վերնատունին մօտաւորագոյն եկեղեցին է, եւ Հոգեգալստեան հանդիսական յիշատակը այս տեղ կը կատարուէր և կը կատարուի։ Վերջին տարիներ, Գուլիէլմոս Բ. Գերմանիոյ կայսեր 1898ին Երուսաղէմ այցելելէն ետքը, Վերնատունի և Փրկիչի մէջտեղը շինուեցան Գերմանացի Բենետիկդեանց եկեղեցին (Dormition) ու վանքը, Սուլթան Ապտիւլ Համիտէն Գերմանիոյ կայսեր նուիրուած գետնին վրայ։ Աւագ սեղանին ետեւը դուռի տեղ մը կ'երեւայ, ուստի երբեմն կ'անցնուէր եղեր եկեղեցւոյն աւանդատունը, որուն մէջ Ս. Երրորդութեան նուիրուած պատարագամատոյց սեղան ալ կը գտնուի եղեր, որ եւ 1886ին նորոգուեր է։ Սակայն այդ աւանդատունը յետոյ աւելցուած եւ խարխուլ շէնք մը ըլլալուն՝ 1890ին քակուեր է, եկեղեցւոյ ետեւի նոր շինութեանց առթիւ։ Այժմ իբր պարզ պահարան, և ոչ իբր ծխական աւանդատուն, կը գործածուի, եկեղեցւոյն ձախակողմէն մուտքով՝ արտաքին խորանին ետեւը գտնուող և իբր 16 քառակուսի մէդր տարածութեամբ սենեակ մը, որուն մէջ կը պահուին եկեղեցւոյ խոշոր կարասիները։

107. — *Բեմին վրայ եւ ձախակողմը մէգր մը բարձրութեամբ և հազիւ կէս մէգր լայնութեամբ դուռ մը կայ, որուն ներսը և ոչ իսկ քառակուսի մէգր մը տարածութեամբ մատուռ մը կայ, իբր երկու մէգր բարձրութեամբ և կամարակապ, և ամէն կողմերը և նոյն իսկ ձեղունը յախճապակիով պատած, և արեւելակողմը իրեն համեմատութեամբ պատարագամատոյց սեղան մըն ալ ունի։ Այս փոքրիկ մատուռը ճանչցուած է Քրիստոսի* Երկրորդ Բանտ *անունով։ Աւետարանները Աննայի և Կայիափայի տուներուն եղելութիւնները պատմած ատեն բնաւ բանտի եւ բանտարկութեան խօսք չեն ըներ, բայց բնական էր որ հալածիչ խումբը, երկու քահանայապետական տուներուն մէջ ալ, ձերբակալեալ Յիսուսը խորշ մը արգելական պահէր։ Այս տեսութեամբ է որ հնօրեայ աւանդութիւնը, երկու տուներուն տեղերը կառուցուած տաճարներուն մէջ, մէյմէկ նեղ եւ անձուկ մատուռներ յատկացուցած է այդ արգելարաններուն յիշատակին, և անոնք են Քրիստոսի Առաջին Բանտը (յօդ. 95) եւ Երկրորդ Բանտը, երկուքն ալ մեր ազգային սեփականութեանց շրջանակին մէջ։ Երրորդ եւ Չորրորդ Բանտեր ալ կը պատուուին, դատաւորին ապարանքը և Գողգոթայի վրայ, բայց անոնք ազգային սեփականութեանց շրջանին մէջ չեն։ Յիշուած Երկրորդ Բանտը մանաւանդ՝ միջազգային ջերմեռանդութեան առարկայ է, եւ ամէն ազգէ ու դաւանութենէ ուխտաւորներ Ս. Փրկիչ կը յաճախեն, եւ տեղական սովորութիւնն ալ, ինչպէս յիշեցինք (յօդ. 99),* Հապս Էլ-Մէսիհ *անունով կը ճանչնայ Ս. Փրկիչը։*

108. — *Բակին և տաճարին պտոյտը աւարտելով*

կ'անցնինք համառօտիւ վանքն ալ նկարագրել։ Երկու որոշ մասերու կրնայ բաժնուիլ վանքը. հին շէնքը, զոր 1848ին նորոգած է Կիրակոս պատրիարք, և նոր շէնքը, զոր 1890ին շինած է Յարութիւն պատրիարք։ Հին շէնքը գետնայարկին վրայ միայն սենեակ մը ունի դրան մօտ, դռնապանի յատկացեալ, և մառանի նման խուց մըն ալ միւս ծայրը, որ եկեղեցւոյն խըղատունն է։ Վերնայարկի ճեմելիքին վրայ կը բացուին, ինչպէս ըսինք (յօդ. 102), միաբանական սենեակները, որոնք հինգ են կարգաւ, եւ ծայրի վեցերորդը, որ վերայիշեալ դռնապանի սենեակին վրան կը համապատասխանէ, իբր ուսուցարան կը ծառայէ։ Սենեակները սովորական միաբաններու սենեակներէն տարբերութիւն չունին, և լոյս կ'առնեն թէ դուրսէն և թէ բակին կողմէն։ Հին սենեակներուն շարքը մինչեւ տաճարին հարաւակողմը կ'երկարի, եւ երկու սենեակներ ալ այդ մասին մէջ կը պարունակուին. բովանդակ 9 բնակութեան սենեակներ հին վանքին մէջ։ Իսկ վանքին նոր մասը շարունակութիւն է այդ հարաւային գիծին և կը դառնայ տաճարին ետեւը, այսինքն արեւելակողմը։ Հաստատուն քառակուսի սիւներ և մէջէ մէջ երկու կարգ յաղթ կամարներ միայն երկու համեստ նոր սենեակներ ունին իրենց վրայ, որ շատ նուազ արդիւնք է մեծածախս հիմերուն եւ հաստակառոյց ներքին մասին վրայ։ Սակայն մեզի դիտել կը տրուի, թէ այս մասը սահմանուած էր իբր անցք կամ միացման կապ ծառայել աւելի ընդարձակ շինութեան հետ, որ պիտի երկարէր առաջին անգամ նկարագրուած բացաստանին արեւելակողմը, և մաքուր և օդասուն բնակարաններ պիտի ընծայէր հիւանդներու և տկարներու, ինչ որ հանդուցեալ Յարութիւն պատ-

րիարքի փափաքներուն նպատակն էր, բայց գործադրութիւնը չկրցաւ կատարել։ Կը դիտուի եւս, թէ ամուր շինութիւնք բացարձակ պահանջ մըն էին այդ կողմին համար, որ ենթարկուած էր Սիոնի թաղին մոլեռանդ այլազգիներուն հալածանաց եւ յարձակմանց և քարընկէցութեանց, երբ տակաւին շինուած չէր Գերմանացի Բենետիկդեանց վանքը։ Սիոնի այլազգիներուն նշանակելի կրօնամոլութիւնը կը վերագրուի՝ Արաբիայի կրօնական քաղաքէն եկած գաղթին ուղղակի սերունդն ըլլալուն։

109. — *Տաճարին ետեւը կամ արեւելակողմը, նոր շէնքին երկու թեւերով և վանքի պարիսպով պարփակուած փոքր բակ մը կայ, ուր կուգանք տաճարին բակէն և հարաւակողմին անցքէն։ Կամարներուն ներքեւ գտնուող մասին մէջ աչքի կը զարնէ միւսին յատակի մաս մը՝ լաւ պահուած և գոյնզգոյն խճերով ծաղիկներ յօրինուած։ Անոր չուրջն ալ կը տեսնուին հիմերուն պեղումէն դուրս եկած կոփածոյ քարեր։ Իսկ բակին մէջտեղը կը բարձրանայ Յակոբ եւ Գայըն Աշըգեան ամուսնոյ շիրիմը՝ 1890 ին կառուցուած այս տեղ, իրենց որդւոյն Պօղոս պէյի հոգածութեամբ։ Իտալական ճաշակով եւ սպիտակ մարմարով արուեստակերտ մահարձան մըն է, Քազարքքի եւ Վիթալի արձանագործներէ Եգիպտոսի մէջ քանդակուած։ Չորս մէդր թեւերով քառակուսի վանդակապատի մը մէջ նստած է լայնարձակ խարիսխ մը, որուն վրայ զետեղուած է մահարձանին բունը, ճակատը Յակոբ Աշըգեանի քանդակագործ պատկերը, և երկու կողմերը բունին հակած մանչ եւ աղջիկ երիտասարդներու անդրիներ՝ բնական մեծութեամբ, եւ*

քունին վերևը մարմարեայ կոթող մը։ Զրոյց մը երկու անդրիներու վրայ՝ հանգուցելոց պաւակներուն թէ ոչ ներկայութիւնը, գոնէ դիմագիծներու նմանութիւնը կը տեսնէ։ Որոշ նշանակներ չգտնուելուն դժուար է անդրիներուն այլաբանական նշանակութիւնը ճշդել, և հաւանականաբար պարզապէս ընդհանուր սուգին արտայայտութիւնը կը նշանակեն։ Հանգուցելոց ծնըն-դեան և մահուան թուականները ցուցուած են շիրիմի վրայ, Յակոբին 1819–1887 և Գատընին 1824–1885. երկրորդը 61 տարեկան՝ առաջ վախճանած, և երկու տարի ետքը՝ առաջինը 68 տարեկան։ Յակոբ էֆէնտի Աշըգեան Աթոռին բարերարներուն կարգը կը սեպուի ինչ ինչ կալուածներով, թէպէտ նուէրին գումարը նախնական փոխատուութեան մը տոկոսներուն վերա-դիրով ստուարացած է։

110. — Ս. Փրկչի ազգապատկան գետնին բովան-դակութիւնը նախապէս իբր 15,000 քառակուսի մէդր եղած ըլլինք (յօդ. 99), ուսկից 3500 քառակուսի մէդր արտաքին բացավայրը և 1500 քառակուսի մէդր ալ եկեղեցիին եւ վանքին եւ բակերուն տարածութիւնը հաշուելով, պէտք էր որ 10,000 քառակուսի մէդր տեղ գերեզմաննոցի յատկացուած ունենայինք։ Սակայն այդչափը այժմ մեր ձեռքը չէ։ Պատմութենէն գիտենք թէ ԺԸ. դարուն վերջին կէսին մէջ, Լատինաց գերեզ-մաննոցը Ահմէտ Տէճճանի չէյխէն գրաւուելուն վրայ, Հայոց պատրիարքարանը իւր գերեզմաննոցին մէկ մասին մէջ հիւրասիրաբար ընդունեց լատին մեռել-ները, ինչ որ յետոյ Լատիններ իրաւունքի վերածե-ցին, և օգտուեցան գաղղիական դեսպանատան մի-ջամտութենէն և Դամասկոսի կուսակալներուն առջև

գործածուած հնչուն փաստերու ազդեցութենէն։ Բաւական ատեն վէճերը շարունակեցին, երկուստեք յաջողութեանց և ձախողութեանց ելևէջներով։ Զաքարիա Կաղզուանցի Կ. Պոլսոյ պատրիարքն ալ ջանքեր պակաս չըրաւ, բայց ընդհանուր կացութիւնը Հայոց նպաստաւոր չէր, և այդ խնդիրին վերջնական որոշումն ալ Լատինաց նպաստաւոր եղաւ, կառավարութեան վճռով 1777ին, Յովակիմ Բանաքեցի պատրիարքին օրով։ Իբրև տիրապետութեան փաստ գործածուեր է այն ատեն խնդիրի նիւթ եղող մասին մէջ լատինականութեան յարող ազգայիններու ալ թաղուած ըլլալը։ Լատիններու տիրապետած մասը վերջին ատեններ յօժարակամ յաւելուած մըն ալ ունեցաւ, և անոնց դէպի ներս երկու դուռերը փակուեցան, մաս մը գետնի փոխանակութեամբ, և այսօր շուրջ 3000 քառակուսի մեդր կը հաշուուի Լատինաց գերեզմաննոցին տարածութիւնը։ Նոյն գերեզմաննոցը երկար ատեն առանց շրջափակի մնացած ըլլալուն՝ պատով փակելու առթին հարկ եղաւ երբ 100 քառակուսի մեդր տեղ ալ թողուլ Տաճկաց կողմէն պատուուած գերեզմանի մը համար, և այժմ շուրջ 6900 քառակուսի մեդր տարածութեամբ մնացորդ գետինն է, որ ազգային գերեզմաննոցի կը ծառայէ։ Ամբողջական գետինը արևելքէն արևմուտք երկնցող քառանկիւն մըն է, որուն հիւսիսային պատին միջին մասը կը կազմէ Լատիններուն պատը, իսկ երկու ծայրերը Հայոց կը պատկանին։ Տաճկաց թողուած փոքր մասը հարաւային պատին մէջտեղն է, և բոլորին շուրջը ազատ փողոց մը կը պատէ։ Ընդհանուր յատակագիծին վրայ պարզ ակնարկ մըն ալ յայտնապէս կը ցուցնէ, թէ մեր սեպհականութեան մէջ բռնազբօսիկ մուծուած կտոր մըն է Լատիններու գերեզմաննոցը։

111. — *Յիշեցինք արդէն թէ ազգային գերեզմաննոցին կը մօտուի պզտիկ դուռով մը բացատանին արեւմտեան մասին հարաւ-արեւելեան անկիւնէն (յօդ.* 101*), երբոր Ս. Փրկչի վանքին կողմէն մտնել ուզուի։ Սակայն հարաւային պատին վրայ ուրիշ ընդարձակ դուռ մը կայ, և այդ կողմէն կը մտնեն ննջեցելոց յուղարկաւորութիւնները։ Գերեզմաննոցին գետինը իւր հարաւային և հիւսիսային գիծերուն վրայ շարունակ տարբեր չափեր ունի՝ արտաքին բացատանին, լատին գերեզմաննոցին, և տաճկական գերեզմանին պատճառած տարբերութիւններուն համեմատ, և միայն արեւմտեան ծայրն է որ բոլոր լայնքին վրայ պատէ պատ ամբողջաբար հայ գերեզմաննոց է։ Այդ մասին մէջ կը գտնուին ընդհանրապէս ասորի և ղպտի և եթովպացի մեռելները, որոնք առանձինն գերեզմաննոց չունին, և իբր հետեւակ ազգեր՝ Հայոց գերեզմաննոցին մէջ կը հիւրասիրուին, զգուշանալով միշտ որ օր մը սեպհականութեան յաւակնութիւն չյարուցանեն։ Հայ հռոմէականներ մէկ երկու տուն հազիւ են, մէկ քանի տուն ալ հայ բողոքականներ են, և երկուքին ալ մեռելները օտարազգի հռոմէականներուն և բողոքականներուն գերեզմաննոցները կը թաղուին։*

112. — *Գերեզմաննոցին ներքինը բնաւ յարդարանք և զարդարանք չունի, այլ նախնական ոճով ազատ դաշտ մըն է, որուն մէջ առանց կարգի և դասակարգի թաղուած են հայ ննջեցեալներ։ Այս պատճառաւ խառն կերպով կը ներկայանան եպիսկոպոսներու և վարդապետներու, միաբաններու և մայրապետներու, ուխտաւորներու և պանդուխտներու գերեզմանները։ Իսկ ընդարձակ մաս մը կը գրաւեն Երու-*

սաղէմի հայ քաղաքացիներ, այր և կին, ծեր և տը-
ղայ։ Աւելի խուռն են գերեզմանները՝ վանքին շրջա-
պատէն և բացատանի պատէն և լատին գերեզման-
նոցէն փակուած մասին մէջ, բայց հետզհետէ կ'ըն-
դարձակուին դէպ արեւմուտք։ Տապանաքարեր բա-
ւական շատ են, ընդհանրապէս գետնին վրայ ձգուած,
կամ ոտք մը բարձրութեան վրայ դրուած տափարակ
քարեր՝ քանի մը տող գիրերով։ Թուականները դի-
տելով կը տեսնենք որ ԺԸ. դարու վերջին կէսէն ա-
ռաջ տապանաքարեր հազիւ քանի մը հատ կը տես-
նուին, ինչ որ նշան է հնագոյններուն վերցուելուն
կամ գողցուելուն և կամ շինութեանց գործածուե-
լուն։ Վերջին ատեններ միայն քանի մը հատ սովո-
րականներէն աւելի աչքառու շիրիմներ դրուած են,
զոր օրինակ Եգիպտոսէ փոխադրուած Ներսէսեան Ա-
բամի և Երուսաղէմացի Մերկերեան Պօղոսի գերեզ-
մանները։

113. — Տապանագիրներու առձեռն հաւաքածոյի
մը մէջ, որ լիակատար չէ, և նորերը բնաւ իսկ չի պա-
րունակեր, կը տեսնենք որ բացատանի պատին զու-
գահեռական 19 շարքերու մէջ 365 տապանաքարեր
կը գտնուին, առանց տապանաքարի թաղուած կամ
տապանաքարերը վերցուած գերեզմանները չհաշուե-
լով։ Այս 19 շարքերու մէջ 12 եպիսկոպոսներու ա-
նունները կը գտնենք, որք են՝ Գէորգ Ադրիանուպոլ-
սեցի 1801ին թաղուած, Աբրահամ Գերմանիկցի 1806,
Ստեփան Կարնեցի 1807, Գրիգոր Մշեցի և Կարապետ
Եւքերէցի 1812, Պետրոս Կեսարացի 1813, Ստեփանոս
Եւդոկիացի 1815, Գրիգոր Դատապացի 1827, Աստուա-
ծատուր Կոստանդնուպոլսեցի 1830, Գրիգոր Էօտէմիշ-

ցի 1832, Երեմիա Եւդոկիացի և Աբրահամ Բիւրա-
կանցի 1835։ Վարդապետներու տապանաքարեր կան
38 հատ, մայրապետներու 18, իսկ մնացեալները միա-
բաններու և ուխտաւորներու և մանաւանդ Երուսա-
ղէմացիներու գերեզմաններ են։ Ինչպէս ըսինք, գե-
րեզմաննոցի մնացեալ մասերու մէջ թէ՛ հին և թէ Նոր
ժամանակներու տապանաքարեր քանի մը պատիկ ա-
ւելի են, բայց անոնց հաւաքածոյն չգտանք, և նորէն
կազմելն ալ ստիպողական չտեսանք։ Յիշենք միայն
հիւրերէն՝ Էջմիածնայ միաբան Սմբատեան Մեսրոպ
արքեպիսկոպոսը 1911ին թաղուած, Արմաշու միա-
բան Շիշմանեան Ղևոնդ եպիսկոպոսը 1904ին, և Վա-
րագայ միաբաններ՝ Փիրղալէմեան Ղևոնդ վարդապե-
տը 1891ին, և Մոկացեան Մեսրոպ վարդապետը 1892
ին։ Իսկ Երուսաղէմի Աթոռին արդիւնաւոր եպիսկո-
պոսներէն յիշենք Փիլիպպոս Նաճարեանը 1894ին,
Աստուածատուր Տէր Յովհաննէսեանը 1900ին, Ներ-
սէս Գէորգեանը 1906ին, և Մամբրէ Մարկոսեանը
1907ին։ Զանց կ'ընենք վարդապետներու և միաբան-
ներու յիշատակութեան մտնել, որ բազմաթիւ են։

111. — Մինչև այստեղ աշխատեցանք Երուսա-
ղիմայ պատրիարքական Աթոռը պարունակող շինու-
թեանց նկարագիրը տալ արտաքին կամ նիւթական
տեսակէտէն, թէպէտ համառօտ՝ բայց որչափ հնար է
ամփոփ և կարևորագոյն կէտերը պարունակող նկա-
րագիր մը։ Մեր առջևը կայ նաև ոչ նուազ ընդար-
ձակ ասպարէզ մը Հայկական Երուսաղէմի նկարագիրը
լրացնելու, զոր կը կազմեն ազգային սեպհականու-
թիւնք աթոռական շրջափակէն դուրս, և միանգամայն
ընկերովի սեպհականութեանց մէջ Հայոց վայելած

մասնակցութիւնն ու իրաւունքները։ Բայց մեզի նպատակ ըրած էինք՝ նիւթական նկարագիրին հետ Հայկական Երուսաղէմի թաղային տեսակէտով ալ զբաղիլ (յօդ. 2)։ Արդ որպէս զի մեր նախապէս հաստատած ծրագիրէն շեղած չըլլանք, և գրուածին ալ ճաշակի տարբերութիւն տալով ձանձրացուցիչ ըլլալէ խորշինք, յարմարագոյն կը դատենք նախ երկրորդ մաս մը կազմել թաղային նկարագիրով, և երրորդ մասի թողուլ արտաքոյ Աթոռոյ բացարձակ կամ ընկերովի սեպհականութիւնները, և անոնց վերաբերեալ նկարագրական, պատմական, ծխական և յարաբերական տեղեկութիւնները։

---



# ՎԱՐՉԱԿԱՆ ԿԵԱՆՔ

115.— Ինչպէս ամէն հաստատութիւնք, Երուսաղէմ ալ հին ժամանակներու մէջ կառավարուած է մեծաւորին բացարձակ իշխանութեամբ. ամենայն ինչ պատրիարքին կամքէն կախում ունենալով։ Բայց երբ որ պատրիարքի բացարձակ կամքը տիրած կ'ըսենք, իրաւապէս կամ իրաւունքի տեսակէտէն կը խօսինք, զի իրապէս, այսինքն գործադրութեան տեսակէտէն՝ պատրիարքներ ամէն բան իւրովի և ալիկամի կատարած չեն, և Աթոռին մէջ միշտ գտնուած են կարող և յաջողակ և ճարպիկ անձեր, որոնք Աթոռին

վարչական ուղղութեան վրայ եթէ ոչ միութիւն, գոնէ զօրաւոր աղերսութիւն ունեցած են, և պատրիարքներն ալ անոնց հետևած են։ Միայն թէ կանոնական պայմաններ գծուած չեն և ձևեր սահմանուած չեն։ Երուսաղէմի համար կազմուած կանոններուն անդրանիկը կրնանք ընդունիլ 1725 օգոստոս 21ին հաստատուած երեք գլուխները, զորս Կարապետ կաթողիկոս հռչակած է Կ. Պոլսոյ մէջ, և որոնց նպատակն է եղած Երուսաղէմի Աթոռը Կ. Պոլսոյ Աթոռին ստընձգութիւններէն զերծ պահել։ Իսկ ներքին վարչական ձևը կարգադրող կանոններուն առաջինը եղած է 1752ին Թէոդորոս Խորենացի պատրիարքին նախաձեռնութեամբ և Երուսաղէմի Աթոռէն Կ. Պոլսոյ Աթոռը փոխադրուած Յակոբ Նալեանի համահաճութեամբ կազմուած Կանոնական բան կոչուածը, որուն պատճէնը չենք գտած՝ մանրամասնութիւնները ճշդելու համար։ Այդ նախատիպ Կանոնին ընդարձակումն եղած է Յովակիմ Քանաքեռցի պատրիարքի ժամանակ, Կ. Պոլսոյ Զաքարիա Կաղզուանցի պատրիարքին և իշխաններուն և համայն ազգի համաձայնութեամբ նուիրագործուած Կանոնագիրը, որով վեց խորհրդականներ կամ Նազըրներ գրուեցան պատրիարքին գործակցելու և միասին կառավարելու համար։ Այդ Կանոնագիրը սահմանուեցաւ 1791 յունիս 24ին, և աւելի ամրացաւ 1794ին Պետրոս Եւդոկիացի պատրիարքին ձեռքով, այլ վերահաս և տևական տագնապներ անոնց շարունակութիւնը ընդհատեցին։ Գործերու նոր կարգադրութիւն տալու համար՝ Պօղոս Ադրիանուպոլսեցի, բնիկ միաբան և Կ. Պոլսոյ նախկին պատրիարք, իբրև ծայրագոյն կառավարիչ Երուսաղէմ յղուեցաւ 1824ին, որ իւր ազդեցութիւնը պահեց մինչև իւր

մահը 1853 մայիս 4, նոյն խել Գաբրիէլ Նիկոմիդացի պատրիարքին Աթոռ դառնալէն ետքը, բայց յատուկ կանոնագիրի խօսքը չէ եղած այն ատեն։

116. — Երբ որ Ազգային Սահմանադրութիւնը կազմուեցաւ 1860 մայիս 24ին, և հաստատուեցաւ 1863 մարտ 17ին, բոլոր ազգային մարմիններն ալ մասնաւոր կանոնագիրով օժտելու փափաքը տարածուեցաւ, և առոր հետևանքն եղաւ Երուսաղէմի համար ալ կանոնագիր մը կազմել 1865 մարտ 19ին, Եսայի պատրիարքի առաջին տարին, և հաստատուեցաւ Ընդհանուր Ժողովով, և սահմանադրական շրջանի առաջինն եղաւ։ Այդ Կանոնագիրը 5 գլուխներու ներքև 45 յօդուածներ ունի։ Անոր զօրութեամբ պատրիարքի մօտ պիտի գտնուի վեց միաբաններէ բաղկացած Տնօրէն Ժողով մը, աւագ լուսարարն ալ միասին համրելով, և պատրիարքին նախագահութեան ներքեւ պիտի վարէ կրօնական, քաղաքական, ուսումնական և ելևմտական գործոց տեսչութիւնը (յօդ. 7)։ Տնօրէնը առանց կեդրոնի արտօնութեան պիտի չկարենայ 50,000 ղուրուշէ աւելի փոխառութիւն ընել (յօդ. 36), ոչ մի կալուած ձեռքէ պիտի չհանէ, նոր գնում ալ միայն ստիպողական հարկին պիտի կարենայ ընել (յօդ. 38)։ Ամէն որոշմանց գործադիրը և յարաբերութեանց միջնորդը պատրիարքը կը մնար միշտ (յօդ. 12), և վարիչ մարմին՝ Տնօրէն Ժողովն էր։ Իսկ ընտրութեանց և համարատուութեանց և մասնաւոր կանոնագրութեանց ձեռնհասութիւնը՝ Միաբանական Ընդհանուր Ժողովին էր տրուած։ Մնացեալ մանրամասնութիւնները համաձայն էին ընդհանուր վարչական ձևերու։ Այս դրութիւնը տևեց մինչև 1880ի փոփոխուած Կանոնագիրը։

Այս անգամ Տնօրէն ժողովոյ վեց անդամներէն իւրաքանչիւրը որոշ պաշտօնակալներ եղան. լուսարարապետ, փոխանորդ, ելեւմտապետ, ուսումնապետ, տընտեսապետ և կալուածապետ, և բոլոր միացած պաշտօնեաներ անոնց ենթարկուեցան (յօդ. 31)։ Պաշտօնակալներ լիրաւունք ստացան անկախաբար գործել իրենց սեպհական ճիւղերուն մէջ, ընդհանուր խնդիրները ժողովով որոշելու պայմանով (յօդ. 33)։ Փոխառութեանց համար սահմանուեցաւ մինչեւ տարեկան 36,000 ղուրուշի գումարը, իսկ աւելին Միաբանական Ընդհանուր ժողովին թողուեցաւ (յօդ. 56)։ Վաճառումներ և գնումներ ալ Միաբանական ժողովին շըրջանակին մէջ մնացին, բայց ամէն տարի համարատուութեան տեղեկագիր պիտի յղուէր Ազգային Ընդհանուր ժողովին (յօդ. 44)։ Այս կանոնագիրն ալ նորոգուեցաւ 1888ին, Յարութիւն պատրիարքի Երուսաղէմի պաշտօնին մտնելուն սկիզբը։ Տնօրէն ժողովին փոփոխելի անդամները հինգէ վեցի բարձրացան, անփոփոխ լուսարարապետէն զատ. յատուկ պաշտօնակալութիւնները վերցուեցան (յօդ. 34). Տնօրէնի պաշտօնավարութիւնը քառամեայի բարձրացաւ, երկամեայ կիսովի նորոգումներով, և ընտրութիւնները փակեալ ցանկերու վրայ ամփոփուեցան (յօդ. 29), իսկ փոխառութիւն և վաճառում և գնում բոլորովին Տնօրէնին թողուեցաւ (յօդ. 31)։ Այս կանոնագիրին ալ վերաքննութեան ձեռնարկուեցաւ 1909ին, բայց ուսումնասիրութիւնք երկարեցան և ելքի մը չյանգեցան։ Վերջապէս 1913ին Ազգային Ընդհանուր ժողովի կողմէն նոր Կանոնագիր մը կազմուեցաւ, և քուէարկուեցաւ դեկտեմբեր 7ին, որ ո՛չ ըստ օրինի՝ Միաբանութեան հետ համախորհուրդ կազմուեցաւ, և ոչ

*Աթոռին և Միաբանութեան օրինական գիրքը յարգուեցաւ, և ո՛չ ալ դիտուած նպատակին յարմար գըտնուեցաւ։ Ուստի կանոնական դիտողութեանց և ծանր դժուարութեանց տեղի տուաւ և գործադրական վիճակի չանցաւ, և* 1888*ի Կանոնագիրին գրութիւնն է որ տակաւին տեւականութեան մէջ կը մնայ, ինչպէս յատենի Ընդհանուր Ժողովոյ ալ յայտարարուեցաւ։*

117. — *Որչափ ալ այս է այժմեան օրինական վիճակը, սակայն պարագայից բերմամբ ինչ ինչ պարտաւորութիւններ մուծուած են անոր մէջ։ Յարութիւն պատրիարքի տարիքն ու տկարութիւնը Աթոռին մէջ խնդիրներու քաջալերութիւն տուած էր, որուն իբր դարման* 1909*ին զայն ամբաստանելու և պաշտօնէ դադրեցնելու միջոցը խորհուեցաւ, որ բնաւ նպատակին յարմար չէր, և լոկ օգնականի մը անուանումը բաւական էր կացութիւնը բարւոքել։ Ընդհակառակն կեդրոնէն տեղապահ մը անուանուեցաւ, որ ո՛չ օրինական և ոչ անձնական պահանջներուն համապատասխանեց, և արդիւնաւոր ալ չեղաւ։ Երբոր* 1910 *հոկտեմբեր* 5*ին պատրիարքը վախճանեցաւ, միաբանական ընտրութեամբ տեղապահի անուանումը գանց եղաւ, և կեդրոնի յղած անձը պաշտօնի վրայ մնաց։ Պատրիարքական ընտրելեաց ցանկը պատրաստել տալու ձեռնարկուեցաւ, բայց հետեւանքը գոհացուցիչ չեղաւ։ Նոր ցանկ կազմել տալու համար յղուած պատուիրակը և այս առթիւ կեդրոնէ անուանուած տեղապահն ալ բռնութեամբ վտարուեցան, և առժամեայ փոխանորդով վարչութիւն մը կազմուեցաւ։ Կեդրոնը որոշեց լիազօր պատուիրակ մը և ընկեր մը յըղել, և խորհրդարանական ներկայացուցիչն ալ միասին*

ղրկեց, որոնք 1914 մայիս 6ին տեղւոյն վրայ հասան, բայց ընկերը յունիս 3ին և ներկայացուցիչը յունիս 29ին շատ շուտ մեկնեցան, և առժամեայ փոխանորդական պաշտօնն ալ բարձր հրամանով դադարած ըլլալուն, լիազօր պատուիրակին մնաց կացութեան տիրանալ, և նա է որ այժմ առժամեայ վարիչի պաշտօնը կը կատարէ տարիէ ի վեր, խորհրդակցութեամբ Տնօրէն Ժողովոյ մնացորդին, զի արտաքին և ներքին պարագայք անոր վերակազմութեանն ալ պատեհ չեն ընծայեր: Այսպէս բռնադատական եղելութիւնք իրենց պատահական ելևէջներով առժամեայ դրութիւն մը ստեղծեցին, և ժամանակիս փափուկ հանգամանքները և տագնապալի պարագաները տակաւին կը ստիպեն նոյն առժամեայ վիճակին մէջ շարունակել, մինչև որ հնար ըլլայ հաստատուն գետնի մը վրայ քալել, որուն խափանարարներէն մեծն ալ 1913ի կանոնագիրն է, որ թէպէտ առկախեալ և գործնականապէս խափանեալ, սակայն իսկապէս դադարեալ չի կարծուիր, ինչպէս պաշտօնը լքած և երկու տարիէ ի վեր գործէն և տեղէն հեռացած տեղապահն ալ զինքն պաշտօնէ դադարած չի կարծեր: Մեր նպատակէն դուրս էր ընդարձակ պատմական տեղեկութիւններ տալ, բայց հընար չէր ներկայիս վրայ իսպառ լռել, որչափ ալ մեր բացատրելիք վարչական կեանքը ոչ այժմէական կացութեան, այլ օրինական դրութեան տեսակէտէն նըկատել ուզենք:

118. — Տնօրէն Խորհուրդը պաշտօնակալութեան ոճով կազմելու սկզբունքը, որ 1880ի կանոնագիրին հիմն էր, թէպէտ 1888ի կանոնագիրին մէջ փոխուեցաւ, բայց գործնականապէս չջնջուեցաւ: Բաւական

ըլլայ իբրեւ օրինակ յիշել որ Ղեւոնդ վարդապետ Մաք-
սուտեան 1888էն ետքն ալ չարունակ Տնօրէն Ժողո-
վոյ մէջ մնաց, ելեւմտապետի եւ կալուածապետի պաշ-
տօնները պաշտօնապէս վրան պահելով մէկտեղ: Մեր
տեսութեամբ ալ 1880ի դրութիւնը օգտակար կողմեր
ունէր, զի գործերը վարելու հոգը կ'ամփոփուէր ա-
նոնց վրայ, որ միանգամայն գործերուն պատասխա-
նատուութիւնը կը կրէին, եւ միւս կողմէն կը նպաս-
տէր կարողագոյն անձանց յանձնելու վարչական ղեկը:
Հարկաւ պէտք մըն է պաշտօնակալները յաջողակ եւ
կարող անձերէ առնել, բայց երբ անոնք Տնօրէն Ժո-
ղովէ կը հեռացուին, հարկ կ'ըլլայ երկրորդական ան-
ձեր ժողովականութեան կոչել, եւ կարողագոյնները
ակարագոյններուն ներքեւ դնել, գործերու ընթացքը
խանգարել, եւ միջադէպներու դուռ բանալ: Արդէն
ընդհանուր աշխարհի սահմանադրական դրութեան մէջ
իւրաքանչիւր ճիւղի վարիչներն են որ նախարարու-
թիւնները կը կազմեն: Միեւնոյն անձը համարատու եւ
համարատու չընելու փաստը, որ 1888ի կանոնագիրին
մեծ փաստը եղաւ, Տնօրէն Ժողովը աւելի համարա-
տու քան վարիչ մարմին ենթադրելու սխալ կարծիքէն
յառաջ եկաւ. մինչ Տնօրէն անունն իսկ վարիչ եւ գոր-
ծիչ կը նշանակէ, եւ ո՛չ հսկող կամ համարատու: Հա-
մարատուութիւնն ալ ոչ թէ ամէն վայրկեան ամէն
գործի պիտի հետեւի, այլ պարբերաբար պիտի կատա-
րուի, ինչ որ ուղղակի կը պատկանի Միաբանական
Ընդհանուր Ժողովի, կամ Ազգային Ընդհանուր Ժո-
ղովի, կամ թէ երկուքին միանգամայն, աստիճանի եւ
ժամանակի տարբերութեամբ: Իսկ անոնց չգործած ա-
տենը բաւական է ամէն կարեւոր որոշումները ժողո-
վական համաձայնութեամբ տալ, որ կը բաւէ հսկո-

ղութեան կամ համարատուութեան պահանջը իր նպատակին հասցնելու։ Ընինք թէ պաշտօնակալութեան դրութիւնը գործնականապէս չդադրեցաւ. և այս անչափ ընդարձակօրէն կը ճշմարտուի, որ ներկայ դրութեան մէջ, պաշտօնակալներու վայելած ինքնօրէնութիւնը կերպով մը պատրիարքական իշխանութիւնն ալ կը չափաւորէ, երբոր առանց անոր գիտակցութեան և հաւանութեան ալ, լուսարարապետը՝ եկեղեցւոյ մէջ, փոխանորդը կամ թարգմանը՝ միաբաններուն նկատմամբ, ելևմտապետը՝ առուծախի և տալիքանելիքի մասին, և ուսումնապետը վարժարանաց և ուսմանց վրայ կարգադրութիւններ ընելու իշխանութիւն կը վայելեն։ Կը հասկնանք որ ապակեդրոնացումը օգտակար ըլլայ պետական ընդարձակութեան մէջ, այլ ոչ թէ վանական շրջանակին մէջ, որ ընտանեկանի կերպաւորութիւնն է իր սահմանափակ ամփոփումովը, և աւելի ընտանեկանին քան պետականին պարտի հետևիլ։

119. — Այդ ընտանեկան կերպաւորութեան հետևանքն է, որ անյեղլի կանոն է՝ ամէն պաշտօնակալ և պաշտօնեայ, և նոյն իսկ պատրիարքը, միաբանական շարքերէն առնել, և նոր կանոնագիրին մէջ այդ պահանջին ժխտումը՝ Երուսաղէմի Աթոռին խնդարում դատուեցաւ, քանի որ աթոռական և միաբանական պաշտօնակալները միաբանական մարմինէն օտար անձեր պիտի ըլլային, և առանց Միաբանութեան պիտի ընտրուէին կամ անուանուէին։ Տիրող դրութեան զօրութեամբ, որ անյիշատակ ժամանակներէ ի վեր և բազմադարեան հնութեամբ հաստատուն է, միաբաններ են և միաբաններ պիտի ըլլան ամէն պաշտօնակալներ և պաշտօնեաներ, պատրիարքէն մինչև

յետին աշխատաւորը։ Այդ դրութեան հետեւանքն է որ միաբաններ աշխատութեան փոխարինութիւն ալ չունին, իբր զի իրենց տունին աշխատողներ կը նկատուին, եւ ո՛չ վարձկաններ։ Եթէ վերջին ժամանակներ պաշտօնակալներու եւ պաշտօնեաներու տարեկաններ, եւ աշխատաւորներու ամսականներ որոշուեցան, ոչ միայն շատ համեստ քանակներով են, այլ տիրապէս աշխատութեան վարձք չեն, այլ փոխարինութիւն ըզգեստի եւ բնակութեան եւ անձնական մանր ծախքերու, զոր երբեմն Աթոռը իրական կամ նիւթական կերպով կը հայթայթէր, այլ վերջերը դիւրագոյն եւ յարմարագոյն սեպեց գումարի մը կապել, եւ իւրաքանչիւրին կամքին եւ ճաշակին թողուց իրենց մասնաւոր պէտքերուն հոգածութիւնը։ Այդ փոխարինութեան բարձրագոյնը տարեկան 30 ոսկի է միայն երեք պաշտօնակալներու համար, այսինքն փոխանորդին եւ լուսարարապետին եւ ելեւմտապետին, 20 ուսումնապետին, 15 թարգմանին եւ դիւանապետին եւ դարպասընկալին եւ Կ. Պոլսոյ փոխանորդին, 12 ժողովականներուն, իսկ մնացեալները 10է մինչեւ 5։ Ոսկի ըսելով միշտ գաղղիական 20 ֆրանքնոցը կ'իմացուի, որ 1896էն ի վեր ընդունուած է օսմանեան ոսկւոյ տեղ, պարզապէս խնայողութեան համար։ Իսկ աշխատաւորներուն տրուածը աստիճանաբար երկու, մէկուկէս, մէկ եւ կէս մէճիտիէ ամսականի մէջ կը խաղայ։ Ինչպէս կը տեսնուի՝ տիրապէս վարձքի խնդիր չի կրնար ըլլալ, զի տարեկան ստացողներուն անձին եւ բնակութեան պէտքերը Աթոռը իրենց վրայ թողած է, իսկ ամսական առնողներուն՝ միայն անձնական պէտքերը։

120.— Զանազան գործերու վրայ գտնուող պաշ-

տօնեաններ պաշտօնակալի կամ գլխաւորի մը ենթարկուած են, իրենց մասնաւոր պաշտօնին տեսակէտէն միայն. զի ինչ որ եկեղեցական կամ դրամական է, ընդհանուր կերպով լուսարարապետի և ելեմտապետի ձեռքը կեդրոնացած է։ Լուսարարապետին շըրջանակին մէջ են ժամօրհնողը, ժամասացներ, խոստովանահայրեր, Սուրբ Տեղեաց տեսուչներ, ժամարարներ, լուսարարներ, ժամկոչներ, և բոլոր դասականներ, այսինքն եկեղեցւոյ դասին մէջ տեղ ունեցողներ, արքեպիսկոպոսներէն մինչև աշակերտները։ Ելեմտապետի շրջանակին մէջ կը գտնուին՝ մատակարարը, գանձապահը, համարակալը, հաւաքիչը, մառանապետը, հանդերձապահը և ամէն անոնք որ առուծախի գործ ունին և ամսատետրով հաշիւ կը ներկայեն։ Ուսումնապետին ենթարկուած են Ժառանգաւորաց Վարժարանը, քաղաքացի մանչերու և աղջիկներու նախակրթարանները, երկսեռ մանկապարտէզը, թանգարանը, մատենադարանը, ընթերցարանը և տպարանը։ Փոխանորդը գործ ունի ամբողջ Միաբանութեան հետ. միայն թէ սովորական գործերը Թարգմանին ձեռքով կը կատարուին, որ ուղղակի ալ կը վարէ նոյն գործերը, երբ պաշտօնապէս նշանակուած փոխանորդ չգտնուի։ Աւագ Թարգմանը միջնորդն է միանգամայն բոլոր արտաքին յարաբերութեանց և անդամակից է կառավարչական ժողովին։ Կալուածապետը, որ այժմ շինուածոց տեսուչի անուն կը կրէ, գլխաւորաբար հոգ կը տանի շինուածոց պահպանութեան և առձեռն նորոգութեանց, զի նորոգ շինութիւններ ժամանակին յատուկ կերպով կատարուած են և շատոնց է որ դադարած են։ Ս. Յարութիւնի և Ս. Փրկիչի տեսուչներ Քրիստոսի և Աստուածածնի

գերեզմաններուն պահպանութեան և պաշտամունքներուն կը հսկեն և տեղական գործերը կը հոգան, սընունդն ու պիտոյքը ուղղակի Աթոռէն ստանալով, իբր թէ մայրավանքին բաժիններն ըլլային։ Բեթղեհէմի և Յոպպէի տեսուչներ և Կ. Պոլսոյ փոխանորդը ուղղակի կը հոգան և կը պահեն իրենց փոքրիկ միաբանութիւնները և հաշիւ կը ներկայեն իւրաքանչիւր ամսագլուխ։ Իսկ Ռեմլէի, Վերիտոնի, Դամասկոսի և Լաւոդիկէի տեսուչները որոշ գումար մը կը ստանան Աթոռէն կամ տեղական կալուածներէն, և անով իրենց պէտքերը կը հոգան։ Երուսաղէմէ կամ Պաղեստինէ դուրս գտնուող կալուածներ Աթոռէն նշանակուած տեսուչներով կամ գործակալներով կամ հոգաբարձութիւններով կը մատակարարուին, և իրենց հաշիւները ուղղակի Տնօրէն ժողովին կը ներկայեն, ուսկից ելեւմտապետին կը փոխանցուին։

121. — Երուսաղէմի Աթոռին վարչական գործունէութեան ընթացքը ամէն ազգային հաստատութեանց մէջ ընդունուած ձեւերէն տարբեր չէ։ Պաշտօնակալներ իրենց շրջանակին գործերը իւրովի կը տրամադրեն, և երբ հարկ տեսնեն՝ պատրիարքին խորհուրդին կամ հրահանգին կը դիմեն, և եթէ ընդհանուր և կարեւոր խնդիր համարին՝ Տնօրէն ժողովին կը հանեն։ Ամէն խնդիր և դիմում պատրիարքին կ'ուղղուի, որ կամ Տնօրէն ժողովին կը յղէ, կամ պաշտօնակալին կը յանձնարարէ, իսկ ի ստիպել հարկին իւրովի կը հրահանգէ կամ կը տնօրինէ և յետոյ Տնօրէնին կը հաղորդէ։ Արտաքիններու հետ յարաբերութիւններ բացարձակապէս պատրիարքին հետ կը կատարուին, թղթակցութիւնները ինք կը ստորագրէ,

լոկ բերանացիները աւագ թարգմանի ձեռքով կատարել կուտայ։ Կառավարական ժողովներու մէջ ալ, ուր հոգևոր պետերու աթոռ տրուած է, աւագ թարգմանը կը նստի և կը խօսի և կը ստորագրէ, և որովհետև բուն ռէիսը ռուհանի չէ, լոկ ռուհանի անունով կը յիշուի պաշտօնական գրութեանց մէջ։ Պատրիարքը կրնայ ի հարկին թարգմանէն զատ ուրիշ յարմար միաբանի կամ դուրսէն անձի մը յանձնարարել ինչինչ արտաքին յարաբերութիւններ, երբոր բացառիկ պատուասիրութեան կամ լեզուագիտութեան կամ գործին հըմտութեան պարագաներ զայն կը թելադրեն։

122. — Երուսաղէմի և Կ. Պոլսոյ պատրիարքութեանց մէջ ալ յարաբերութեանց կապ մը կայ, և անհրաժեշտ էր որ ըլլար․ բայց տարբեր է այն յարաբերութենէն որ կը տիրէ կեդրոնական վարչութեան և գաւառական վարչութեանց միջև։ Երուսաղէմի Աթոռը ուղղակի յարաբերութիւն կը պահէ ո՛չ միայն տեղական և պետական իշխանութեանց հետ, և իրեն իրաւասութեան ենթարկուած երկիրներու՝ Դամասկոսի և Վերիտոնի և Լիբանանու կուսակալութեանց հետ, այլ և կայսերական պալատան և նախարարութեանց հետ, ինչպէս նաև Մայր Աթոռոյ և բոլոր ազգային և օտար իշխանութեանց հետ։ Երկու պատճառներ կամ կապեր առիթ կ'ընծայեն կեդրոնական վարչութեան, կամ որ նոյն է Կ. Պոլսոյ պատրիարքութեան հետ սերտ յարաբերութիւն պահելու։ Մէկն է տաճկահպատակ հայութեան իբր ամբողջական մի մարմին նկատուելուն պահանջը, և միւսն է Երուսաղէմի Աթոռին և սուրբ տեղեաց մէջ՝ ազգային իրաւանց պաշտպանութեան համար ազգին ձայնը լսելի ընելու հարկը, և ա-

նոնց պահպանութեան համար ազգովին ընձեռուած բարեպաշտական առատաձեռնութեան պահանջը։ Վերև յիշեցինք Երուսաղէմի և Կ. Պոլսոյ պատրիարքութեանց միջև եղող յարաբերութեանց առանձնայատուկ կերպարանը, և ասոր հետևանքն է որ Ազգային Սահմանադրութիւնն ալ՝ Երուսաղէմի Աթոռին յարաբերութիւնները ուղղակի Ազգային Ընդհանուր Ժողովին հետ կապած է, ելևմտական համարատուութեան մասին լռութիւն պահած է, Երուսաղէմի Աթոռին Կ. Պոլսոյ Աթոռին վրայ նախադասութիւնը յարգած է, և Երուսաղէմի մասին ըլլալիք կարգադրութեանց համար Աթոռին կամ Միաբանութեան համընթացութիւնը անհրաժեշտ դատած է։ Սահմանադրութիւնը յիշած է միայն պատրիարքի ընտրութեան մէջ կեդրոնին ձայնը. իսկ սովորութիւնը նուիրագործած է ելևմտացոյցի և հաշուեցոյցի քննութիւնը։ Բացառիկ պարագաներ ալ արդարացուցած են բացառիկ և ժամանակաւոր կարգադրութիւններ, բայց առանցմէ չէր հետևիր որ Կ. Պոլսոյ կեդրոնը կարենայ յառաջել մինչև Աթոռին և Միաբանութեան օրինական և իրաւական դրութեան այլայլումը կամ դադարումը։ Հետևաբար Երուսաղէմի Աթոռին վարչական կեանքը կըրնայ յատկանշուիլ իբրև իր մէջը ամբողջական, իրաւանց մէջը ինքնուրոյն, և կայութեան մէջ լրացած յատուկ վարչական շրջանակ մը, որ միայն պայմանաւորեալ յարաբերութիւններով կապուած է կեդրոնին կամ Կ. Պոլսոյ հետ։

---

# ՑԱՆԿ





# ԺԴ

# ՎԱՆԱԿԱՆ ԿԵԱՆՔ

123. — *Հայ վանականութիւնը մեծաւ մասամբ կը պահէ իր նախնական ձեւը եւ կը տարբերի միջնադարեան արեւմտեան վանականութենէն, որուն քիչ ու շատ նմանութիւնը փորձեց հաստատել Սարգիս Պատրիարք՝ Սիւնեաց Մեծ Անապատին մէջ, եւ որուն առանցքը կրնան նկատուիլ ծանօթ երկու կանոնները.* ամենայն ինչ հասարակաց լինել, եւ լինել հնազանդ եւ կատարող կամաց առաջնորդին։ *Երուսաղէմի Կանոնագիրը կը ներէ սեփհական ստացութիւն ունենալ, շահիլ եւ շահագործել, եւ միաբանին իրաւունք կուտայ վերջին աստիճանէն եօթը տարի ետքը Միաբանութենէ հրաժարիլ, եւ Միաբանութիւնն ալ կ'արտօնէ միաբանը հրաժարեցնել, ինչ որ գժբախտաբար ճամբայ բացած է կանուխէն գլխուն ճարը հոգալու եւ պահեստի գումար մը հայթայթելու։ Այս պայմաններու ներքեւ վանականութիւնը աւելի ընկերակցութիւն կը դառնայ քան լիակատար միաբանութիւն. ուստի միաբանակցութեան գաղափարը ճշդելու եւ անոր իրականացումը շեշտելու համար պէտք է հրաժարման եւ հրաժարեցուցման ազատութիւնները վերցնել։ Այս միտքը կանուխէն յայտնած եմ 1907 տարւոյ վերաքննեալ Կանոնագիրի նախաքննական գրութեամբս, եւ աւելորդ կը դատեմ նոյն կէտին անդրադառնալ, եւ ուղղակի կը մտնեմ տիրող կացութիւնը նկարագրել։*

124. — *Երուսաղէմի վանականութիւնը ուսումնասիրելու համար, պէտք է նախապէս զատել զայն*

կազմող բաժինները, զի իւրաքանչիւր բաժին իրեն յատուկ պարագաներ կը պարունակէ։ Նկատուելիք բաժիններն են. Նախ՝ վեղարաւորներ, այսինքն եպիսկոպոսներ և վարդապետներ և աբեղաներ. երկրորդ՝ ուրարաւորներ, այսինքն սարկաւագներ և հրամանաւ սարկաւագներ որոնք ուրարակիր կը կոչուին. երրորդ՝ աշխատաւորներ, որոնց մէջ կը մտնեն թէ՛ սքեմ եւ վերարկու կրող դպիրներ, և թէ յատուկ գործի գլուխ գտնուող պարեգօտաւորներ, որոնք fràազգեաց ալ կը կոչուին, և որոնց հնօրեանները պապա պատուանունը կը կրեն։ Իսկ երիտասարդագոյն քրձազգեացներ աշխատալի գործեր կը կատարեն, և այսպիսիներէն նորերը, առանց Միաբանութեան անդամակից ընդունուելու, ժամանակ մը ի փորձ կը գործածուին։ Յատուկ բաժիններ կը կազմեն աշխատաւոր կիները կամ մայրապետները և ժառանգաւոր աշակերտները։

125. — Վեղարաւորները նախապէս ուրարաւոր եղած են, և ձեռնադրուած սարկաւագներ վեղարաւորներու հաւասար ձայնատէր են Միաբանական Ընդհանուր Ժողովի մէջ, և պաշտօններու ալ կրնան կոչուիլ։ Պարզ ուրարակիրներ կամ հրամանաւ սարկաւագներ ձայնի իրաւունք չունին, այլ սարկաւագներու համահաւասար եկեղեցական պաշտամանց կը ծառայեն, միայն վերաբերում չեն ըներ եւ մայր տաճարի մէջ պատարագի աւետարան չեն կարդար։ Սարկաւագութեան ձեռնադրութիւնը կը ստանան քանի մը տարի իբր պարզ ուրարակիր մնալէ ետքը(*) և սարկա-

---

(*) Այժմ սարկաւագ կը ձեռնադրուին նաեւ ժառանգաւորաց վարժարանի այն շրջանաւարտ սաները, որոնք

*ւագութենէ քանի մը տարի ետքը քահանայական ձեռնադրութիւն և աբեղայական վեղար կ'ընդունէին։ Երկու դիրքերու մէջ ալ մնալու տարիները ճշդիւ որոշուած չեն, բայց ընդհանրապէս երեք տարի և աւելի կը մնան իւրաքանչիւրին մէջ, և սովորաբար մի խումբը բարձրագոյն աստիճանի անցած ատեն, ետքիններն ալ կարգըստկարգէ կը բարձրանան։ Ուրարի եւ հետեւաբար վեղարի ընդունելութեան համար ո՛չ որոշ ուսման աստիճան և ոչ ուրիշ պայման սահմանուած կայ։ Գլխաւոր պահանջը Սուրբ Տեղեաց մէջ եկեղեցական պաշտօններու և պաշտամունքներու յարմարութիւնն է, որ Երուսաղէմի Աթոռին գլխաւոր նպատակն ու անհրաժեշտ պարտքն է։ Երուսաղէմի Միաբանութեան, և նոյնիսկ Աթոռին նշանաբանը՝ Սուրբ Տեղեաց պահպանութիւնն ու ազգային իրաւանց պաշտպանութիւնն է, և այս ոգւով տոգորեալ են Երուսաղէմի միաբանները, և նոյն ոգևորութեամբ կը կատարեն տաժանակիր և դժուարին պաշտօններ, և բուռն կերպով կը պայքարին որևէ օտար ոտնձգութեան դէմ։ Եկեղեցական պաշտամանց ընդարձակութիւնը, ինչպէս իւր կարգին պիտի բացատրենք, պաշտօնէից բաւական ստուար թիւ մը կը պահանջէ, և այդ թիւը լրացնելու համար շատ անգամ հարկ կ'ըլլայ այդ կէտին դարձնել բոլոր մտադրութիւնը, և զանց ընել ուրիշ պայմաններ, որոնք իրենց կարգին նկատի առնուելու իրաւունք ունէին։*

126. — *Փափաքելի էր ուսումնական և զարգաց-*

---

*կը փափաքին հետեւիլ Ընծայարանի դասընթացքին ու կը կատարեն իրենց ուխտը։ Ծ. Հ.*

եալ միաբաններ ունենալ Երուսաղէմի մէջ, սակայն փորձառութիւնը չկրցաւ արդարացնել փափաքուած նպատակը։ Ժառանգաւորաց վարժարանին մակարդակը բարձրացնելու ճիգ մը թափուեցաւ Եսայի պատրիարքին առաջին տարիներուն մէջ և կարող ուսուցիչներ պաշտօնի կոչուեցան, որոց մէջ աւելի խօսուած է Գարեգին Մուրատեան, ապա Մելքիսեդեկ սրբազան։ Աշակերտներէն ոմանք մայրաքաղաք ալ ղրկուեցան առաւելագոյն զարգացման համար։ Քա՛ւ լիցի ուսումնական զարգացումը դատափետել, և կարծեմ թէ այս մասին կասկածներէ ալ վեր կը գտնուիմ։ Սակայն յիշեալ փորձին հետևանքները սպասման չպատասխանեցին։ Զարգացեալ կարծուածներ յաւակնեցան Սուրբ Տեղեաց ծանր պաշտօնավարութենէն խուսափիլ, ուրիշներու վրայ մեծամտութեամբ խրոխտալ, տեսակ մը նախանձոտ զգացմամբ եզական մնալու ձգտիլ, անձնական շահերու և պատիւներու ետևէն վազել, Միաբանութենէ հրաժարելով ընդարձակագոյն ասպարէզ փնտռել, շահաւորագոյն եւ պատուաւորագոյն պաշտօններու հետամուտ ըլլալ եւ աստիճանի բարձրացում որոնել։ Այսօր ալ քանի և աւելի են Երուսաղէմէ հրաժարեալ և Երուսաղէմէ հեռացեալ դուրսը պաշտօնավարող միաբանները, որոնք կրնային Աթոռին և Միաբանութեան լաւ ծառայութիւններ ընել, եթէ աչուընին դուրսի յառած չըլլային։ Դարձեալ կը կրկնեմ, թէ քա՛ւ լիցի ուսումնական զարգացումը դատափետել, մանաւանդ որ ժամանակները հետզհետէ կը փոխուին, և եկեղեցականները առանց բաւական ուսումնական պաշարի չեն կրնար այլևս իրենց պատիւին տիրանալ։ Միայն թէ Երուսաղէմի ուսումնականը պէտք չէ չիջուցանէ Սուրբ Տեղեաց ծառայու-

թեան եւ հաւատարմութեան հոգին, եւ մտաւորական զարգացման մէջ պէտք է ընդարձակ տեղ տայ օտար լեզուներու հմտութեան և Պաղեստինի վերաբերեալ պատմական և հնագիտական ուսմանց, որոնք տեղւոյն համար առանձնայատուկ և անհրաժեշտ, բայց դժբախտաբար մոռցուած պահանջներ են։

127. — Երբոր զարգացման վրայ կը խօսուի, պէտք չէ ամփոփուիլ պարզ հմտութեանց, կամ ինչպէս կ՚ըսուի ուսումներու մէջ, այլ պէտք է միտքը զարգացնել խոհական սկզբունքներով, սիրտը պատրաստել ուղիղ բարոյականով, կենակցութիւնը կազմակերպել պատշաճից կանոններով, մարմինը կրթել վայելուչ շարժուձեւով, խօսուածքը ազնուացնել համեղ և չինիչ շեշտերով։ Բայց ասոնք ստանալու համար պէտք է վարժարանէն սկսիլ, և երիտասարդութեան առեն ընտիր շփումներով և բովանդակ կեանքին մէջ բարի օրինակներով շրջապատուիլ, իսկ միւս կողմէն ինքնօգնութեամբ և օգտակար ընթերցումներով և կանոնաւոր կեանքով ինքն իրեն առաջնորդել։ Ծանր չերեւի խոստովանիլ թէ Երուսաղէմի Միաբանութեան մէջ յիշուածներէն շատ կէտեր շատերու համար փափաքելի մնացած են։ Միաբանութիւնը նոյն իսկ համախումբ տեսակցութեան սրահ չէ ունեցած, ուր ներքին ընտանութիւնը հաստատուի, և փոխադարձ յարաբերութիւններ չափաւորութիւն և կանոնաւորութիւն ազդեն։ Երկուքով երեքով մասնաւոր սենեակներու տեսակցութիւնը պառակտումներու սերմն է, բամբասանքներու առիթ է, անկանոն խօսակցութեանց գետին է։ Մանաւանդ որ այսպիսի մասնակի տեսակցութեանց մէջ նմաններն են որ զիրար կը գըտ-

նեն և իրենց ճանպուն մէջ ղիրար կը քաջալերեն։ Նոյն պատճառէն յառաջ կուգայ անգործութիւնն ալ, զի եթէ համախմբութիւններ կանոնաւորուին, մասնակի խմբումներ կը դադարին եւ տրամադրելի ժամեր օգտակարի կը գործածուին, որով միաբաններ կ'օգտուին եւ կը յառաջանան եւ հետզհետէ կը զարգանան։ Ճշմարտութիւնը յայտնելու փափաքը, կամ լաւ եւս պարտքը, մեզ ստիպեց այդ տեսութիւնները համարձակօրէն գրել, և գրելնուս մէջ միայն դարմանը կը դիտենք։ Բայց երբ ընդհանուր գիծերով կացութիւնը կը նկարագրենք, չենք ուզեր բոլոր միաբանները մէկ ջուրով լուալ. միայն թէ երբոր լաւերը ու զարգացեալները ու ջանացկոտները ու բարեմիտները մեծամասնութիւն չեն կազմեր, իրաւունք կ'ունենանք նաև ոչ-մխիթարական կողմերն ալ չօշափել։ Բայց ասով Միաբանութիւնը դատափետել և սորնացնել չենք կարծեր, զի ոչ-մխիթարական կէտերու մօտ ունինք շատ մխիթարական կէտեր, Սուրբ Տեղեաց պահպանութեան և պաշտպանութեան տեսակէտէն, զորս եկեղեցական կեանքին առթիւ պիտի ներկայենք։ Առ այժմ ներքին մարդուն վրայ գրածնիս բաւական սեպելով, քիչ մըն ալ արտաքին մարդուն վրայ խօսինք։

128. — Վեղարաւորներու եւ ուրարաւորներու զգեստին մէջ սև ասուին է տիրողը. կապայ մը պճղնաւոր եւ զգեստ մը մինչեւ ծունկերը եւ վրայէն վերարկու, իբրև համազգեստի պահանջ։ Ներքին զգեստներ ճերմակ կտաւէ են, իսկ սև կամ գունաւոր նիւթէ անդրավարտիկը կամաւոր կը մնայ, թէ՛ տեղական սովորութեան և թէ տօթագին օդին պատճառով։ Վեղարաւորներու գլուխէն վեղարը անբաժան է, եւ ըն-

տրեխագոյն նիւթ նկատուած էր Անկիւրիոյ սօֆը կամ Վանայ շալը, սակայն հետզհետէ մուտ գտած են վետ-վետող սեւ մետաքսներու տեսակները։ Ուրարաւորներ յատուկ գլխանոց չունին, եւ հասարակ ֆէսը, սեւի ներկուած, առանց ծոպի, բայց ծոպի բլթակը վրան, կը ծառայէ թէ՛ դուրսը իբր գլխանոց եւ թէ ներսը իբրեւ գտակ, և որ աւելին է, եկեղեցւոյ մէջ ալ գլուխ-նին կը մնայ, մինչեւ իսկ եկեղեցական շապիկի հետ։ Մայրաքաղաքի և քաղաքներու մէջ սարկաւագներու յատուկ փակեղ մը գործածական եղած է, բայց այն տակաւին Երուսաղէմ չէ մտած, տեսնելով իսկ որ բո-լոր ուրիշ ազգերու ոչ-վեղարաւոր եկեղեցականները իրենց յատուկ գլխանոցներ կամ փակեղներ ունին, մինչ հայը՝ օտարական և աշխարհական և անկատար գլխանոց մը պահեր է և կը պահէ իրեն եկեղեցական-ներուն գլուխը(*)։ Աշխատաւորներու մէջէն անոնց որ եկեղեցականութեան յարմարութիւն ցոյց կուտան, վե-րարկուի իրաւունք կը տրուի, որով արտաքինին մէջ ուրարաւորներու կը նմանին։ Մնացած աշխատաւոր-ներ վերարկու չունին, այլ կապայ մը՝ յաճախ մոյգ կապոյտ կտաւէ, եւ կարճ հագուստը, եւ գլուխնին դարձեալ սեւ ֆէսը։ Աշխատաւորներ հին անունով ժամուղբայ կը կոչուին, իսկ քուրձը՝ բուրդէ հիւսուած, առանց թելի, դեղնորակ և լայն բաճկոն մըն է մինչև

---

(*) Անծոպ սեւ ֆէսի կիրառութիւնը դադրած է հիմա ու տեղը մասնաւոր գլխանոց մը կը գործածուի. իսկ ու-րարաւորներ և դպիրներ գլխաբաց կը սպասարկեն եկեղե-ցւոյ մէջ նոյն ինքն տողերուս գրող հանգուցեալ Օրման-եան Սրբազանի կարգադրութեամբ։ Ծ. Հ.

ծունկը, զոր առաջ միշտ վրայէն կը հագնին եղեր, իսկ այժմ պատահմամբ միայն դուրսէն կը գործածեն, և յաճախ ներսէն՝ տաքնալու համար։ Վեղարաւորներ և ուրարաւորներ ալ քուրձ մը կը պահեն, եւ երբեմն ալ վերարկուին ներքեւէն կը գործածեն ցուրտ ամիսներուն։ Ոտքի աման համար հողաթափի կիրառութիւնը ընդարձակ է եկեղեցիէ դուրս ալ, սենեակին մէջ, սրահները, բակերը և պարտէզները, միայն քաղաքամիջի և քաղաքէ դուրս պտոյտներու համար գործածական է որևէ կօշիկ մը։ Բնակութեան համար միաբաններ միայն Աբեղաթաղի եւ Աղօրեթաղի եւ անոնց շուրջը կը հնան եղեր երբեմն, բայց այժմ ուրիշ կողմեր ալ մասնաւոր սենեակներ բնակողներ կան, եւ ամառուան մէջ Նորթաղի եւ Զմիւռնաթաղի սենեակներն ալ կը փոխադրուին օդափոխութեան նպատակով։ Սենեակներուն անհրաժեշտ կարասին՝ անկողին և բազմոց, դոյլ և լուացարան և նմանիք՝ վանքէն կը հայթայթուին, սակայն մասնաւոր դիւրութեան կամ վայելչութեան պէտքեր իւրաքանչիւր ոք իւրովի կը հոգայ։

129. — Կերակուրը օրը երկու անգամ կը տրուի հասարակաց սեղանատան մէջ, առաւօտեան և երեկոյեան պաշտամունքներէն ետքը։ Որ օր որ պատարագ չկայ, առաւօտեան ժամերգութենէն ետքը քիչ մը ատեն կ՚անցընեն, և միջօրէական կամ արեւմտական ժամահաշուով շուրջ 8,30ին սեղանի կոչնակը կը հնչէ, իսկ երեկոները երեկոյեանէ անմիջապէս ետքը, որ կը համեմատի արեգակնային կամ արեւելեան ժամով շուրջ 10ին. ուսկից ետքն է պտոյտի միջոցը։ Նախաճաշ կամ նախընթրիք, սուրճ կամ թէյ, ընդ-

հանուր կերպով չի տրուիր(*), վեղարաւորներ և ուրարաւորներ իրենց միջոցներով կը հոգան, իսկ աշխատաւորներու չափով սուրճ ու շաքար կը բաշխուի, երբոր միջոցներ ներեն, նոյնպէս օճառ և քարիւղ որոշ չափով։ Մէկմէկ պնակ կերակուր միայն կը տրուի սովորաբար, առտու և իրիկուն, պանիր կամ ձիթապտուղ կամ երբեմն միրգ մըն ալ միասին. կրկին կերակուրներ՝ տօներու և բարեկենդաններու վերապահուած են։ Կերակուրի տեսակները եղանակներուն և ուտեաց ու պահոց պահանջներուն համաձայն են, պարզ ապուրն ալ կերակուրի կարգին կը սեպուի, միայն թէ թանձր կը պատրաստուի և առատ կը տրուի։ Ըմպելին պարզ ջուրն է միշտ, գինին ու գինետունը խափանուած են շատոնց ի վեր։ Ջուրն ալ անձրևի է, բայց խմելու որոշուած և խնամով պահուած ջրամբարներէ կ'առնուի։ Կերակուրներուն տեսակն ու պատրաստութիւնը գոհացուցիչ է, միշտ աչքի առաջ ունենալով որ երկուհարիւր հոգւոյ բաւական կաթսաներու մէջ կ'եփուին։ Ամէն միաբան, որ արդարացուցիչ արգելք մը չունի, սեղանատան մէջ ուտելու պարտաւոր է. բայց բացառութիւններ ցանցառ չեն. մանաւանդ անոնց կողմէ, որ զբաղմանց և մասնաւոր խնամոց արդարացումներ ունին, և միջոցներ կը գըտնեն մանր դիւրութիւններ հայթայթելու։ Ասոնց կը ներուի իրենց բաժինը խոհանոցէն առնել և սենեակին մէջ ուտել։ Սեղանատունէն դուրս խմբովին կերակուր

---

(*) Նախաճաշ կը տրուի այժմ առաւօտեան ժամերգութենէն անմիջապէս յետոյ. իսկ ճաշն ու ընթրիքը կը տրուին ճիշդ կէսօրին և երեկոյեան արևը մարը մտնելէն ետք։ Ծ. Հ.

կը զրկուի՝ Ժառանգաւորաց վարժարանին, Հրեշտակապետի մայրապետներուն, Ս. Յարութեան ու Ս. Փրկիչի միաբաններուն։ Միաբան չեղող պաշտօնեաներ, արհեստաւորներ, ծառայողներ և պատսպարեալներ, որ վանքէն կերակուր ստանալու արտօնեալ են, իրենց բաժինները խոհանոցէն կ'առնեն և դուրսը կ'ուտեն. քիչեր միայն Միաբանութեան սեղանակից կ'ըլլան։

130. — Միաբաններուն հասոյթները կրնանք երկու ճիւղի բաժնել. մին՝ հաստատուն կերպով Աթոռէ ստացածնին, և միւսը՝ պատահաբար դուրսէ շահածնին։ Աթոռէ կը ստանան, առաջին՝ պաշտօնական թոշակը կամ ամսականը, զոր արդէն յիշեցինք (յօդ. 119)։ Երկրորդ՝ տարեկան բաշխուածը, որ երբեմն ուխտաւորութեան միջոցին շրջագայած պնակներուն արդիւնքին համեմատական բաշխում է եղեր, բայց վերջէն որոշ գումարի է կապուեր, այսինքն չորս ոսկի եպիսկոպոսներուն, երկու՝ վարդապետներուն և աբեղաներուն, մէկ՝ սարկաւագներուն եւ ուրարակիրներուն, կէս՝ դպիրներուն եւ աշխատաւորներուն եւ պատրիարքին, քառորդ աշակերտներուն, և որ եկեղեցւոյ մէջ կը բաշխուի Աշխարհամատրան երեկոյին՝ մեծ հոգեհանգիստէ ետքը։ Երրորդ՝ ժամուցը, որ հասարակ պատարագներու համար կէս մէճիտիէ է, հանդիսաւորներուն՝ մէկ մէճիտիէ, բացառիկներու մինչև մէկ ոսկի, եպիսկոպոսներուն՝ երկու ոսկի։ Իսկ Ս. Յարութեան և Ս. Ծնունդի ժամարարներուն ամսական երկու ոսկի կը տրուի։ Ս. Աստուածածնայ ժամարարները ժամուցը Աթոռէն կը ստանան օր ըստ օրէ, Աթոռի ժամարարներուն նման։ Աթոռի պատարագներ

են ոչ միայն Մայր տաճարի եւ իւր մատուռներուն մէջ մատուցուածները, այլեւ ուր որ Միաբանութիւնը խմբովին կը մասնակցի արարողութեան։ Միայն Ս. Հրեշտակապետի մէջ մատուցուած պատարագին ժամուցը քառորդ մէճիտիէ է, եւ տեսչութենէն կը տըրուի։ Պատահական հասոյթներ են, առաջին՝ Երուսաղէմի քաղաքացիներուն եւ բացառաբար Յոպպէի բընակիչներուն համար կատարուած յուղարկաւորութիւններու պաշտօնէից կոչուած նուէրը։ Երկրորդ՝ ուխտաւորութեան միջոցին բարեպաշտներէն տրուած ժամուցի, վիչելիքի, աջահամբոյրի եւ նմանօրինակ նուէրները։ Երրորդ՝ ուխտաւորներուն եւ այցելուներուն եւ նշանաւոր անձերուն մատուցուած ծառայութեան կամ ռահորդութեան փոխարէն առնուած նուէրը։ Չորրորդ՝ խնայողութեամբ կազմուած գումարին տոկոսը կամ կալուածի վարձքը։ Այս պատահական հասոյթներէն հաւասարապէս կ'օգտուին եկեղեցական եւ աշխատաւոր միաբանները։

131. — Այդ օրինաւոր շահերը, ինչպէս կը տեսնուի, մեծագումար հասոյթ չեն կազմեր, եւ հասարակաց կարծիքը չփոթող կէտ մը դարձած է, թէ ի՛նչպէս Երուսաղէմի միաբաններ կրնան դրամի տէր դառնալ, մինչ աթոռական մատակարարութեան վրայ պարտք կը բարդուի։ Եւ երբ ուրիշ մեկնութիւն չի գտնուիր, զեղծումն է որ առջեւ կը դրուի, եւ զեղծարարութեան ամբաստանութիւնը բոլոր Միաբանութեան վրայ կը տարածուի։ Իսկ զեղծարարութիւն անունով կ'իմացուի՝ վանական մատակարարութիւնը անձնական շահի գործածել; հասոյթները խորել, ծախքերը ուռեցընել եւ առանց հաշուեկշիռի հաշուետոմարներ կազ-

մել։ Մենք այստեղ ո՛չ միաբաններու փաստաբանութիւնը պիտի ընենք եւ ոչ ալ զեղծումի նենգադրութիւնը եղջերուաքաղ պիտի ըսենք. այլ իրականութիւնը պիտի խօսինք, ինչպէս որ խղճամիտ հետազօտութեամբ ջանացինք քաղել։ Միաբաններուն հարստութիւնը, եթէ մէկը կամ երկուքը դուրս թողունք, շատ հեռու է կարծեցեալ գումարներէն։ Երկու կամ երեք հարիւր ոսկւոյ գումարը հարստութեան անուն կը վայելէ միաբանական շրջանակին մէջ. կէս կամ քառորդ կրպակի կալուածատէր ըլլալը՝ հարստութեան համբաւ կը կազմէ. և ըսել որ ամբողջ կրպակը 200 ոսկւոյ արժէքէն աւելի չէ։ Երկրորդ՝ գիտելի է որ դրամատէր կամ կալուածատէր ըլլալը՝ յաճախագոյն է խղճամիտի և բարեմիտի անուն և յարգ վայելող հին եկեղեցականներու և աշխատաւորներու մէջ, որոնք միշտ կասկածէ վեր մնացած են, մինչ շատ ցանցառ է նորերու մէջ, որոց վրայ կը ծանրանան զեղծարարութեան ամբաստանութիւնները։ Երրորդ՝ սկզբունքի ոյժ առած ըլլալու չափ զօրաւոր եղած է, մանաւանդ հիներու մէջ, ստակ ստակի վրայ դիզելու մարմաջը, առանց ծախսելու և առանց ուտելու և առանց վայելելու. ունենալ ունենալու համար, կամ լաւ եւս՝ Աթոռին յիշատակ մը թողլու համար, կամ թէ ապագայի ապահովութիւն պատրաստելու համար (յօդ. 123)։ Արդեամբ ալ տեսնուած է որ 300 կամ 400 ոսկւոյ գումարներ եղած են զրկելով ապրող և աշտուճ հացով գոհացող աշխատաւորներու քովէն։ Երբոր պարագաները նկատի առնուին, շատ կերպարանափոխ կ'ըլլայ զեղծարարութեան մեղադրանքը։

132. — Ո՛չ ոք մտաբերած է ամբաստանել կամ

մեղադրել հին միաբանները, որ այլեւս աշխարհի վրայ չեն, մանաւանդ թէ գովեստներ ալ կը խօսուին անոնց հասցէին, թէ Աթոսին երախտաւոր եղած են՝ գումարներ կամ կալուածներ թողլով իրենց ետեւէն։ Երբոր դրամ ունեցողներ այս կերպով խնդիրէ դուրս կը մնան, համարձակ կրնանք ըսել՝ թէ խնդիրն ալ ինքնին կը տկարանայ, վասնզի կենդանի եղողներէն մասով կրնան ցուցուիլ 200 կամ 300 ոսկւոյ խնայողութիւն ունեցողներ, որոնք 20 կամ 30 տարիէ իվեր Աթոսէն ապրած, եւ փոքր շահերնին պահած ու շահագործած են եւ պատահաբար Աթոսէն դուրս ալ պաշտօններ վարած և օգտուած են։ Ամէնուն աչքին զարնող եւ շատ խօսուող եւ ընդհանուր գրոյցին ալ հիմ ընծայող անձը՝ Մաքսուտեան Գեւոնդ վարդապետն է, եւ աշխարհաքարոզ եղած անուն մը յանուանէ յիշել՝ անպատշած չենք կարծեր։ Գիտենք թէ մեծահարուստ ունեւորութիւն կը վերագրուի անոր, թէպէտեւ չենք կրնար որոշակի քանակ մը յիշել։ Սակայն Մաքսուտեանի գիրքը այնչափ եղական էր, որ նախընթաց չէ ունեցած, եւ հետեւորդ ալ ունենալը ենթադրելի չէ։ Նա իւր ձեռք ունեցած է իբր հարիւր հազար ոսկւոյ կալուածական վաճառմանց և գնմանց շարժում մը, եւ իբր յիսուն հազար ոսկւոյ կալուածական շինութեանց ձեռնարկներ. միանգամայն իւր տրամադրութեան ներքեւ անցուցած է Աթոսին ամբողջական վարկը, և այս միջոցներով անձնական շահագործութեանց պարապած է, եթէ չարաշահութեան ենթադրութենէն ալ յաջողի խուսափիլ։ Հետեւաբար զարմանք չէ, որ այդչափ խոշոր խմորէ խոշոր նկանակ մը կազմուած ըլլայ, կամ այդչափ առատ մեղրէ ամբողջ ափով պլշկած ըլլայ։ Բայց իրաւացի չէ միայ-

նոյ Մաքսուտեանի կանգունով բոլոր Միաբանութիւնը չափել, և անոր վրայ հիմնուելով բոլոր միաբանները մեղադրել։ Վերջին օրեր խօսից նիւթ եղաւ Քէշիշեան Վահան վարդապետի անունն ալ, որուն յանկարծական մահուամբը երեք հազար ոսկւոյ գումարի եւ կալուածի գոյութիւնը յայտնուեցաւ. սակայն Քէշիշեան ալ յայտնի էր իբր Մաքսուտեանի կրտսեր հետեւող մը. իր մասին շատ խօսուած էր, և ծանօթ էին Աթոռի մէջ գործունէութիւնները և Աթոռէ դուրս շահեցողութիւնները։ Այսօր համբաւը ուրիշ նմանօրինակ գրոյցներ չի հաղորդեր մեզ, եւ իրաւացի չէր ալ ըլլալ լոկ ենթադրական կասկածի հիմամբ վճիռներ արձակել։ Գալով Երուսաղէմի Աթոռոյն պարտքին՝ մանրազննին հաշիւներ, 1905ին Մաքսուտեանի գործէ քաշուելու պահուն, լիրա օսմանեան 25,906.98 գումարը կուտան, որուն վրայ տասը տարուան պարզ տոկոսն ալ, Լ. Օ. 10,362.79 հաշուելով, միայն Լ. Օ. 1735.04 հեռու կը մնանք 1914 ապրիլին հաշուած Լ. Օ. 38,004.81 պարտքէն, և դիւրաւ կը բացատրուի Երուսաղէմի պարտքին եւ անոր աճման բուն պատճառը։ Այդ վերջին բացատրութիւնները, թէպէտ զարտուղութիւն, բայց կարեւոր էին վանական կեանքին ներքինը բացատրելու համար։

---

# ԺԵ

# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԿԵԱՆՔ

133. — *Վերագոյնդ (յօդ. 127) ակնարկեցինք թէ Երուսաղէմի Միաբանութեան վրայ մխիթարական կէտեր ալ ունինք գրելիք, և ահա՛ անոնց բացատրութեանը կը մտնենք։ Ամէն քրիստոնէին սիրտին մօտ է աստուածակոխ Սուրբ Տեղեաց Նուիրականութիւնը, և Երուսաղէմի անունն իսկ կը թրթռացնէ հաւատացեալին լղձերը։ Կը յուզուի անոր յիշատակներովը, և իւր գերագոյն ուխտն ու մխիթարութիւնն է՝ Սուրբ Գերեզմանն ու անձկալի Սրբավայրերը համբուրելու արժանանալ։ Իսկ հայ քրիստոնէին համար անկեղծ պարծանքի և քրիստոնէական գոհունակութեան հիմ կը կազմեն այդ Սրբավայրերը, զի այնտեղ կը տեսնէ որ իւր Ազգն ու իւր Եկեղեցին, որչափ և թուով նուազ և միջոցներով նուազագոյն, համահաւասար և համապատիւ դիրք կը վայելէ թուով եւ միջոցներով հզօրագոյն յոյն ու լատին եկեղեցիներուն հետ, և իրաւանց և վայելմանց ամբողջութեան երրորդ մասը իրեն սեպհականութիւնն է։ Այդ համոզումին բնական և անմիջական հետևանքն է երախտապարտ զգացումով յիշել անոնք, որոնք այդ ստացութեանց և պարծանաց պատրաստողն եղան, և անոնք՝ որ անոնց պահպանութեան և պաշտպանութեան նուիրուեցան։ Անյիշատակ ժամանակներէ գոյութիւն ունին Երուսաղէմի մէջ Հայոց վանքերը, զորս մինչև Լուսաւորիչ և մինչև Մեծն Ներսէս կը հասցնէ Անաստաս վարդա-*

պետ, և յանուանէ կը յիշէ զՍուրբ Յակոբն, ուրիշ եօթանասուն հայ վանքերով և տասը մեծամեծ եկեղեցիներով, և կը շեշտէ հայ վանականութեան արգիւնքը։ Սա էր որ տոկաց քաղկեդոնիկ հալածանքներու, յունական բռնաբարութիւններու, այլազգի յարձակումներու եւ լատինական ոտնձգութիւններու, և հայ անունը և հայ ստացութիւնները տևական պահեց Երուսաղէմի մէջ, չլռեցուց հայ օրհնաբանութիւնները Սուրբ Տեղեաց մէջ. ունեցաւ մասնաւոր կորուստներ, բայց ունեցաւ և մասնաւոր օգուտներ։ Սուրբ Յակոբեանց վանականներու անխոնջ աշխատութեան և պայքարող արիութեան արդիւնքն է, զոր մեք այսօր կը վայելենք, և որով կը պարծենանք։ Բայց հին պատմութիւնը թողունք և ներկային անցնինք։

134.— Երուսաղէմական ազգային ստացութիւններէն կան որ յատուկ են և ամբողջաբար Հայոց կը պատկանին, և կան՝ որ ընկերովի են և Յոյներու ու Լատիններու հետ մասնակցութեամբ կը գործածուին։ Հայոց յատուկ են՝ Ս. Յակոբը, Ս. Հրեշտակապետը եւ Ս. Փրկիչը, իրենց յարակիցներով, ինչպէս նաեւ ընկերովի սեպհականութեանց մէջ որոշ մասեր։ Ընկերովի են Քրիստոսի և Աստուածածնի սուրբ գերեզմանները, Ս. Համբարձումը և Ս. Ծնունդը։ Յատուկները կը պահանջեն անպակաս ընել տէրունական փառաբանութիւնները, և արթուն կենալ որ ոտնձգութիւններ տեղի չունենան, զի անոնց վրայ ալ տեղի ունեցած են զրկումներ և բռնաբարումներ, և մինչև այսօր կը շարունակեն պահանջներ և բողոքներ։ Իսկ ընկերովի ստացութեանց մէջ ամենայն ինչ թուով

ու չափով ու ժամով ու անդամով որոշուած է, եւ որչափ ալ կայուն վիճակի ձեւ մը առած է, բայց չէ դադարած մրցման պայքարը, եւ ո՛չ ալ դիմացինին գանցառութենէն կամ անմտադրութենէն օգտուելով ընդարձակուելու կամ զրկելու հոգին։ Այդ պարագաներ երեք ծանր պարտաւորութիւններ կը ստեղծեն, այսինքն՝ ստացուածոց պահպանութիւն, իրաւանց պաշտպանութիւն եւ պաշտամանց ճշդապահութիւն։ Երուսաղէմի Միաբանութիւնը այդ պարտքերուն համապատասխանելու համար կը ստիպուի անքուն տքնութեան, մշտամրմունջ աղօթասացութեան, արթուն հսկողութեան, ծախուց ընդարձակութեան, պայքարներու դիմադրութեան, անհատական հանգիստի զրկման եւ ուրիշ տեսակ տեսակ զոհողութեանց, եւ մինչեւ իսկ անձը վտանգի ենթարկելու։ Ահա՛ այն կէտերը, որք մխիթարական են ազգային զգացմանց համար, եւ որոնց այնչափ հաւատարիմ են միաբանները, որ ամէն նկատողութիւն եւ ձգտում, հակառակութիւն եւ դժտութիւն տեղի կուտան անոնց աչքին առջեւ երբոր այդ շահերն են որ գործունէութիւն կը պահանջեն։ Սուրբ Տեղեաց հաւատքը եւ այդ հաւատքին հաւատարմութիւնը այնչափ զօրաւոր են միաբաններուն սիրտին մէջ, որ առանց դժուարութեան պահ մը առաջ դժտեալներ եւ հակառակորդներ միաբան եւ միախորհուրդ կը գործակցին, երբոր այդ շահերուն շուրջը կը դառնայ խնդիրը։ Միեւնոյն կերպով թոյլերն անգամ ժրաջան կը մասնակցին այն արարողութեանց, ուր Հայուն պատիւը բարձրացնելու, եւ օտարին առջեւ մեծ եւ փառաւոր ցուցնելու գրգիռը կը խօսի։

135. — Մայր տաճարին մէջ հանապազօրեայ են ժամերգութիւնները ըստ աւուր պատշաճի. առտուները կանոն սաղմոս և յարակիցք, Հրաժարիմք Մեղայով, գիշերային ժամ գիշերապաշտօնով, և առաւօտեան ժամ, և ըստ պատշաճի Արևագալի ժամ՝ մանաւանդ մեծ պահքին մէջ։ Իսկ երեկոները կանոն սաղմոս շաբաթապահքերուն և մեծ պահքին, Յայմաւուրք և երեկոյեան ժամ ըստ պատշաճին, և Խաղաղական շաբաթապահքերուն և մեծ պահքին։ Միայն մեծ պահքին Ճաշուները ամէնօրեայ չեն, այլ ուխտաւորներ Քրիստոսի և Տիրամօր գերեզմաններուն կը ցրուին, ուր ամէնօրեայ են պատարագները, նաև մեծ պահքի մէջ։ Երեկոյեանները ժամ 9ին կամ 9ու կէսին կը կատարուին արեգակնային ժամահաշուով, ըստ պահանջելոյ արարողութեան. իսկ առաւօտեանը կը փոփոխուի եղանակին և տօնին համեմատ, և մինչև 3ու կէս կը կանխէ միջօրէական ժամահաշուով։ Մայր տաճարի պատարագները անխափան են շաբաթ և կիրակի և բոլոր տօնական օրեր, որոնց մէջ կը մըտնեն նաև զանազան սեղաններու նուիրական օրերը, որոնք Ս. Յակոբայ մէջ միայն 25ի կը հասնին, և իւրաքանչիւրին օրն ալ պատարագով կը տօնուի։ Շաբաթ օրերը պատարագը Ս. Գլխադիրի մատուռն է, եթէ ուրիշ յատուկ չհանդիպի. իսկ կիրակիի պատարագները փոփոխական են տօնին պահանջին համեմատ։ Երկու շաբաթը անգամ մը Ս. Յարութեան Վերնատունը կը մատուցուի. Աստուածածնի տօներուն Տիրամօր գերեզմանը կ'երթուի. երբեմն ալ Ս. Փրկիչ կամ Ս. Հրեշտակապետ։ Քրիստոսի գերեզմանին և Տիրամօր գերեզմանին և Ծննդեան Այրին պատարագները ամէնօրեայ են տարուոյն մէջ, միայն երկու օրե-

րու բացառութեամբ, բակլախորանը և աւագ ուրբաթը։ Ս. Յարութեան ու Ս. Ծննդեան մէջ ժամերգութիւնները ամբողջ կը կատարուին միայն փոքր միաբանութեան կողմէ. իսկ Ս. Աստուածածնի գերեզմանին ժամարարը գիշերապաշտօնը մայր տաճարին մէջ կատարելէն ետքը հոն կ'երթայ կէս ժամուան ճանպորդութեամբ, և Յոյներուն պատարագէն ետքը ինքն կը մտնէ։ Ամէն պատարագ երեք ծաշուններով կը սկսի, և ժամարարը Առաջնորդեա աղօթքը ըսելէն ետքը զգեստաւորելու կը մտնէ։ Ս. Համբարձումի Լերան պատարագները տարին երկու անգամ կը կատարուին, մեծ պահոց չորրորդ կամ վեցերորդ կիրակին և Համբարձման տօնին. գիշերային պատարագը՝ Ոտնատեղւոյ ընկերովի մատուռին մէջ, և առաւօտեան հանդիսաւորը՝ վրանի ներքև շարժական սեղանով։ Քրիստոսի գերեզմանին վրայ ալ հանապազօրեայ պատարագին տեղ տարին հինգ անգամ մեծահանդէս պատարագ կը մատուցուի, և երբեմն ալ գերեզմանին տեղ ուրիշ ազգային սեղանի մը վրայ կրնայ մատուցուիլ։ Նպատակ չունենալով տօնախմբութեանց կատարեալ ցուցակը տալ այստեղ, առ այժմ այսչափով կը բաւականանանք, մնացեալը Սըրբավայրերու Նկարագիրին թողլով։ Մայր տաճարի պաշտամունք նպատակ ունին աւելի ուխտաւորները քան քաղաքացի ժողովուրդը, որուն յատկացուած է Ս. Հրեշտակապետի եկեղեցին, ուր ժամերգութիւններ կը կատարուին և պատարագներ կը մատուցուին անոնց դիւրութեան համար, և ուր տեղի կ'ունենան իրենց հոգևոր պէտքերուն մատակարարութիւնը՝ մկրտութիւն և պսակ և թաղում։ Այսու հանդերձ մայր տաճարն ալ բաց է առջևնին, և կուգան ալ, մանաւանդ ուխտաւոր չեղած միջոցներուն և հանդիսաւոր օրերուն։

136. — Արարողութեանց կամ ծիսական կարգադրութեանց հայկական հոգին հաւատարմաբար կը պահուի, որչափ որ կը ներեն տեղագրական պայմանները, կամ կը պահանջեն Սուրբ Տեղեաց յարմարութիւնները։ Նկատողութեան արժանի են սեղաններու վրայ մոմերուն չափաւոր թիւը, ուրար չունեցողներուն բեմ չբարձրանալը, բեմի վրայ քշոցակիրներուն մոմակալութիւն ընելը, աւագ սեղանի վրայ խորհըրդանոցին մէջ սպաս դնելը, թէպէտ ցանցառ առիթներուն, սովորաբար չորսէ աւելի պաշտօնեայ բեմ չհանելը, այսինքն՝ բուրվառակիր, աւետարանակարդաց և երկու քշոցակիր. հինգ պաշտօնեայ հանդիսաւոր պատարագներուն, վեց՝ եպիսկոպոսականներուն, և ինը՝ պատրիարքականին։ Ասոր հակառակ ինչ ինչ օտարամուտ նորութիւններ ալ կան, ինչպէս՝ ամէն ժամերգութեանց սկիզբը և պատարագի Առէք կերէքին և Ի սուրբ ի սուրբին դասին մէջ զանգակով կամ հընչակով լատինակերպ նշան տալը, զոյգ բուրվառներուն վզնոց կոչուած կրկնոց կամ լանջանոց գործածելը, և վերաբերումէ ետքը ուրարը պատատելով յունակերպ առջին անցընելը, նախատօնակներու ատեն աւետարանի պէս մասունք կամ խաչ բռնելը, ևայլն։ Արդէն յիշած ենք պատկերներու առատութիւնը և մեծ պահքի մէջ պատարագելը։ Նկատելի է ևս երկզոյգ քշոց և երկզոյգ կերոն չգործածելը, հակառակ զոյգ բուրվառի յաճախութեան, և եպիսկոպոսական պատարագներու վերաբերումին՝ շուրջառ չփոխելը, որ ուրիշ տեղեր սովորական են եղած։ Շատ ցանցառ է, ինչպէս ըսինք, խորհրդանոցի կիրառութիւնը աւագ սեղանի վրայ, այլ գրեթէ միշտ ուրիշ սեղան մը իբր խորհրդանոց կը գործածուի, և երրորդ սեղանի առջև

աւետարան կը կարդացուի, ինչ որ հետեւանք է պատարագամատոյց սեղաններէ շատերուն նեղ մատուռներու մէջ գտնուելուն, ուր միայն աւետարանակարգաց սարկաւագը կը մնայ ժամարարին հետ. քշոցակիրներ դրան դուրսը կը կանգնին, բուրվառակիրը դըրան դիմացը, և դպիրները յարմարութիւն առնող կողմ մը։ Ողջոյնին՝ նախագահը միայն երկու դասերու երիցագոյններով մէջտեղ կ'անցնի, և խոստովանահայրեր ողջոյնը նախագահէն առնելով ժողովուրդին կը տանին, ինչպէս դպրապետն ալ իր դասուն։ Նկատողութեան արժանի կը սեպենք եւս շուրջառներու, ուսուրարներու, շապիկներու, սեղանի գոգնոցներու և պատուոյ գորգերու, մինչև իսկ շուշփաններու և բռնիչներու՝ տօնին և պատշաճին համեմատ գոյնով և աստիճանով փոփոխուիլը, որ հետեւանք է եկեղեցական սպասներու և զարդերու առատութեան, և այդ կողմէն Երուսաղէմի աւանդատունը և գանձատունը անմրցելի առաւելութիւն ունին բոլոր ազգային եկեղեցիներու վրայ։ Գաւազանի կիրառութիւնը միշտ միակ է հանդիսադիրին ձեռքը, ով ալ ըլլայ որ յիրաւանց կամ ի յանձնարարութենէ կը նախագահէ։ Գաւազաններէն կորագլուխ հովուականները քիչ են թուով, սովորականները օձագլուխ և կամ պարզ գըլուխով վարդապետական գաւազաններ են, որոնց մէջ պատկառելի հնութիւն և նորանոր ձևեր ունեցողներ կան, և ութսունի չափ կը պահուին Ս. Մինասի գանձատան մէջ եւ փոփոխակի կը հանուին։

137. — Երուսաղէմի մէջ կարևորութիւն տրուած հանդէսներուն գլխաւորներէն մէկն ալ թափօրն է, որ ամէն տօնախմբութեանց նշանաւոր մասը կը կազմէ,

թէ՛ մայր տաճարին և թէ Սրբավայրերուն մէջ։ Միաբանութիւնն ալ այդ հոգւով զգածեալ է, և ամէնքը կը փութան ներկայ գտնուիլ, նոյն իսկ դասի ներկայութեան յայտնի զանցառուները, այնպէս որ հնար է դասականներուն մէջէն թափորականներու մասնակի բաժին մը զատել։ Ամէն թափորներու և տօնականներու և պտոյտներու ատեն բոլոր թափորականներուն, մեծին ու պզտիկին, հաւասար մոմեր կը բաժնուին, զոր վառած կը բռնեն հանդէսին ատեն, իսկ յաւելուածները կամ կճատները կը պահեն և անձնականին կը գործածեն։ Մայր տաճարին թափորներուն կարգին պիտի յիշուին նախատօնակները, յատեան օրհնութիւնները և անդաստանները, զի նոյն իսկ ատեան ելլալու համար պտոյտներ կ՚աւելցուին։ Պատարագի մէջ ալ խնկարկութեան և վերաբերումին ամբողջ դպիրները կը մասնակցին և շրջանները անոնց ընկերակցութեամբ կը կատարուին։ Իսկ երգերով և արարողութեամբ մեծ վերաբերումը տարին երկու անգամ կը կատարուի, Զատիկին երկրորդ օրը և Գլխադիրի տօնին։ Տարին անգամ մըն ալ, Զատիկին Մեռելոցին երեկոյին, անդաստանը վանքի մեծ բակը կը կատարուի մեծահանդէս կերպով. բայց անկէ ալ վեր է նոյն Մեռելոցին առտուն մայր տաճարին մէջ կատարուած թափորը, ուր ամենածանր զարդերը կը ցուցադրուին, և եպիսկոպոսներէն զատ թագադիր վարդապետներ ալ կը մասնակցին, հանդէսին շքեղութիւնը աւելցնելու համար(*)։ Սրբավայրերու թափորներէն յիշենք նախ հան-

(*) Տասնեակ մը տարիներէ ի վեր դադրած է՝ Զատկի Մեռելոցի օրուան հանդէսը մայր տաճարին մէջ. անոր փոխարէն այժմ նոյն օրը Ս. Փրկչի վանքին մէջ Ս. Պատարագ

գլխաւոր գնացքը։ Առջեւէն երկու կամ երեք բարապաններ՝ արծաթապլուխ և երկաթածայր գաւազանները հնչեցնելով. ետեւէն՝ թարգմանը իբր առաջնորդ, և թափօրին գլուխը՝ պատրիարքը կամ հանդիսադիրը ամբողջ դասականներու հետեւողութեամբ։ Մեծահանդէս օրեր սրբավայրի դուռնէն կը կատարուի Հրաշափառի արարողութիւնն ալ, որ է թափօրական և հանդիսաւոր մուտք, ուրիշ տեղեր ալ կատարուող մուտքերու նման, բայց շատ աւելի շքեղութեամբ։ Առջեւէն կը քալեն գաւազանաւոր բարապաններ. ետեւէն սաղաւարտեալ խաչակիրն ու բուրվառակիր մը և մոմակալներ. կը յաջորդէ դասական խումբը, աշակերտներէն մինչև եպիսկոպոսներ, չորս շուրջառաւոր վարդապետներ, կամ, եթէ գտնուին, սաղաւարտաւոր քահանաներ՝ աւետարանաբարձ, իւրաքանչիւրին հետ մոմակալ մը, զոյգ սաղաւարտեալ բուրվառակիրներ, զոյգ մոմակալներ. հանդիսադիրը ընթերակայ սարկաւագներով, և վերջէն ուխտաւորներ կամ ժողովրդականներ։ Գնացքի ատեն կ'երգուին Հրաշափառ Աստուած և Ուրախ լեր շարականներ, և խնկարկութեամբ և Ուրախ եղէ'ով կը փակուի մուտքի կամ Հրաշափառի հանդէսը։ Այս թափօրներուն ամէնէն նշանաւորը Շուրջ զԳերեզմանաւն կատարուածն է, որուն ամէնքն զգեստաւորեալ կը մասնակցին, և երեք անգամ կը պտըտին Գերեզմանին շուրջը՝ Ս. Յարութեան բոլորակին մէջ։ Այն օրեր որ ըստ տօնացոյցի անդաս-

---

կը մատուցուի և ապա հանդիսաւորապէս հոգեհանգստեան կարգ կը կատարուի ազգային գերեզմանատան մէջ՝ ի յիշատակ մեր բիւրաւոր նահատակներուն յընթացս համաշխարհային պատերազմին։ Ծ. Հ.

*տան կայ, կը յետաձգուի պատարագէն վերջը, և կը կցուի թափօրին։ Կայ և ուրիշ հանդիսաւոր թափօր մը, միշտ Ս. Յարութեան տաճարին մէջ, այցելելով բոլոր մեր և օտարաց սրբավայրերը, որուն թեթևը Ս. Յարութեան փոքր միաբանութիւնը կը կատարէ ամէն ուրբաթ և շաբաթ և կիրակի երեկոներուն։* Շուրջ զԳերեզմանաւն *թափօրներէն մի քանիսին կը հետևին Ղպտիներ և Ասորիներ ալ իրենց եկեղեցականներով և զարդերով, զի առանձին թափօրի իրաւունք չունին, և միայն իբրև հետևակ ազգ՝ Հայոց թափօրին ետևէն կուգան։*

138. — *Ի դէպ էր խօսիլ նաև իւրաքանչիւր ազգի, հետևաբար Հայոց ալ, ընկերովի սեպհականութեանց մէջ ունեցած մասերուն, կանթեղներուն, աշտանակներուն, մոմերուն, պատկերներուն, սովորական զարդերուն, հանդիսաւոր օրեր աւելցած զարդերուն և հանդէսներու օրերուն վրայ, սակայն այստեղ աւելորդ կը գտնենք այս մանրամասնութեանց մըտնել, միտք ունենալով վերադառնալ երբոր Սրբավայրերու նկարագիրն ընենք։ Առ այժմ նպատակնիս Հայոց եկեղեցական կեանքն է, և անկէ դուրս ելնել չենք ուզեր։ Միայն ըսենք թէ ընկերովի Սրբավայրերու մէջ ամենայն ինչ հաւասար և հաւասարաթիւ բաշխուած է, ուստի և ո՛չ մէկը կրնայ կայուն վիճակի վրայ բան մը աւելցնել, և ոչ ալ կրնայ պատահաբար զեղչել կամ զանց ընել, որ մի՛ գուցէ իրաւունքը կորսնցնէ։ Ս. Յարութեան մէջ մշտատև կը մնայ տեսուչը, որ բաւական դժուարին կեանք ունի, պարտաւորուած ըլլալով բնակիլ սենեակ մը, որ կէս օրին ալ ճրագով կը լուսաւորուի, և խորշ մը լին-*

կած՝ օդէ ալ զուրկ է։ Ամէն գիշեր, կէս գիշերէն շատ առաջ, փոքր միաբանութիւնը ոտքի վրայ է, որ կէս գիշերէն ժամ մը առաջ ժամերգութեան սկսի, և ետեւէն Ս. Գերեզմանին վրայ պատարագի մտցուի։ Երկու ժամարար վարդապետներ և մէկ սարկաւագ երկամսեայ շրջանով հերթապահութիւն կը կատարեն, կը պատարագեն և կը սպասաւորեն։ Լուսարար մը ներքին և կէհնճի մը արտաքին հոգածութեանց գլուխը կը գտնուին, և վեց եօթը ուրիշ միաբաններ թէ՛ պաշտամանց կը սպասաւորեն և թէ առտնին պէտքերը կը հոգան։ Ասոնց ալ հանգստանալու տեղերը անօդ և անարև կամարներու ներքև են։ Նմանօրինակ է Ս. Ծննդեան սպասաւորողներու գործն ալ, միայն թէ բնակավայրերը լուսաւոր և օդասուն են և պաշտամունքը կէս գիշերէն երկու ժամ ետքը կը սկսին։ Իսկ Ս. Աստուածածնի տեսչութիւնը Ս. Փրկչի տեսչութեան յարակից է. տեսուչն ու միաբանները Ս. Փրկիչ կը բնակին և Ս. Աստուածածին կը սպասաւորեն, որ կէս ժամ հեռու է։ Միայն լուսարարը Ս. Աստուածածնի խորափիտին կամարներուն ներքև կը գիշերէ. իսկ ժամարարները ամէն օր մայրավանքէն կ'իջնեն. նոյնպէս սպասաւորող սարկաւագները։

139.— Օրինակելի ըլլալու չափ կանոնաւորուած և ճշդուած է եկեղեցական պաշտամանց մէջ իւրաքանչիւրին ընելիքն ու ըսելիքը։ Լուսարարապետը ընդհանուր հսկողութիւն կը կատարէ. լուսարարը վայրկեանը վայրկեանին կը դնէ, կը վերցնէ, կը վառէ, կը մարէ. ժամօրհնողը մաղթանքները ըսելէն զատ Աւետարանին, ատեան ժամագիրքին, և ճաշոցին հոգ կը տանի և կը բանայ. երկու ժամասացներ երգեցո-

ղութեանց սկզբնաւորութեան և կանոնաւորութեան մտադրութիւն կը դարձնեն։ Իսկ երբ պաշտօնապէս անուանուածներ կը պակսին՝ ներկաներէն կարողներ և ապատ եղողներ օր ըստ օրէ նոյն գործը կը կատարեն։ Ժամերգութեանց աղօթքները և աւետարանները չորս վեղարաւորներու, և քարոզները չորս ուրարաւորներու վրան հաստատուն կերպով բաշխուած են, որք են՝ մուտքը, աւագը, հետևակը, և ելքը։ Մինչև իսկ քարոզներուն տուները և պատարագին Օրհնեա տէրները այնպէս ճշդուած են, որ ամէն մէկը իւր կարգին իւր ընելիքը գիտէ։ Աւելորդ չըլլայ յիշել որ աւագերէցը աւագերիցու դասէն է, և աւագ սարկաւագը՝ աշակերտի դասէն, և միացեալները համեմատաբար։ Ոչ միայն ընելիքները որոշուած են, այլև դասին մէջ կամ բեմին առջև ո՛ւր կենալիքնին, ի՛նչ գործով երթալնին, ի՛նչ ճամբով դառնալնին, ո՛ր տեղերնէն ելլալնին, ի՛նչ ձևով շրջելնին, քանի՛ բուրվառ շարժելնին, ի՛նչ կերպով դարձնելնին, ամենայն ինչ հաստատուն կերպով որոշուած են։ Աւագերէցի և աւագ սարկաւագի յաջորդութիւնը դասէ դաս կ'անցնի, և իւրաքանչիւր դասին մէջ իրենց երիցութեան կամ կենալնուն կարգին ընթացքովը կը յառաջէ։ Վեղարաւորներ մտադիր են իրենց հերթը վարելու, մանաւանդ բուն աւագերիցութեան օրը, առաւօտեան սաղմոսէն սկսելով, զոր կը քաղեն աւագն ու հետևակը։ Ուրարաւորներ և աշակերտներ ամբողջին կը գըտնուին, զի շարականներ և երգեցողութիւններ իրենց վրայ են։ Պատարագի կարգը նոյն դասին մէջ կը մընայ, մինչև որ շարքը սպառի, և յետոյ միւս դասը կ'անցնի. դասին մէջ ալ կարգը անգամ մը վերէն վար և անգամ մը վարէն վեր կը քալէ։ Պատարագ առ-

նելը կ՚որոշուի նախընթաց առտուն Օրհնութեան ըսկիզբը, կամ եթէ ատեան կայ կամ պահոց օր է՝ Հարցին սկիզբը, լուսարարին ազդարարութեամբ, և ներկայ եղողին կը տրուի, իսկ բացակային հերթը անցած կը սեպուի։ Պատարագ առնելու կամ չառնելու կատարեալ ազատութիւն կը տիրէ, նկատելով որ նիւթական կամ բարոյական կամ գործական պատճառ մը կրնայ արգելք ըլլալ սեղան բարձրանալու, զոր յայտնել պարտաւորութիւն չէ։ Արդէն տկարներ եւ զբաղեցուցիչ պաշտօն ունեցողներ զանց կ՚ընեն Ս. Աստուածածնի ժամարարութիւնը, և Ս. Աթոռոյ ժամարարութիւնն ալ երբեմն միայն կ՚ընդունին։ Աստուածային ժամերգութեան մէջ Խոստովանիմը և Մեղայն, Զէնն գոհանամքը և հանգստեան աւետարանը Ս. Աթոռոյ ժամարարին է, և ո՛ր օր որ Աթոռոյ պատարագ չըլլայ՝ Ս. Աստուածածնի ժամարարին։ Աւագերէցութեան և ժամարարութեան հերթերը տարբեր ընթացքով յառաջելուն, կրնան երբեմն նոյն օր նոյն անձին վրայ միանալ, և այն ատեն աւագերէցութիւնը ուրիշ մը կը լրացընէ, երբ նա բացակայի։ Որ և իցէ բացակայութեան մէջ, երբոր նախատեսեալ է, նա որ պիտի բացակայի՝ դասակից ընկերի մը յանձնարարութիւն կ՚ընէ, իսկ եթէ օրինաւոր և տեւական պատճառ մը կայ, հերթը զանց կը լինի բոլորովին։

140. — Հոգևոր պաշտամանց այդչափ առատ և այդչափ կարգաւորեալ և գրեթէ Միաբանութեան գըլխաւոր զբաղումը եղած ատեն, կը սպասուէր որ եկեղեցական երգեցողութիւնը լաւ մշակուած ըլլար Երուսաղէմի մէջ. բայց ներկայն այդ ակնկալութիւնը չ՚արդարացներ։ Անշուշտ Երուսաղէմ իրեն սեպհա-

կան ոճը, կամ երգեցողութեան սաղմական դպրոց ունեցած է ժամանակին. սակայն այլեւս այն չի տիրեր, զի զանազան կողմերէ եկող դպրապետներ իրենց սեպհական ոճը խառնած են։ Ինչ որ Երուսաղէմի համար առաւելութիւն կրնայ սեպուիլ, ամէն դասականներուն երգեցողութեան վարժ ըլլալն է, առանց ձայնի կամ ճարտարութեան մտադրութիւն դարձնելու։ Երգեցողներ բոլոր դասականներն են վեղարաւոր և ուրարաւոր և վերարկուաւոր։ Երգերն ու գիւրին չարականները, Հանգստեան և Պահոց օրհնութիւնները, Մանկունքներն ու Համբարձիները դաս առ դաս և միաքերան կ'երգուին կեցած տեղերնէն, և ամէնքն ալ կարգ ըստ կարգէ իւրաքանչիւր տունի սկսուածներուն ձայն կու տան։ Կանոնագլուխներու առաջին մասերը իբր մեներգ կ'երգուին, իւրաքանչիւր դասի ներկաներուն գլուխէն սկսելով և շարունակելով, ինչ որ առիթ կ'ընծայէ իւրաքանչիւրին իր քմայքին կամ գիտցածին հետևելու, աւելի կամ նուազ երկարելու կամ բարձրացնելու ազատութեամբ։ Կանոնագլուխներու, Հանգստեան և Պահոց օրհնութիւններու և Թագաւորներու առեն հետևակի և ելքի հերթը վարող ուրարաւորներ յուշարար կը կանգնին երկու դասերուն մէջտեղը, և սկսուածներն ու խօսքերը կը թելադրեն։ Պարզ երգերուն թելադրողները աշակերտներէն են, զի իւրաքանչիւրին ձեռաց գիրքեր ունենալ սովորութիւն չէ, գոց ըսելու հնօրեայ պարծանքին հետևողութեամբ։ Միայն մասնաւոր շարականներու համար ձեռաց շարակնոցի շուրջը կը հաւաքուին եղեր, իսկ Ջայնքաղի սաղմական տպագրութենէն ետքը ընդունուեր է գրակալի դրութիւնը. բայց կը կարծենք թէ աւելի վեհ եղած կ'ըլլար ձեռաց շարակնոցի ձևը ընդ-

հանրացնել և միշտ անդերնէն երգել։ Այժմ գրակալ շուրջը կը բոլորին միայն ուրարաւորներ և վերարկուաւորներ, իսկ վեղարաւորներ հեռու կը մնան գրակալով երգեցողութենէն, թէպէտ լայնօրէն կը մասնակցին մնացեալ մասերուն, և իրենց երիցագոյններն իսկ կը սիրեն երգել այն կտորներն ալ, որ ուրիշ տեղեր պարզ դպիրներու կը թողուին։ Սովորութիւն է ևս Մանկունքի և Համբարձիի երեք տունները կրկնելով վեցի վերածել, որ հնաւանդ կանոնին համաձայն է, և միշտ վեցի լրացնել՝ եթէ շարականները երեք կամ չորս կամ հինգ տուն ունին։ Զարթուցեալքին և գանձքարոզներուն և կանոնի քարոզին ալ, երբ հանդիսաւոր օր է, բոլոր ներկայ ուրարաւորներ խմբովին կը մասնակցին բեմին առջև։ Իսկ փոխասացութիւնը և պատարագի ընթերցուածը և մոմակալութիւնը աշակերտներու թողուած են, և երկօրեայ հերթով երեքը միասին կը կատարեն. մուտքի հերթը վարողներ գրակալ և շարակնոց կը պատրաստեն, և հետևակները ուրիշ դասական պէտքերը կը հոգան։ Վերջապէս յիշենք թէ Յայսմաւուրքի ընթերցումը հետևակ ուրարաւորներ կը կատարեն, և կը նկատուին իբր աւագ երէցներու փոխանորդողներ, զի ժամանակաւ ասոնց կը վերաբերէր եղեր այս ընթերցումը, և այդ սովորութեան յիշատակն է Յայսմաւուրք ընթերցողին դառնալէն ետքը՝ աւագերէցին գլուխ խոնարհեցնելը։ Նոյն ուրարաւորն է առաւօտեան կերակուրին ատեն ընթերցողը։

---



# ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԿԵԱՆՔ

141. — *Այդ մասին ինչ ինչ տեղեկութիւններ տուած ենք արդէն, երբ վարժարանական բաժինները կը նկարագրէինք (յօդ. 55), և նոյն բաները կրկնել աւելորդ կը սեպենք։ Ուսումնական պէտքը ամէն ժամանակ զգացուած է Երուսաղէմի մէջ, և ժամանակին պահանջից և ընձեռուած միջոցներուն համեմատ՝ ուսումնական պէտքը լրացնելու միշտ հոգ տարուած է։ Ասով մէկտեղ աւելի Սուրբ Տեղեաց պահապան ու պաշտպան մարմին մը քան թէ ուսումնական հաստատութիւն մը կազմուած է։ Փոքրաւորական դաստիարակութեան յաջորդած է վարժարանական դաստիարակութիւնը, իսկ Զաքարիա և Կիրակոս և Յովհաննէս պատրիարքներու ատեն սկսած է զարկ տրուիլ կանոնաւոր կազմակերպութեանց և յարմար շինութեանց։ Եսայի պատրիարք հետապնդած է զարգացման, որուն մասին վերև խօսեցանք (յօդ. 126), և Յարութիւն պատրիարքի ժամանակ ճիգ թափուած է ուսմանց մակարդակը բարձրացնելու։ Ժամհարեանց հրիտակը այդ նպատակով փափաքուեցաւ և կազմուեցաւ, այսինքն նախակրթական բաժինին վրայ գոնէ երկամեայ մասնագիտական մըն ալ աւելցնելու համար։ Գործադրութիւնը պարագայից բերմամբ յետաձգուեցաւ, և վերջին տարւոյ ձեռնարկն ալ ձախող ժամանակի զուգադիպեցաւ, բայց գոնէ սկզբնաւորութիւն մը եղաւ։ Ուստի ուսումնական կեանքի կարգերը պարզապէս այսօրուան գտնուածէն չենք քաղեր, այլ պէտք կը զգանք նկարագրել ինչ որ*

և ինչպէս որ կանոնաւորապէս պէտք էր որ ըլլար։

142.— Ժառանգաւորաց վարժարանը հաստատուած է չորս դասարաններու վրայ, աշխատելով որ տարրական նախակրթարանի դասարանները լրացուցած աշակերտներ քննութեամբ ընդունուին. թէպէտ պարագայք ստիպած են զանազան աստիճանի աշակերտացուներ ընդունիլ։ Ընդունելութիւնը և պահպանութիւնը բացարձակապէս ձրի է. որբ կամ կարօտ դասակարգէ ըլլալը պայման չէ. էականը եկեղեցական կոչման տրամադիր ըլլալն է։ Նախընթաց տարւոյ վերջերը զանազան վիճակներ շրջաբերական յղուեցաւ յարմարագոյն աշակերտներ ունենալու համար, բայց վերահաս տագնապին պատճառով գործադրութիւնը յետաձգուեցաւ։ Փափաքելի էր նախակրթական երկու վերին դասարանները միայն պահել, և բարձրագոյն դասարաններ հաստատել։ Եւ ոչ ալ բոլոր դասարանները միանգամայն պահել, այլ երկուքի կամ երեքի բաժնուած 25 է 30 աշակերտներով գոհանալ, և դասարանի մը աւարտելէն ետքը՝ նորը կազմել։ Այժմեան չորեքամեայ ուսումնական ծրագիրը կը պարունակէ հայերէնը մինչև գրաբար իմանալ, տաճկերէնը և գաղղիերէնը մինչև անսխալ գրել, պատմութեան և աշխարհագրութեան և տիեզերագրութեան մէջ ընդհանուր հմտութիւններ ունենալ, թուաբանութիւնը հասցնել մինչև գրահաշիւ և երկրաչափութիւն և տոմարականութիւն, բնական գիտութիւններէն ուսուցանել բնապատմութեան և բնագիտութեան և բնալուծութեան նախագիտելիքները, երգեցողութիւնը ձայնագրութեամբ աւանդել, իսկ վայելչագրութիւնը երեք լեզուներով։ Այսպիսի ծրագիր մը սովորական նախա-

կրթարաններէն վեր չի բարձրանար, և մասնագիտական դասարաններու պէտքը զգալի կ'ընէ, որոնցմով հնար է հնգամեայ շրջան մը կազմել, ինչպէս Դպրեվանքն ալ կը գործադրէ։ Աշակերտաց կեանքը գատուած եւ առանձին է Մայրիթաղի և Ճեմարանի շէնքերուն մէջ. կերակուրնին ալ նոյն շրջանակին մէջ կը տրուի, թէպէտ ընդհանուր խոհանոցէն կը մատակարարուի։ Վարժարանաց տեսուչն ալ նոյն շրջանակին մէջ կ'ապրի, և կառավարիչ մը պէտք է ունենայ իրեն օգնական, որ աշակերտները իրենց գլխուն չը մնան և առանց գլուխի մը շրջագայութեան չելլեն։ Անձնական ծառայութիւնները աշակերտներ իրենք կը կատարեն, իսկ ընդհանուրներու համար ունին գիշերապահ, սեղանապետ, սպասաւոր, դռնապան և մայրապետ։ Աշակերտաց զգեստը նման է եկեղեցականներու կերպին, պարեգօտ, կարճ զգեստ, վերարկու, հողաթափ, կօշիկ և անխուսափելի սև ֆէսը։ Զափահասներ դպրութեան աստիճաններ կը ստանան։ Ժամանակ մը ժամերգութիւնը առտնին կը կատարեն եղեր, բայց բաւական ժամանակէ ի վեր ամէնքն ալ ամէն օր դասին կը սպասաւորեն իբրև փոխասաց եւ մոմակալ եւ ընթերցող եւ իբրև երգեցող ալ խմբերգներու կը մասնակցին, և որոնց որ ձայնն ու հմտութիւնը կը նպաստէ՝ մեներգներ ալ կը կատարեն։ Երբոր թիւերնին առաւար է, բոլորովին անվարժները դասէն ներս չեն ընդունուիր, և դասին ետևը արարողութեանց ներկայ կը գտնուին։ Միաբանութեան հետ պաշտօնապէս յարաբերութեան մէջ չեն, և հոգ կը տարուի որ անպաշտօնն ալ չընդարձակուի։

143. — Ժառանգաւորաց վարժարանին միակ նը-

պատակը կրթեալ ու վարժ միաբաններ հասցնել ըլլալով, փափաքելի եղած է միշտ որ շրջանաւարտներ եկեղեցականութեան նուիրուին. բայց որովհետեւ այդ մասին փափաքէ և յորդորէ և նախապատրաստութենէ անդին չ'անցնուիր, օրէնք եղած է որ շրջանաւարտներ, եթէ Միաբանութեան պիտի չանդամակցին, երեք տարի Աթոռին որեւէ մէկ գործին ծառայեն, իրենց կարողութեան և յարմարութեան կամ թէ գործերու պէտքին համեմատ։ Այսպիսիներուն ալ յարմարագոյն սեպուած գործը Սուրբ Տեղեաց մէջ դըպրութիւնն և ուսուցչութիւնն եղած է։ Նախընթաց քանի մը դասարաններ եկեղեցականութեան յանձնառուներ չէին տուած, ինչ որ ժամանակին բերմանց և պատահական պարագայից կը սիրենք վերագրել, կամ թէ մասամբ ալ առաջին տարիներէ տրամադրութիւն և փափաք զարթուցանելու բաւականաչափ հոգ տարուած չըլլալուն։ Վերջին շրջանաւարտներուն վրայ ջանք եղաւ Ժամհարեանց հրիտակին նպատակը գործադրել և բարձրագոյն կամ մասնագիտական լսարան բանալ։ Եօթը շրջանաւարտներէն չորսը սկսան դասընթացքին հետեւիլ, իսկ երեքը Սուրբ Տեղեաց ուսուցչութեան մտան։ Վերահաս տագնապը արգելք եղաւ յատուկ ուսուցիչներ հրաւիրելով լիագոյն դասընթացք հաստատել, և հարկ եղաւ անձնական աշխատութեամբ իմաստասիրութեան և աստուածաբանութեան և Սուրբ Գրոց ներածութեան դասեր տալ, և ճառեր գրելու վարժեցնել։ Կը սիրենք յուսալ, որ գոնէ իբրեւ առաջին սկզբնաւորութիւն՝ ապագայ արդիւնաւորութիւն ունենայ(*)։ Անցեալին մէջ հնար չէր

(*) Յիշուած առարկաները երկու տարիի չափ (1915-

եղած ժառանգաւորաց վարժարանին ուսուցիչները միաբաններուն մէջէն առնել, և նախընթաց տարւոյ մէջ հայերէնի և տաճկերէնի և գաղղիերէնի և գիտութեանց համար չորս արտաքին ուսուցիչներ կը պաշտօնավարէին ժառանգաւորացին մէջ, բայց վերահաս տագնապը այն տեղ ալ խնայողութեան պահանջներ ստեղծեց։ Տա՛յր Աստուած, որ աւելի եւս տագնապը չընդարձակուէր, և ժառանգաւորացը օրինաւոր և արդիւնաւոր դիրք մը ստանար։ Նոյն իսկ երաժշտութեան համար նոր ընտրուած ուսուցիչին գալը արգիլուեցաւ, միշտ միևնոյն տագնապին պատճառով, թէպէտ եկեղեցական երգեցողութեան յատուկ խնամքը անհրաժեշտ պէտք մը կը ներկայանար։ Ներկայիս նոր աշակերտներ չընդունելով, մնացածներուն թիւը նօսրցած է, և որչափ ալ տագնապը նոր խնայողութիւններ կը թելադրէ, լաւ կ'ըլլար որ վարժարանական կեանքը չընդհատուէր, և անձուկ սահմանի մէջ իսկ իր գոյութիւնը շարունակէր(*)։

144. — Աշակերտական շրջանակէն միաբանականին անցնելով, պիտի չկարենանք վերջին ժամանակներուն մէջ որևէ ուսումնական արդիւնաւորութիւն ցուցնել։ Ժամանակով Երուսաղէմի տպարանը իր միաբաններուն աշխատութեամբ լաւ հրատարակութիւններ հանած է, ինչպէս են Սիօն ամսագիրը, Թա-

---

1917) աւանդեց նոյն ինքն տողերուս գրողը՝ հոգելոյս Տէր Օրմանեան Սրբազան։ Ծ. Հ.

(*) Ընդհանուր պատերազմի տագնապը ստիպեց փակել վարժարանը 1917ի ամրան, և մնաց այդպէս՝ մինչև 1920ի վերաբացումը։ Ծ. Հ.

դէոս Աստուածատուրեան վարդապետի Համաբարբառը, Աստուածատուր Տէր Յովհաննէսեան եպիսկոպոսի Երուսաղէմի Պատմութիւնը, Սահակ Խապայեան վարդապետի, այժմ կաթողիկոսի, դասագիրքերը և ուրիշ հեղինակութիւններ և Նախնեաց հրատարակութիւններ. բայց տասնեակ տարիներէ ասդին միակ գիրքը, զոր կարենանք յիշել, Մեսրոպ Նշանեան վարդապետի հրատարակած Գրիգոր Դարանաղցիի լուսաբանեալ պատմութիւնն է։ Առ այժմ տպարանի ամբողջ գործունէութիւնը ամփոփուած է ծիսական գիրքերու շուրջը, որ Ս. Յակոբեանց տպարանին լոկ մենաշնորհ դարձած է։ Պալեան Տրդատ եպիսկոպոսն ալ ինչինչ հրատարակութիւններ ունեցած է, բայց իւր գործունէութիւնը վանական շրջանակէն դուրս եղած է։ Ձեռացներքև աշխատութիւն ունեցող մըն ալ չենք ճանչնար որ յիշենք։ Արդիւնաւորութեան չափ ընթերցանութիւնն ալ տկար վիճակի մէջ է, և կարծես թէ սահմանափակ լրագրականէն անդին չ'անցնիր, և զարմանալու չէ, քանի որ գրականութեամբ զբաղողներն ալ կը պակսին։ Ընթերցարան մը հաստատուած է 1901ին (յօդ. 51) միաբաններու գիտութեան համար, օգտակար գիրքերով եւ պարբերականներով ու օրաթերթերով ճոխացած, բայց այն ալ գործածական վիճակ մը չի ներկայեր։ Արդէն դպրոցական կեանքէ յառաջ եկողներ մեծամասնութիւն չեն, և որոնք որ դպրոցական եղած են, արտաքին զբաղումներու ա՛յնչափ մխրճած են, որ ուսումնականին պատեհ չեն կրնար գտնել։

145. — *Ուսումնական կեանքին մէջ պէտք է տեղի տանք Միաբանութեան կողմէ Երուսաղէմի ման-*

կուոյն համար նուիրուած հոգածութեան։ Կրկին նը-
պատակներ ունեցած է Աթոռը այդ մասին, թէ՛ ման-
կուոյն դպրոցական դաստիարակութիւն տալ եւ թէ
արաբախօս համայնքը մայրենի լեզուին ընտելացնել։
Քաղաքացւոց վարժարանը, ինչպէս կ'անուանեն, կամ
լաւ եւս թաղական նախակրթարանը երեք բաժիններ
ունի, երկսեռ մանկապարտէզ, աղջկանց նախակրթա-
րան, և մանչերու նախակրթարան։ Հակառակ Աթո-
ռին հոգածութեան՝ նուազ եղած է ցարդ ժողովուր-
դին փութաջանութիւնը, որ նախընտրած է օտարազ-
գի հաստատութեանց յանձնել իր տղաքը, թէպէտ և
ազգայինն ալ բոլորովին ձրի է, և ոչ մի ծանրութիւն
չի պատճառեր ծնողքներուն։ Այսու հանդերձ Աթոռը
զանց չէ ըրած ժողովրդական վարժարաններուն մա-
կարդակն ալ բարձրացնել՝ ժառանգաւորացի ուսու-
ցիչներուն մասնակցութեամբը և յատուկ վարժուհի-
ներ պաշտօնի կոչելով։ Եւ կ'երևի որ ժողովուրդն ալ
հետզհետէ սկսած է գնահատել Աթոռին զոհողութիւն-
ները, զի այսօրուան աշակերտներու և աշակերտու-
հիներու թիւը նախընթացներէն շատ աւելի է, և հե-
տըզհետէ աճելու երևոյթը կուտայ։ Նախակրթարան-
ներուն և Մանկապարտէզին դիրքերը և շէնքերը նը-
կարագրած ենք արդէն (յօդ. 59, 60), իսկ ուսումնա-
կան ծրագիրը ընդհանուր գիծերով համաձայն է կեդ-
րոնական ուսումնական խորհուրդին հաստատածին, ո-
րով աւելի բացատրութեան հարկ չենք տեսներ։ Ա-
թոռը մէյմէկ փոքր վարժարաններ ալ կը պահէր Բեթ-
ղեհէմի և Յոպպէի մէջ, սակայն առաջինը քանի տա-
րիներէ ի վեր խափանուած է, համայնքին փոքրկու-
թեան և ծնողքներուն օտարազգի հաստատութիւնները
նախադասելուն պատճառով։ Իսկ Յոպպէինը կը շա-

րունակէ, և հետզհետէ աւելի խնամք կը տարուի։ Աթոռին իրաւասութեան ներքև գտնուող Դամասկոս և Վերիտոն և Լաւոդիկէ քաղաքներն ալ իրենց տեղական կամ թաղական փոքր վարժարաններն ունին, բայց տեղացիներուն միջոցներովը և անոնցմէ կազմուած հոգաբարձութիւններով կը կառավարուին։

---

## ԺԷ

## ԱՅԺՄԵԱՆ ԿԵԱՆՔ

146. — *Հայկական Երուսաղէմի կամ Ս. Յակոբեանց Առաքելական Աթոռին վերաբերեալ նկարագրական տեղեկութիւնները լրացնելու համար հարկ կ'ըլլայ ինչինչ ծանօթութիւններ աւանդել անոր ներկայ կազմութեան և կազմակերպութեան վրայ, զի անցելոյն պատմութեան մտնելը շատ երկար և նպատակէ ալ դուրս կ'ըլլար։ Մեզի բաւական ըլլայ վերջին երկու՝ Եսայի և Յարութիւն պատրիարքներուն ժամանակին վերաբերեալ ծանօթութիւնները քաղել։ Արդ՝ Եսայի պատրիարքի պաշտօնավարութեան սկիզբէն մինչև այսօր (*1915 *յուլիս) Ս. Յակոբեանց Միաբանութեան անդամակից ձեռնադրուած վեղարաւորներու թիւը կը հասնի *98*ի, և *6 *ալ ձեռնադրութենէ ետքը ընդունուած միաբանները աւելցնելով՝ կ'ըլլան *104*, որոնցմէ *45 *անձ Միաբանութեան մէջ կամ Միաբանութենէ դուրս վախճանած են, *12 *անձ Միաբանու-*

թենէ հրաժարած են, 13 ալ թէպէտ պաշտօնապէս հրաժարած չեն, բայց յարաբերութիւննին ընդհատած են, որով միաբանական գործօն շարքին մէջ կը մնան 34 վեղարաւորներ. 1 եպիսկոպոս, 22 վարդապետ և 11 աբեղայ։ Հրաժարածներուն մէջէն երեքը Միաբանութենէ դուրս աստիճանի բարձրացում ունեցած են. Սահակ Խապայեան՝ կաթողիկոս Կիլիկիոյ, և Մաղաքիա Տէրունեան ու Պետրոս Սարաճեան եպիսկոպոսներ, եօթը անձ վարդապետական աստիճան կը պահեն, Դանիէլ Աշըգեան, Վահան Յակոբեան, Միքայէլ Դաւթեան, Վրթանէս Գալըպճեան, Արսէն Ֆէսճեան, Եղնիկ Պապայեան և Մարկոս Գարագաշեան. երկուք ալ կարգաթող եղած են, Կարապետ Տէր Կարապետեան և Ղևոնդ Պէքեարեան։ Այս կամ այն պատճառով յարաբերութիւննին ընդհատած են Տրդատ Պալեան և Դանիէլ Յակոբեան եպիսկոպոսներ, որոնք առանձնացած կ'ապրին. իսկ Անանիա Հազարապետեան, Վարդան Գասպարեան, Սարգիս Տէր Սարգսեան, Վաղարշակ Պօղոսեան, Մելքիսեդեկ Հովիւեան եւ Աբգար Եօթնեղբայրեան վարդապետներ վիճակային պաշտօններու վրայ կը գտնուին։ Իսկ Ղևոնդ Մաքսուտեան, Յովսէփ Սողոմոնեան, Կիրակոս Մարգարեան, Երեմիա Լիֆօրեան և Կարապետ Աւետիսեան վարդապետներ անպաշտօն կը մնան աստ և անդ։

147. — Միաբանական գործօն շարքին մէջ գտնուող 34 վեղարաւորներէն վեցը՝ Երուսաղէմի գաւառէն դուրս միաբանական պաշտօններու վրայ կը գտնուին. Արիստակէս Խաչատուրեան եւ Իգնատիոս Փափազեան ի Դամասկոս, Մովսէս Ոսկերիչեան ի Լաւոդիկէ, Սերովբէ Սամուէլեան և Սահակ Սարգիսեան

ի Վերիոռն, և Սմբատ Գաղաղեան ի Կոստանդնուպոլիս։ Իսկ Սարգիս Աճէմեան ժամանակաւոր արձակուրդով կը գտնուի ի Պիլէճիկ, որով 27 վեղարաւորներ կը մնան Երուսաղէմի համար։ Ասոնցմէ ալ 7 հատը մայրավանքէն դուրս տեսչութեանց մէջ կը մնան. Սիմէոն Թէլեան և Մուշեղ Հայրապետեան ի Յոպպէ, Ղուկաս Յովհաննէսեան ի Ռամլէ, Վրթանէս Գասպարեան ի Բեթղեհէմ, Աթանաս Ասլանեան ի Ս. Յարութիւն, Աշոտ Սարգիսեան ի Ս. Փրկիչ և Սամուէլ Կիրակոսեան ի Ս. Հրեշտակապետ։ Չորս ժամարարներ ալ երկամսեայ հերթով բացակայ կը մնան ի Ս. Յարութիւն և ի Ս. Ծնունդ, որով մայրավանքին մէջ հաստատուն բնակութիւն ունեցողներ կը մնան 16, որոց մէկը հաշմանդամ է՝ Գրիգոր Մուրատեան, և մէկն ալ եպիսկոպոս է՝ Եղիշէ Չիլինկիրեան։ Վանքին մէջ աշխատող 18 վեղարաւորներէն, ժամարարներն ալ մէջը, երկուքը ծայրագոյն վարդապետութեան աստիճան ունին, Գաւիթ Տէրտէրեան լուսարարապետ և Եղիա Յովհաննէսեան երիցագոյն. իսկ մասնաւոր վարդապետութեան աստիճան ունին՝ Գրիգորիս Պօյաճեան, Մատթէոս Գալըգճեան, Թովմաս Պետրոսեան, Հմայեակ Երեցեան, Յարութիւն Պարոնեան, Համազասպ Ղազարեան, Եփրեմ Պէզիրճեան և Մեսրոպ Նշանեան։ Իսկ լոկ աբեղայական ձեռնադրութեամբ կը մնան՝ Գէորգ Յովհաննէսեան, Գէորգ Ճանըլեան, Գրիգոր Յովհաննէսեան, Խորէն Փաստոյեան, Անդրէաս Լօղմաճեան, Գարեգին Մանսուրեան, Ներսէս Թորոսեան եւ Յակոբ Թաշճեան։ Վերոյիշուածներէն ալ աբեղայ կը մնան՝ Սահակ Սարգիսեան, Մուշեղ Հայրապետեան և Աշոտ Սարգիսեան։ Վանական շրջանակի մէջ գտնուող 34 վեղարաւորներէն ինը միայն ժառանգաւորացի ՇԸՐ-

ջանաւարտներ են եղած, իսկ մնացեալներ կամ վարժարանէն կիսաւարտ դուրս ելած են կամ դուրսի ազատ դպիրներէն առնուած են։

148. — Վեղարաւորներուն մասին տեղեկութիւնները ամբողջացնելու համար՝ վարած պաշտօններուն տեսակէտէն հետեւեալ ծանօթութիւնները կ՚աւելցնենք։ Արդ՝ լուսարարապետ է Դաւիթ Տէրտէրեան, ժամօրհնող՝ Եղիա Յովհաննէսեան, ելեմտից տեսուչ՝ Մատթէոս Գայըգճեան, շինուածոց տեսուչ՝ Թովմաս Պետրոսեան, դիւանապետ՝ Յարութիւն Պարոնեան, վարժարանաց և թանգարանի և տպարանի տեսուչ՝ Մեսրոպ Նշանեան. իսկ աւագ թարգմանի փոխանորդութիւնը առժամապէս կը վարէ Գարեգին Մանասեան։ Մատակարար է Համազասպ Ղազարեան, գանձապահ՝ Գէորգ Ճանըղեան և խոստովանահայր՝ Անդրէաս Լօզմաճեան։ Ամսական ժամարարութեանց կը յաճախեն Եփրեմ Պէգիրճեան, Գրիգոր Յովհաննէսեան, Խորէն Փաստըրեան, Ներսէս Թորոսեան և Յակոբ Թաշճեան։ Միայն օրական ժամարարութիւններ կը կատարեն Գրիգորիս Պօյաճեան և Գէորգ Յովհաննէսեան։ Իսկ հազիւ թէ աւագերէցութեան կարգ կը վարէ Հմայեակ Երէցեան։ Տեղեկութիւնները լրացնելու համար աւելորդ չէր ըլլար իւրաքանչիւր անձի անհատական գընահատանքներն ալ գրել, արժանիքը ցուցնելով կամ դիտողութիւնները նշանակելով. սակայն ապաշնորհ գործ մըն է կենդանի անձերու մասին անկաշկանդ դատողութիւններ ընել, և կը սիրենք այդ կէտերը զանց ընել։

149. — Ձեռնադրուած սարկաւագներ եօթն են,

որոնցմէ Յովհաննէս Գարակէօզեան և Մանուկ Տօլապճեան բացակայ կը գտնուին, առաջինը Վերլիոն և երկրորդը Ամերիկա։ Իսկ մնացեալ հինգերը Աթոռոյն մէջ են և մայր տաճարի ու Սրբավայրերու մէջ եկեղեցական սպասաւորութիւններ կը կատարեն, և են՝ Տիրան Քէմհաճեան, Վարդան Գէորգեան, Կարապետ Պարսամեան, Յակոբ Յովսէփեան և Պօղոս Վարժեան։ Իսկ պարզ ուրարակիրներ տասնումէկ են, որոնցմէ չորսը մանկավարժական դասարանը կը կազմեն, չորսը եկեղեցական սպասաւորութեանց կը պարապին, մէկը մայր տաճարի լուսարար է, մէկն ալ Ս. Աստուածածնի և մէկն ալ Յոպպէի։ Վերարկուի իրաւունք ունեցողներ ութն են, և ասոնցմէ են՝ Ս. Յարութեան լքինճին, Ս. Ծնունդի լուսարարը և մանչերու նախակրթարանին և Յոպպէի դպրոցին վարժապետները։ Աշակերտներ 10 միայն մնացած են այս տարի, որոց հինգը չորրորդ դասարանը կը լրացնեն։ Աշխատաւորները՝ մեծ ու պզտիկ, մայրավանքի ու սրբավայրերու մէջ սպասաւորող, 45 են այսօր, և այս կարգին գլխաւոր մահտեսիներն են, Սարգիս Պալտասարեան՝ սենեկապետ և չորապահ, Մերկեր Բարսեղեան՝ հանդերձապետ և մոմավաճառ, Ղազարոս Խպոյեան՝ վարժարանի դռնապան, Սարգիս Ներսէսեան՝ մասատար, Կարապետ Յարութիւնեան՝ մառանապետ, Գէորգ Խարաճեան՝ հացապահ, Յովհաննէս Խանզէտեան՝ դռնապան, Յովհաննէս Փիլոսեան՝ ջրավաճառ, Ստեփան Յակոբեան՝ սեղանապահ և Նէվրուզ Նէվրուզեան՝ մասագործ։ Մայրավանքը ամսականաւոր պաշտօնեաներ և ծառայողներ ալ ունի. ուսուցիչներ, քարտուղարներ, գրաշարներ, պահակներ, պահապաններ և ուրիշներ. ունի եւս պատապարեալ-

ներ, հիւրեր և բնակակիցներ, որոնք միջին թուով 40 և շատ անգամ աւելի ալ կ՚ըլլան։ Մայրավանքը պարտաւոր է նաև հոգ տանիլ կարօտ պանդուխտներու և քաղաքացի աղքատներու, և միայն քաղաքի մէջ եղող կարօտներու օրական իբր հարիւր զոյգ կըրկնակ նկանակներ կը բաշխուին։ Այս նպաստը այս օրեր աւելի շատցած է՝ այրերու զինուորական ծառայութեան կոչուելովը և ընտանիքներուն ու զաւակներուն աննեցուկ մնալովը։ Բացառիկ նպաստներու պէտքն ալ ընդարձակուած է եկող գացող և տեղափոխուող հայ զինուորներով, որոց հարկ կ՚ըլլայ միշտ սնունդ և պատըսպարան և ձեռքէ պէտքեր հոգալ։ Հարիւր յիսունի չափ եղան զատկական տօնին առթիւ արձակուրդով եկող և վանքին մէջ պատսպարուող ու կերակրուող զինուորները։ Այդ վերջին տեղեկութիւնները կարևոր սեպեցինք աւելցնել՝ վանքին վրայ ծանրացող ծախքերուն ընդարձակութիւնը ցուցնելու համար։

150. — Վանքին մէջ եղողներու զանազան շարքերը ներկայացուցած ատեննիս կը մնայ նկատի առնել Երուսաղէմի մայրապետները, որոնք յատուկ կուսատան ունին Ս. Հրեշտակապետ վանքը, և ուր փոքր ի շատէ տեղեկութիւններ տուինք իրենց վրայ (յօդ. 97)։ Մայրապետները 22 են այսօր, բայց մինչև 40 եղեր են առաջները։ Երիտասարդուհիներ չեն ընդունուիր, որով ամէնքը՝ մասամբ այրիներ և մեծ մասամբ չափաւոր տարիքով ամուրիներ են, որոնք իրենց կամ ուրիշի տուներուն մէջ յոգնելէն ետքը բարեպաշտական հանգիստ կը փնտռեն։ Բարեպաշտական հանգիստ ըսինք, զի նորէն յոգնութիւն է զոր վանական շրջանակին մէջ կը գտնեն։ Մայրապետներու ընդունելու-

թեան համար հերակտրութեան սովորութիւն չկայ, այլ վանական վարչութեան որոշմամբ կ'ընդունուին, և քողի օրհնութիւն և վերարկուի արտօնութիւն կ'ըստանան Ս. Հռիփսիմէի մատուռին մէջ։ Սև շրջազգեստի և կարճ զգեստի վրայ սովորական վերարկու մըն է համազգեստնին, գլուխի սև և ընդարձակ շալով մէկտեղ։ Թէ՛ Ս. Հրեշտակապետի, թէ մայր տաճարի և թէ ուրիշ սրբավայրերու մէջ ժողովրդական կիներու կարգին արարողութեանց ներկայ կը գտնուին, գոնէ ամէն առաւօտ, և օրուան մնացեալը ձեռագործ աշխատութեանց կը պարապին։ Իրենց աշխատութիւններուն մեծ մասը վանքին և վանականներուն նուիրուած են։ Վանքին համար ըրածնին են մեծ լուացքներ և գլխաւորապէս ուխտաւորներու տեղաշորերուն և վերմակներուն և ուրիշ լաթեղէններուն մաքրութիւնը, առանին հոգացուած պարէններուն պատրաստութիւնը, զոր օրինակ՝ ձաւարի և կորկոտի և թարխանայի ևայլն, և խոհանոցի առօրեայ և երկարատև պէտքերուն աշխատութիւնը, ինչպէս են՝ բանջարեղէն մաքրել, ընդեղէն ստըկել, լիցքեր պատրաստել, ևայլն։ Իսկ վանականներուն համար կը հոգան լուացքները և կարկտանները, և իւրաքանչիւր վանական իրեն պէտքերուն յատկացուած մայրապետն ունի։ Այս աշխատութիւններն են որ կ'արդարացնեն մայրապետներուն տրուած տնտես կոչումը։ Գլխաւորնին ալ, որ Տնօրէն ժողովէն կ'անուանուի, մեծ տնտես անունը կը կրէ։ Իրենցմէ մէկն ալ խոհանոցի տնտես է, այն տեղի աշխատութեանց գլուխն ու կարգադրողը, ուրիշ մըն ալ վարժարանի տնտես է, աշակերտաց մանր պէտքերը հոգացող և լուացքին գլուխ կեցող։ Երբեմն ալ տօնախմբութիւններուն քաղցրեղէններ և խորտիկներ կը

պատրաստեն, բայց շատ ամփոփ է այդ աշխատութիւննին։ Մեծ տնտեսը՝ Բերիացի Խաչթուն Սարգիսեան մայրապետը՝ տարիքով և տկարութեամբ անկողինի գամուած վիճակի մէջ գտնուելուն, Պրուսացի Հռիփսիմէ Յովհաննէսեան մայրապետը վերջին օրեր փոխանորդ նշանակուեցաւ։ Իբր անձնական և անհատական աշխատութիւն՝ իւրաքանչիւր ոք իւր ճարտարութեան համեմատ ձեռագործով մըն ալ կը զբաղի։ Սնունդնին վանքին խոհանոցէն կուգայ ամբողջութեամբ, ուսկից իւրաքանչիւր ոք իւր բաժինը կ'առնէ և իւր սենեկին մէջ կը ճաշակէ։ Աթոռը ընդհանուր լուացքներու փոխարէն համեստ գումար մը կու տայ, և իւրաքանչիւր վանական իւր մայրապետին աշխատութիւնը յարմար գումարով մը կը փոխարինէ։

151. — Վերջապէս այդ մասը փակելու համար պէտք է բացատրել՝ թէ ի՛նչ վարչութիւն և ի՛նչ ընթացք կը տիրէ այսօր (1915 յուլիս) Երուսաղէմի Աթոռին մէջ. բայց վարչական կեանքի նկարագրին մէջ այդ կէտը բացատրեցինք (յօդ. 116, 117), այնպէս որ պարզ կրկնութիւն մը պիտի ըլլար այստեղ ընելիքնիս։ Միայն իբր բարոյական բաժինին փակում՝ կրնանք յիշել թէ աթոռական և վանական գործեր իրենց սովորական ձևին մէջ կը շարունակեն, թէև վճռական կերպարան չունին։ Աթոռը թափուր է, և նոր ընտրութեան համար ո՛չ ներքին պատրաստականութիւն կայ, ոչ կեդրոնական ուղղութիւն և ոչ արտաքին դիւրութիւն։ Կանոնագիրի խնդիրը ի կախ կը մնայ, և լուծելու համար ո՛չ գործնական յօժարամտութիւն կայ և ոչ պայմաններու պատրաստութիւն։ Կանոնագիրին մասին հրատարակուած Դիտողագիրը բաւական

միտքերը լուսաւորեց և սպասուած ուղղութեան նը-
պաստեց, այլ որոշման չյանգեցաւ։ Վանական Տնօ-
րէն Ժողովը՝ երկու հրաժարմամբ, մէկ մահուամբ և
մէկ բացակայութեամբ՝ երեքի վերածուած է, և նո-
րոգել ի դէպ էր, եթէ յուզում յարուցանելու մտա-
դիրներ չգտնուէին և յուզումներ ներկայ պարագա-
յից մէջ վտանգաւոր չըլլային։ Ամէն պակասները լը-
րացնելու կոչուած է լիագօր պատուիրակին բացառիկ
պաշտօնը, որուն արդէն աթոռական վարչութեան և
վանական մատակարարութեան տիրանալու իրաւունք
տրուած էր իր անուանման պաշտօնագիրով, որուն
զօրութեամբ կը վարէ նա այժմեայ վարիչի և Տնօ-
րէն Ժողովոյ նախագահի և անակնկալ պարագանե-
րու և դէպքերու հսկողի պաշտօնները։ Արգելքներու
և դժուարութիւններու կարգին յետինը չէ համեւրո-
պական պատերազմին տագնապը և օսմանեան տէ-
րութեան ալ անոր մասնակցիլը, որ մէկ կողմէ հա-
սոյթներու և միջոցներու նուազութեան և միւս կող-
մէն ծախքերու և պէտքերու առաւելութեան պատ-
ճառ կ՚ըլլայ, և ոչ միայն պահեստի և զգեստի, այլ
և օրապահիկ ուտեստի անդարմանելի հոգեր կը ստեղ-
ծէ, և վանական մատակարարութիւնը վաղուըն վրայ
անստուգութեան կը մատնէ։ Ի՜նչչափ լաւ պիտի ըլլար
եթէ հանդարտ և կանոնաւոր ժամանակի մէջ գրուած
ըլլար Նկարագիրս և օրինաւոր կացութեան մը լիա-
կատար պատկերը աւանդուէր ընթերցողներուն։ Յու-
սանք որ այն բաղձացեալ ժամը շուտով հնչէ, և մեր
արդար փափաքները իրականանան։

